## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն

Содержание







# ՄԵԾ ԿՈՄԻՏԱՍԸ

ՑԻՑԻԼԻԱ ԲՐՈՒՏՅԱՆ

Արվեստագիտության թեկնածու, դոցենտ,
արվեստի վաստակավոր գործիչ

Կոմիտաս...

Հավերժական անուն, հավերժական իր գործով, քանի որ նրա հունդը բողբոջեց իր ժողովրդի կյանքի ընդերքից։ Նա ապրեց, երգեց, ստեղծագործեց, վշտացավ՝ միշտ ներդաշնակ իր խառնվածքին, հանճարը նվիրեց նրան, ում հոգևոր կյանքի բարգավաճման համար աշխարհ էր եկել։ Հետմահու էլ նա վերստին ձուլվեց իր ժողովրդին։

Կոմիտասը հայ երաժշտության անդաստանն իջավ XIX դարի վերջին տասնամյակին, այն ժամանակ, երբ մեր ազգային պրոֆեսիոնալ երաժշտությունը մի քանի տասնյակ տարի էր, ինչ իր ձևավորման շավղի մեջ էր մտել, բայց պատմականորեն նրան էր վիճակված այդ զարգացումը դնել իր գիտական ու ստեղծագործական աներեր հիմքերի վրա և դուրս բերել համամարդկային ասպարեզ։

Կոմիտասը հասավ համամարդկային բարձրության, իր հետ բարձրացնելով մի ողջ ժողովրդի՝ երաժշտական արվեստում մարմնացած մշակույթը։ Ընդհանրացնելով նախորդների նվաճումները, նա սկսեց գիտական երաժըշտական ազգագրության ստեղծումից, խոշոր գիտնականի հետազոտական-վերլուծական աշխատանքով ապացուցեց այդ երաժշտության ինքնությունն ու առանձնահատկությունները և այնուհետև, իր ստեղծագործական փայլուն ձիրքով հիմք դրեց նաև ազգային ստեղծագործական նոր դպրոցի։ Նա ցույց տվեց, որ հայը ո՛չ միայն ունի ինքնուրույն երաժշտություն, այլև վեր հանեց այդ ինքնուրույնությունն ապացուցող բոլոր ինքնատիպ հատկանիշները։ Հավաստելով այդ ինքնությունը՝ Կոմիտասը գիտնական-պատմաբանի դրույթներով սահմանեց նաև հոգևոր փոխազդեցության անժխտելի իրողությունը։ «...Բայց աշխարհի վրա ո՞ր երաժշտությունն անխառն ու անապակ է. մեր գիտցածով՝ միայն անասուններինը, որոնք նույն ձայնն ու ելևէջը կերգեն, գի փոխառության շնորհք չունին։

Ազգերու փոխադարձ ազդեցությունն անուրանալի և անհերքելի փաստ է,

որովհետև անազդեցիկ մնացած ազգ չկա, յուրաքանչյուր ազգ, ինչ որ չունի, ունեցողեն, պետք զգացած ժամանակ, փոխ կառնե ու կազգայնացնե:

Յուրաքանչյուր ազգի երաժշտություն իր լեզվի հնչական ելևէջներեն կծնի ու կծավալի: Հայ լեզուն ունի իր հատուկ հնչավորությունը, ուրեմն և համապատասխանող երաժշտություն»:

Իսկ որտե՞ղ էին այդ հնարավորությունները, միայն իր շուրջը հնչող այլազան ազգային երգերի՞ մեջ: Ո՛չ: Տեսնելու համար անապակ ակունքը, Կոմիտասը մխրճվեց մեր երաժշտության սկզբնավորման խորքերը՝ մինչև հեթանոսություն: Այդ ճանապարհն էլ ինքը գտավ. գտավ մագաղաթներում, պատմիչների մոտ, դպրեվանքերում, բանահյուսությունից մինչև ճարտարապետություն, հողից մինչև ոգի ընկած տարածության մեջ: Պետք եղավ վերծանել խազերը. մեծ ջանքերով նա հասնում էր բանալուն, որով բաց էր անելու կողպված գանձարանները... Պետք եղավ քակել օտարամուտ աղավաղումները, անճաշակ պաճուճանքների հանգույցները, որով դարերի ընթացքում զգեստավորվել էր մեր հոգևոր երաժշտությունը: Վերլուծեց գուսանական երգարվեստը, քաղաքային, ազգային-հայրենասիրական երգերը... Այդ ամենից զատեց ամենահարուստ ու ամենաանաղարտ ակնաղբյուրը՝ գեղջկական երաժշտությունը՝ գեղջուկի կյանքի, նրա ներաշխարհի ճշմարտացի ու անմիջական արտահայտությունը:

Բայց կարո՞ղ էր արդյոք գեղջկական երգն այնպես, ինչպես հորինում ու երգում էր գեղջուկը, լինել այն զտված ու մաքրված նյութը, որի վրա կարող էր վեր բարձրանալ մի ամբողջ ժողովրդի երաժշտական արվեստը: Գեղջկական երգը, հիրավի, այն հայելին էր, որի մեջ ամենից ավելի հստակ ու ճշմարտացի էին արտացոլված հայ ժողովրդի կյանքն ու ներաշխարհի հազարերանգ դրսևորումները, այդ երգն ամենից ավելի ավանդապահն էր հայ ժողովրդի հոգեկան ու բարոյական հատկանիշների գեղարվեստական արտահայտության: Բայց այդ ակունքը բացարձակ անաղարտ ու անապակ չէր:

Բազմաթիվ փոխազդեցությունները, երաժշտական ժառանգության բանավոր փոխանցման եղանակը, կատարողական ձևերի բազմաբղետությունն ու աղավաղումները և շատ այլ երևույթներ բարդացրել, խճճել էին երգի՝ մարդու ներաշխարհի արտացոլման այդ նրբագույն արտահայտության ճիշտ ընկալման ու նրա բարձր պրոֆեսիոնալ գեղարվեստական մարմնավորման հարցերը:

Մեծ գիտնականի խորիմացությամբ ու համբերատարությամբ Կոմիտասն ուսումնասիրեց այդ երգերը, գրի առավ ու հավաքեց մոտ 5 հազար երգ, զտելով ու մաքրելով դրանք բոլոր աղավաղումներից, օտարամուտ տարրերից, կատարողական խեղաթյուրումներից, դարձնելով դրանք մեր գիտական երաժշտական ազգագրության անկրկնելի նմուշները, ազգագրության հիմնաքարը: Այդ փոքրիկ, ժողովրդական երգեր կոչվող միաձայն մեղեդիները մեծ չափով կոմիտասյան հանճարի պտուղներն են:

Անաղարտ, գիտական երաժշտական-ազգագրություն ստեղծելը Կոմիտասի մեծ առաքելության կողմերից մեկն էր միայն: Էականն էր ազգագրությունը դարձնել այն հիմքը, որի վրա պիտի բարձրանար ազգային-դեմոկրատական երաժշտական-ստեղծագործական նոր դպրոցը, որի հիմնադիրը դարձավ մեծատաղանդ ստեղծագործողը: Դեռևս անցյալ դարի վերջին տարիներին Գերմանիայում իր ուսումնառության շրջանում նա հանդես եկավ հայ ժողովրդական երգերի իր մի շարք մշակումներով, որոնց մեջ փայլուն դըր-



սևորված էր հայ երաժշտական արվեստի նոր, ուրույն ստեղծագործական ոճը:

Կոմիտասն այնքան խոր է թափանցել գեղջուկի երգի մեջ, նրանում գտել այնպիսի նրբերանգներ, այնպիսի հատկանիշներ, որ միայն հանճարեղ գիտնական-ստեղծագործողը կարող է գտնել ու բացահայտել: Գեղջկական երաժշտության խորքում Կոմիտասն իր վերլուծական մեթոդով գտավ ու վեր հանեց ինտոնացիայի, ռիթմի, լադի և երաժշտական այլ արտահայտչամիջոցների բյուրեղացած տարրերը, որոնք համընդհանուր շատ բան ունեն համամարդկայինի հետ: Դրանով իսկ նա հաղթահարեց գեղջկականության նեղ ժանրային շրջանակները, ստեղծեց ուրույն ոճ ու լեզու, որը և դարձավ հայ երաժշտական արվեստի ամենավճիտ, ամենաբնորոշ ու հարուստ ոճը, կրելով զարգացման ամենախոր ու լայն հնարավորությունները:

Իր ստեղծագործության մեջ Կոմիտասը հիմնվեց նաև հայ հոգևոր երաժշտության վրա, թափանցելով դրա սքանչելի թաքստոցները, դրա ուսումնասիրությանը ևս երկար ժամանակ ու ջանք նվիրելով: **Հայ ժողովրդական և եկեղեցական երգերը** թեմայով դասախոսության մեջ, որ սղագրվել ու տպագրվել է 1905 թ. Թիֆլիսի «Մշակ»-ում, Կոմիտասն ընդգծում է հայ հոգևոր ու ժողովրդական երաժշտության սերտ կապը: Նա հերքում է այն կարծիքը, թե հայ երաժշտության այդ երկու տարբեր ճյուղերը բոլորովին տարբեր նկարագիր ունեն: Այդ կարծիքը նա համարում է արտաքին, մակերեսային ուսումնասիրության, դրանց էությունն ու կառուցվածքը վերլուծելու անկարողության արդյունք: Այդ երկու ճյուղերի մեջ երևութական տարբերությունը Կոմիտասը համարում է օտարամուտ երաժշտության ազդեցության հետևանք, որն առանձնապես մեծ է եղել եկեղեցական երաժշտության վրա, աղարտել դրա ոճն ու հարազատությունը:

Գիտականորեն ապացուցելով, որ ժողովրդական ու հոգևոր երաժշտությունը քույր-եղբայր են, նույն հիմքից են սերում, միաժամանակ նա վեր հանեց դարերի ընթացքում եկեղեցական երաժշտության մեջ ամբարված կերպարային ու երաժշտական-արտահայտչական հնարավորությունները:

Եվ մեր ազգային երաժշտությունն իր լայն ընդգրկմամբ, իր տարբեր ճյուղերով, հանդիսացավ Կոմիտասի ստեղծագործության ատաղձը:

Կոմիտասյան մեղեդին միաձուլվում, ներդաշնակվում է երաժշտության արտահայտչական միջոցների և, ամենից առաջ՝ բազմաձայնության կոմիտասյան հարուստ ու նրբագույն ինքնատիպ դրսևորումների հետ, ստեղծելով զարմանալի նոր ու վճիտ, վեհ ու լուսավոր, խորաթափանց և անպաճույճ գեղարվեստական կերպարներ: Նա իր երկերով ո՛չ միայն ստեղծեց ինքնատիպ երաժշտական լեզու և ոճ, այլև ժանրային հարուստ բազմազանություն: Նրա մեներգերն ու խմբերգերը ամենախտացած, ամենահղկված, ամենախոր արտահայտչամիջոցներով կերտված ստեղծագործություններ են: Երգային կերպը Կոմիտասի կողմից ընտրված է միայն իբրև ամենաժողովրդային և ամենաանմիջական արտահայտչաձև, իսկ երկի էությունն ու բովանդակությունն ամեն երգի մեջ մի որոշակի երևույթ է՝ լիրիկական հույզ, դրամատիկական մենախոսություն, պոեմ, էպիկական դրվագ, երգիծական պատկեր, բնության գովք, լայնախոհ մտորում, հոգու ողբերգական ճիչ, ժողովրդական ցասում, աշխատանքային սխրանք, հավատի անհաղթ բռնկում... Կոմիտասյան կտավները զարմանալի վճիտ լիրիկականությամբ ու ազնիվ դրամատիկականությամբ ներթափանցված խոր փիլիսոփայական, հոգեբանական, հավաքական, երբեմն սիմվոլիկ կերպարներ են, որոնցով մեծ արվեստագետն աշխարհին է ներկայացնում իր ժողովրդին:

Նրա բոլոր երգերն, անկախ իրենց բովանդակությունից, շատ հեռու են անձնական, անհատական խոհերի, զգացումների, տրամադրությունների արտահայտություն լինելուց։

Կոմիտասի լիրիկան անձնական չէ, ծեսը՝ կենցաղային, աշխատանքը՝ առօրյա, հումորը՝ թեթևաբարո, վիշտը՝ լալահառաչ, հավատը՝ վերամբարձ, խոհը՝ անհատական։ Նրա երգերով մի ամբողջ ժողովուրդ է խոսում, մի ամբողջ հավաքական ոգի է դրսևորվում՝ սեղմված, բյուրեղացած մի երգի շրջանակներում։ Կոմիտասի մոտ առանձին նյութեղեն առարկաներն ագուցվում են ըստ հատկանիշների և ստեղծում երկու մեծ կատեգորիաների բարձր հոգևոր հարաբերակցություն՝ հայրենի հողի և հայ ժողովրդի։

**Գարուն ա, ձյուն ա արել,**
**Վա՜յ լե, լե, լե, լե...**
**Իմ յարն ինձնից ա սառել...**

Որքա՜ն նման է այդ սերն իր ժողովրդի ճակատագրին։ Քանի՛ցս ձյուն է իջել նրա կյանքի ճամփին, վառ գարուններին։ Դրա համար էլ երգում ես ողջ էությամբ, ներքին ողբերգական շնչով, բայց ոչ անզոր ու լալահառաչ, որովհետև ձյան տակ գարուններ կան ծածկված, ժողովրդի անմահության գարունները...

**Ջիգ տու, քաշի, այ եզը,**
**արա հո՛, հո՛, արա հո՛.**
**Լուծըդ քաշի, այ եզը**
**արա հո՛, հո՛, արա հո՛...**

Ահա ստեղծագործ կյանքի սրբագործության վայրը, այստեղ են ծնվում բոլոր բարիքները։ Ծանր է ու դառն այդ աշխատանքը գեղջուկի համար. անիրավ է աշխարհը։ Կարող են խլել աշխատավորից իր դառը քրտինքի պտուղները, բայց անհնար է խլել նրանից աշխատելու տենչը։ Աշխատավորն է ստեղծարար աշխատանքի արարիչը... Դրա համար էլ այն անսահման վեհ է, հաստատուն, բազմահնչուն, կարծես բոլոր աշխատավորների ներքին պոռթկում։

Հնչում է մի թավ ձայն և կարծես արձագանքի նման կրկնվում է ավելի հեռու, ավելի բարձր։ Բայց դա մի ձայն ու նրա արձագանքը չէ։ Այդ երկու միանման հնչյունների տարածության մեջ ներդրված է մի ամբողջ ժողովրդի տառապյալ սիրտը, որ

**...Նման է էն փլած տներ,**
**Կոտրեր գերաններ, խախտեր է սներ,**
**Բուն պիտի դնեն մեջ վայրի հավքեր...**

Լաց ու ողբ չէ այս, տրտունջ ու մորմոք, այլ մեծագույն վշտի, մեծ զգացումին հատուկ զուսպ, վեհացնող, ազնվացնող արտահայտություն, գալիքի բարձունքները տանող։

**Քելեր, ցոլեր՝ իմ յարը,**
**Արևի տակին՝**
**Քելեր, ցոլեր՝ իմ յարը,**
**Սարի սովոր,**
**Մեն մենավոր**
**Ծեկ տղա,**
**Ծող արեգակ,**
**Թո՛ղ արեգակ,**
**Ե՛կ, տղա՛...**



Միայն մի՞ աղջիկ է միթե իր սիրած տղային կանչում թախիծով. կոմիտասյան մեղեդին այդ աղջկա շուրթերին մի ամբողջ ժողովրդի բացված սիրտը լինի կարծես, ու այնպես դյութում է, կանչում։ Այնքան խոր է ու մեծ այդ սերը... Արևներ ու աշխարհներ ունի իր մեջ։ Դրա համար էլ թեև անսահման քնքշությամբ ու ամոթխածությամբ, բայց սիրո հավատով աղջիկն ասում է.

**Թո՛ղ արեգակ,**
**Ե՛կ, տղա...**

Իբրև մեծ մտածող ու ստեղծագործող, Կոմիտասը բնականաբար ազգային դեմոկրատական ստեղծագործական նոր դպրոցի հիմնադրումն սկսեց ամենադեմոկրատական ժանրից՝ երգից, իսկ դրան հաջորդելու եկան խոշոր կտավի երկեր։ 1907—1908 թվականներից սկսած լրջորեն մտորում էր ազգային օպերային երկեր ստեղծելու մասին։ Հայտնի է նրա սերտ կապը Հ. Թումանյանի հետ, որի «Անուշ»-ը նրա առաջին օպերայի նյութն է դարձել։

Կոմիտասի անպարփակ ստեղծագործական մտահղացումներում փայլատակում էին մի քանի այլ օպերաների նախակերպարներ։ Նա ահագին աշխատանք էր կատարել լիրիկական «Անուշ»-ի կողքին ստեղծելու պատմահերոսական ժանրի մի այլ օպերա՝ «Վարդան Մամիկոնյան»։ Նրա ուշադրությունից չէր վրիպել էպիկական լայնաշունչ օպերային ժանրը, որ նա պիտի մարմնավորեր Սասնա ծռերի մեջ՝ վագներյան տետրալոգիայի ոճով։ Նրան ոգևորում էր և Պարոնյանի Քաղաքավարության վնասները, հիանալի նյութ՝ կատակերգական օպերայի համար։

Ահա թե ինչ է գրում Վարդան Սարգսյանը՝ մեկը Կոմիտասի սաներից, որոնք աշխարհի չորս ծագերը տարան մեծ ուսուցչի ավանդները.

> «...Ու մեր երգերը, որոնց մեջ հինավուրց ժողովրդի մը ամբողջ հոգին կար բյուրեղացած, կարծես սպասած էին իրեն, սպասած էին անոր, որ պիտի հանդգներ սուզվիլ այդ հոգիին խորը, թափանցել անոր խորհուրդին և կորզել անոր գաղտնիքը, իր փնտրած գաղտնիքը... դարերու անհուններեն ցեղին հոգին է, որ կխլրտի, կարթննա իր մեջ»։

Կոմիտասը խոշորագույն ստեղծագործող է, որի բազմազան, բազմաբովանդակ գործունեության մեջ առկայծում են նրա մեծագույն հայրենասիրությունն ու համեստությունը։ Բուռն հայրենասիրության արտահայտությունը չէ՞ միթե իր ողջ գիտական-ստեղծագործական ջանքը, նրա արդյունքներն իր ժողովրդին նվիրաբերելը, վերագրելը։

Զարմանալի խոր ու լայն է երաժշտության՝ որպես արվեստի, կոմիտասյան ըմբռնումը։ Երաժշտության մեջ նա տեսնում էր ո՛չ միայն իր ժողովրդի կյանքի ու ներքնաշխարհի արտացոլումը, այլև միաժամանակ այն հզոր զենքը, որով կարելի է դաստիարակել ժողովրդի ներքնաշխարհը, այդ ճանապարհով փոխել և նրա կյանքը։

Եվ ասպարեզ է իջնում Կոմիտաս գեղագետն ու մանկավարժը։ Նրան մտահոգում, անհանգստացնում էր դպրոցներում հոգևոր երգեր ուսուցանող տիրացուներին երաժշտության լիարժեք ուսուցիչներով փոխարինելու հարցը. և այդ ինքնանպատակ չէր, պայմանավորված չէր միայն պրոֆեսիոնալ երաժշտական կրթությունը պատանիների մեջ սերմանելու ցանկությամբ։ Կոմիտասը փայփայում էր այն միտքը, որ ուսուցիչները ժողովրդի մեջ կտարածեն իսկական ազգային երաժշտությունը, այն երաժշտությունը, որ բովանդակում է հայրենասիրության շունչը և ժողովրդի մեջ կամրացնի ազգային

ոգին և նրա ազդեցությամբ ժողովուրդը կթոթափի իրեն ճնշող, շահագործող տիրապետության լուծը և ոտք կդնի իր վերակենդանացման շավիղը։

Նրա այդ համոզմունքի արտահայտությունն է այն փոքրիկ, ձեռագիր թերթիկը, որը հանգչում է նրա արխիվի շատ թանկագին թերթերի մեջ.

> «Ամբողջ մտատանջությունս է հասցնել աշակերտներ, որոնք դպրոցներու մեջ տեղ գրավեն, նվիրվեն ազգային երաժշտության ուսումնասիրության, տարածեն ժողովրդին մեջ հայ երաժշտության ոգին, որպեսզի ժողովրդին մեջ ազգային երաժշտության խոսքը մարմնանա և անոր ազդեցության տակ ժողովուրդը թոթափելով իր թույլ պատյանը՝ մտնե վերակենդանացման շավիղին մեջ... Մեր մեջ երաժշտության վրա կնայեն իբրև հաճույքի և ժամանցի միջոցի մը վրա... Մինչդեռ ազգային երաժշտությունը կտարածե հայրենի շունչ և միամիտ ու պարզուկ զգացումներ՝ դաստիարակվող սերունդին մեջ: Մեկ հասկցված անկեղծ ձայն հազար ճառ կարժե, որովհետև ճառը պետք է մարսե հասարակությունը, որ կարենա անկե սնունդ առնել, ինչ որ ժամանակներու գործ է: ...Իսկ ձայնը վայրկյանին մեջ կը թափանցե մարդուն կուրծքեն ներս և այնտեղ կհիմնե զգացման ու մտքի վառարան»:

Կոմիտասի խոր ու պայծառ մտքերը՝ երաժշտության, մարդու և ժողովրդի հոգեկան աշխարհի ու կյանքի վրա ունեցած հսկայական ներգործության վերաբերյալ, մի ամբողջ համակարգ են կազմում։ Տարաբախտաբար այդ մտքերն ամբողջությամբ շարադրված չեն, բայց այն հատուկենտ գրառումները, որ մենք գտնում ենք նրա ձեռագիր նյութերում, նրա առաջավոր, դեմոկրատական աշխարհայեցողության վկայությունն են։

Կոմիտասը, իր ժամանակի հայ իրականության պայմաններում, զարմանալի խորությամբ ու նրբությամբ է ըմբռնում հայ ժողովրդի ազգային, քաղաքական ու տնտեսական կյանքի իրադարձությունները։ Որքա՜ն հստակ էր պատկերացնում նա հայ ժողովրդի փրկության ուղին։ Այդ տեսակետից առավել պերճախոս է նրա նամակը՝ Արշակ Չոպանյանին։ 1912 թվականի դեկտեմբերին նա գրում է.

> «...Ըստ իս, առաջին քայլն է բոլոր հայությունն ամփոփելու ռուսի իշխանության տակ, երկրորդ քայլն է տնտեսապես ու բարոյապես, զուտ ազգային, առանց օտարեն ու մեզ անմարս գաղափարներով առաջնորդվելու՝ զարգանալ, երրորդ քայլն արդեն ինքը ռուս հեղափոխությունն է... Եվրոպական մարդկային գաղափարները, որքան որ ընտիր են ու փափագելի, բայց մեզ անպետք են. պաղ երկրի բույսերը մեր ջերմ արևին տակ կկիզվեն»:

Այս ամենը ցույց են տալիս, թե որքա՜ն սխալվել են շատերը Կոմիտասի փայլուն միտքն ու ստեղծագործ մեծ սիրտը, նրա վառ հայրենասիրությամբ բռնկված վեհ ոգին, նրա աշխարհայեցողությունը ջանալով պարփակել էջմիածնի վանական պարիսպներով կամ բուն ժողովրդականի մակարդակից վեր չխոյացող կարողությունների ու գործունեության մեջ։

Կոմիտասը գտնում է, որ ժողովրդի հոգևոր մշակութային մակարդակի և, մասնավորապես, երաժշտության ասպարեզում նրա գեղագիտական ըմբռնումների ու ճաշակի բարձրացման ուղիով կարելի է ստանալ ավելի բարձր գեղարվեստական մակարդակի արտահայտություն իր ստեղծագործական ձիրքին հատուկ ժանրի՝ երգի մեջ։ Ժողովրդի ստեղծագործական կարողությունների հանդեպ անհատնում հավատով նա գրել է.

> «Տվեք ժողովրդին իրա ոգով ստեղծելու զարգացած օրինակ և նա կտա ձեզ բնական, ընդարձակ ստեղծագործություն: Ոչ մի բան նրա զգայարաններից խուսափել չի կարող, դրա համար էլ խիստ բազմապիսի են ժողովրդի ստեղծագործության արդյունքները: Միայն թե օրինակը պետք է լինի ժողովրդական կենդանի երգերից առնված»:

Կոմիտասը լավ էր հասկանում ժողովրդի կյանքի, մարդկանց սոցիալա-



կան հարաբերությունների, ազատության ու խաղաղության որոշակի դերը՝ արվեստի զարգացման մեջ։

> «Երբ ժողովրդի կյանքը ազատ ու խաղաղ է,— գրում է նա,— ստեղծագործության տեսակները ու ծավալը ճոխանում են, իսկ ստրկության ճնշման աստիճանին նայելով էլ տկարանում, ընկճվում և մի շատ սեղմ բան է դառնում»։։

Իր ողջ էությամբ ու գործունեությամբ հարազատ ժողովրդին նվիրված Կոմիտասը համաշխարհային ճանաչում էր բերում նրան,. եվրոպական խոշոր երաժշտական կենտրոններում ներկայացնելով հայ երաժշտությունը, իր ստեղծագործական հանճարով սրբագործված հայ երաժշտությունը։

1914 թվականի ամռանը, վերադառնալով Փարիզում կայացած միջազգային երաժշտական համաժողովից, ուր նա փայլուն հաջողություն էր ունեցել իր դասախոսություններով և երգչական խմբավարական արվեստով, Պոլսի «Ազատամարտ» թերթի թղթակցի հարցումներին պատասխանում է.

> «Իմ հայտնած տեսություններս հայ հոգևոր և գեղջուկ երաժշտության մասին նորություն էին մանավանդ անոնց համար, որոնք տարի մը առաջ կանգիտանային կամ կմերժեին հայ ինքնուրույն երաժշտության մը գոյությունը: Հետո շատերը, որ հայ երաժշտության մասին հարևանցի գաղափար մը ունեին, դասախոսություններե ետքը առաջինը եղան խոստովանող, որ հայ երաժշտությունը գեղարվեստական բարձր արժեք մը կներկայացնե, ավելի հարազատ, քան ուրիշ շատ մը ժողովուրդներու մեջ, ավելի վսեմ, քան արևելյան ուրիշ ազգերու մոտ»: Այնուհետև Կոմիտասը շարունակում է. «Ուրախ եմ, որ բոլոր այդ հայտնի վարպետները կրցան թափանցել, որքան հնար է, հայ երաժշտության խորությանց և բարձրաձայն հայտարարեցին անոր ուժն ու քնքշությունը, չվարանելով նույնիսկ աստվածային կոչել զայն: Հետաքրքրական էր նաև տեսնել, երբ միջազգային վարպետներ, համաժողովն ավարտելեն ետք, աղբյուրներ կփնտրեին հայ երաժշտության ավելի ևս ծանոթանալու համար և երբ անոնցմե շատերը սկսան կիրակի օրերը հայոց եկեղեցին հաճախել նաև եկեղեցական երաժշտությունը վայելելու համար»:

Թղթակցի հետ ունեցած իր զրույցը Կոմիտասը եզրափակում է հետևյալ խոսքերով.

> «Ես տարիներու աշխատանքով շիներ եմ իմ ուղեգիծը, ուրկե ընթացեր եմ մինչև ցարդ և պիտի ընթանամ ասկե ետքն ալ, որքան ատեն որ ուժ զգամ երակներուս մեջ, ոչ մեկ խոչընդոտ չի կրնար կասեցնել զիս իմ առաքելությանս մեջ, որի նվիրականությանը համոզված եմ բոլոր սրտովս»:

Իր առաքելության ուղիով անխոտոր ընթացող Կոմիտասը նաև ուսուցիչ էր, որ իր գործի, երաժշտության մեջ ներդրած անհուն նվիրումով կարողանում էր հոգիներ հեղաշրջել, նոր աշխարհաճանաչում ու նոր աշխարհընկալում ծնել մարդու մեջ և դրանով բոլորին դարձնել իր գործի ու ձիրքի ջերմեռանդ խնկարկուն։

Այդ անուրանալի իրողությունը խոստովանում են նրա շատ աշակերտները, որոնցից յուրաքանչյուրն իր կարողությունների չափով վերցրեց մեծ ուսուցչի ավանդներից այն, ինչ կարողացավ։

Մանկավարժ-հոգեբան Կոմիտասը հորդորում էր ուսուցիչներին՝ այնպիսի երգերով զբաղեցնել երեխաներին, որոնցից նրա մատաղ հոգին իրական սնունդ կարողանա ամբարել։ Երգը զվարճալիք ու ժամանց չէ, երգն զգացում է, ուրեմն և «դատարկ հնչումեն դատարկ զգացում կառաջանա միայն»։ Երգը ոգի է. ուրեմն «տխուր երգ չտալ երբեք, այլ ամեն ինչ աշխույժ, եռանդ պիտի ներմուծե անոնց հոգիներեն ներս»։

Ուրեմն. «...Զգուշությամբ և երկյուղածությամբ մոտեցեք դաստիարակության գործին, խիստ փափուկ պաշտոն մըն է ձերը։ Դաստիարակել կոչված եք սերունդ մը, որը ապագա ազգն է, սխալ ուղղությամբ ազգ մը կխորտակեք վերջը...»։

Գիտնական գեղագետը, ստեղծագործողն ու ազգագրագետը, մանկավարժն ու հասարակական գործիչն իր բոլոր իմաստուն դրույթներն ամրապնդում ու առավել համոզիչ էր դարձնում նաև իր կատարողական բարձր արվեստով։ Նա հիանալի երգիչ էր, որ միավորում էր իր կատարման մեջ երգչական բարձր վարպետությունը երգերի մեջ ներդրած ազգային ոգու, իր ժողովրդի սրտի թրթիռները նրբագեղությամբ արտաբերելու կարողության հետ։ Նա իր երգով հիացում էր առաջացնում ամենուրեք, եվրոպական երաժշտության բարձր շրջաններում։

Կոմիտաս-երգչի կարողությունների ու արվեստի մասին Մարգարիտ Բաբայանը (ականավոր երգչուհի, երաժշտագետ, դաշնակահարուհի) գրում է.

> «Ով որ լսել է իր՝ արցունքներով կարծես շաղախված ձայնը, այն թրթռուն, ոգևորված, նուրբ ու զգայուն երգը, երբեք չպիտի կարողանա մոռանալ... ամբողջապես հոգի էր այդ ձայնը և կտաներ ունկնդրին դեպի անհունը... նա հայ երգին մարմնացյալ արտահայտությունն էր և ուր երթար, ինչ հանգամանք էլ լիներ, նա իր երգով անսահման ոգևորություն էր ներշնչում իր շուրջը։
>
> Թե ինչ ծավալ ուներ իր ձայնը, դժվար է ասել. մերթ հզոր տենորի տպավորություն էր անում, գիլ տարածուն, մերթ կարծես բարիտոն, նույնիսկ բաս, այնքան քնքուշ ու արտահայտիչ և մարդկային հոգին տակն ու վրա անող, ու ազգին խորը ցավերը, հույզերը, ուրախությունները մարմնացնող, մերթ կարծես հառաչանքներ, հեծկլտանքներ էին ելնում նրա կրծքից...»։

Կոմիտաս-երգիչը մեծ էր մանավանդ նրանով, որ իր երգեցողությամբ նաև հիմք դրեց մի ամբողջ դպրոցի— հայ ազգային երգարվեստի դպրոցին։ Այդ դպրոցի երգելակերպը իրավամբ կարելի է համարել Մեսրոպյան. կոմիտասյան երգարվեստի հատկանիշներն արտահայտվում են՝ անսեթևեթ, կորովի, պարզորեն շնորհալի, սրտագին, քնքույշ, խաղաղ, ազդու բառերի խոր իմաստով, մի բան, որ այնքան ընդհանուր է հայ արվեստին։ «Կոմիտասի ձայնով ամբողջ ժողովուրդ մըն է, որ կարտահայտվի»։

Կոմիտասի կատարողական արվեստն ու դպրոցը ամբողջանում են միայն իր խմբավարական գործունեության հետ միավորելով։ Երգարվեստի բացառիկ գիտակություն, ինքնուրույն, ինքնատիպ մեթոդով հնչյունների բարդ հյուսվածքի մեջ յուրաքանչյուր հնչյուն անվրեպ լսելու, որսալու մեծ ձիրք, ուսուցվող երգն իր բովանդակությամբ կերպարայնորեն բացատրելու կարողություն, բազում հագագներից իր ցանկացածը դուրս կորզելու մոգական ուժ, ընդհանուր համահնչունություն ստեղծելու գերագույն ճաշակ— սրանք են Կոմիտասի խմբավարական արվեստի առանձնահատկությունները։

Որքա՜ն հարմար կլիներ Կոմիտասին իր առաքելական աշխատանքի մեջ այն գնահատականը, որ ինքը տվել է դերասանուհի Սիրանույշին, նրա 35-ամյա հոբելյանի առթիվ.

> «Ի՞նչ ավելի դժվար բան կա, քան սրտեր ու հոգիներ տաշելը և այն էլ այնպիսի միջավայրում, ուր գեղարվեստը հավասար է ժամանցի։ Բայց դուք ժրաջան մեղվի պես 35 տարի շարունակ թռաք մեկ բեմից մյուսը և գեղարվեստի մարգերից բազմապիսի ծաղիկներից հավաքեցիք առատ հյութ, որպեսզի հայ բեմի փեթակը լցնելու օժանդակեք»։

Անհուն նվիրումով, առանց ընկրկելու Կոմիտասը կարողացավ հայ երաժշտության անդաստանից անսպառ նեկտար ամբարել, ազգային բարձր երաժշտության կենսահյութը շաղախելու համար։

Կոմիտասն ապշեցնում է իր գործունեության լայնածավալ ընդգրկումով։ Ազգային երաժշտության ոչ մի բնագավառ դուրս չի մնացել նրա տեսադաշտից, ամեն մի մանրուք մտահոգել է նրան, և որ առավել կարևոր է, ամեն



ինչին նա անդրադարձել է բացառիկ լրջությամբ, քննել այն գիտնականի բարեխղճությամբ, մեծ հայրենասերի ջերմ սրտով։

Ազգային երաժշտական մշակույթի ինքնությունն ու արժանիքները հիմնովին վերհանելուց հետո, Կոմիտասը ջանում է այն ճանաչելի դարձնել ինչպես հայ ժողովրդին, այնպես էլ օտարազգիներին։ Այս է պատճառը, որ նա իր չափազանց սուղ ու բազմազբաղ ժամանակից կարողացավ և տրամադրեց Եվրոպայի շատ քաղաքներ շրջելուն. նա մասնակցել է երաժշտական համաժողովների ու փառատոների, դասախոսություններ կարդացել, հոդվածներ հրապարակել տարբեր լեզուներով, երգել, խմբեր ղեկավարել։

Իր երաժշտական-ստեղծագործական գործունեությամբ Կոմիտասը ո՛չ միայն ստեղծեց, համամարդկային ասպարեզ դուրս բերեց ազգային երաժշտական դպրոցը, այլև իր նոր դպրոցով հսկայական հետաքրքրասիրություն հարուցեց եվրոպական երաժշտության նոր ուղղությունների, դրանց մեծագույն ներկայացուցիչների շրջանում, ինչ-որ չափով իր ներգործությունն ունեցավ նրանց վրա։

Եվ այդ պատահական չէ, որովհետև Կոմիտասն ասպարեզ իջավ այն ժամանակ, երբ եվրոպական արվեստն իր անկումայնության շրջանն էր ապրում, կտրվել էր իր ամրակուռ հողից՝ կյանքից, ժողովրդական զգացողությունից, ժողովրդական ստեղծագործության գանձարանից, երբ բովանդակությունը մղվում էր ետին շարքը, հանուն արտահայտչական միջոցների «նորարարության» ու «ինքնատիպության»։

Այս մթնոլորտում ասպարեզ է իջնում Կոմիտասը, իր հետ հրապարակ բերելով մի ամբողջ ժողովուրդ՝ իր բովանդակ կյանքով, երաժշտացած, կոմիտասյան արվեստով վերստեղծված, պայծառացած, հզոր ձայնով։ Կոմիտասը կյանք էր բերում, բերում էր ժողովրդական ընկալում, ժողովրդական մտածողություն, բերում էր արվեստ, որը և՛ խոր բովանդակություն ուներ, և՛ զգացում, և՛ արտահայտչական մեծ ու խորունկ բազմազանություն, և՛ նկարագրական ուժ։

Տպավորությունը ցնցող էր։

Կոմիտասի արվեստի առաջին հիացողներից էր Ռոմեն Ռոլանը, որ մտրակել, ձաղկել է այդ ժամանակվա արվեստի խեղդող իրականությունը, «արվեստը արվեստի համար» տեսությունը, ցավով նշել, որ ժամանակակից արվեստի մեջ ընդգծվում են միայն «ռիթմի և հարմոնիաների հետաքրքիր գյուտերը», «հնարամտությունը և թարմությունը», որին, սակայն, պակասում է ամենակարևորը՝ «հզոր կյանքը»։

Կոմիտասյան արվեստն իր ժողովրդային հիմքերով ու սկզբունքներով այնպես ոգեշնչեց Ռոլանին, որ նա նրա մեջ տեսավ եվրոպական «հիվանդ արվեստի» բուժիչ, նորոգող հնարավորություններ։ Իր այդ խոր համոզումը նա արտահայտել է ո՛չ միայն տեսական աշխատություններում, այլ թափանցել է նաև նրա գեղարվեստական գործերում։ Ճիշտ է, Ռոլանն այդ նորոգիչ ուժը տեսնում էր ընդհանրապես արևելյան երաժշտության մեջ, բայց ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ընդհանուր արևելյանի մեջ նա առանձնակի տեղ էր հատկացնում հայկական, մասնավորապես կոմիտասյան երաժշտությանը։

Ժան Քրիստոֆի հերոսներից Օլիվերի բերանով Ռոլանն ասում է. «Արևմուտքն այրում է ինքն իրեն... Շուտով, շուտով կսպառվի...»։ Ապա նա շա-

րունակում է. «...Ես արդեն տեսնում եմ այլ լույսեր, նրանք բարձրանում են Արևելքի բարքերից...»։

Հունական, ընդհանուր արևելյան և, մասնավորապես, նաև հայ երաժշտության մեջ, Ռոլանը տեսնում է «նոր բոցավառվող արևներ», «նրանք բացեցին հին լադերի, ժողովրդական մեղեդիների և ռիթմերի, տարաշխարհիկ և անտիկ հնչյունաշարերի նոր և հին միջուտների ջրարգելակները»։

Կոմիտասյան ստեղծագործություններով հիացած Ռոլանը 1935 թ. հայ երգի մասին գրում է. «Նրանք հրապույր ու մելոդիկ մի հարստություն ունեն, որոնք ձեր երկիրը երաժշտության տեսակետից դարձնում են խորհրդային մի Իտալիա»։

Կոմիտաս ստեղծագործողի վիթխարի արժանիքներն ու նշանակությունը խորապես գնահատել է Դեբյուսին։ Պատահական չէ նրա այն գնահատականը, թե «եթե Կոմիտասը գրեր միայն «Անտունին», այդ էլ բավական կլիներ նրան խոշոր արվեստագետ համարելու»։ Նա գործնականորեն շատ բան է արել հանրաճանաչ դարձնելու համար Կոմիտասի ստեղծագործությունը։ Կոմիտասի երկերը նա համարել է «Հայ վարպետի կողմից կատարված երաժշտական խոշոր հայտնագործություն», «այդ օրերի երաժշտական աշխարհի ամենաուշագրավ երևույթը»։ Ժամանակի եվրոպական շատ առաջավոր երաժշտագետներ բարձր են գնահատել Կոմիտասի ստեղծագործական սխրանքները։

Կոմիտասյան վսեմ արվեստի բարերար ներգործությունն սկսվում է գաղափարների, երաժշտագիտական մտքի վրա ունեցած նրա ներգործությունից, որն այնուհետև պիտի տարածվեր նաև բուն ստեղծագործության մեջ, անշուշտ իբրև սկզբունք, և ոչ իբրև ընդօրինակություն։ Իր ստեղծագործական աշխատանքով Կոմիտասը կարողացել է շարժել մտքեր, սնունդ տալ նոր գաղափարների։

Մեծ ու խոր երաժշտական գործունեությամբ Կոմիտասը դարձավ ո՛չ միայն հայ պրոֆեսիոնալ երաժշտական դպրոցի հիմնադիրն ու մեծագույն ներկայացուցիչը, այլև համամարդկային երաժշտական մշակույթի խոշոր դեմքերից մեկը. Կոմիտասը եկավ հայ ժողովրդի կյանքի ու հոգևոր մշակույթի բազմադարյան պատմության խորքերից ու վեր խոյացավ՝ երեսը դարձրած նրա զարգացման նոր ու հեռասլաց ուղիները։ Եվ դեռ ինչպիսի՜ գոհարներ կարող էր տալ նա հայ համամարդկային արվեստին, եթե այնքան անողոք ու անժամանակ չհասներ եղեռնական վախճանը...

Գոհունակությամբ պետք է նշել, որ սովետական կարգերի օրոք հսկայական և արդյունավետ ջանքեր են թափված Կոմիտասի՝ մեզ թողած հարուստ ժառանգությունը ՍՍՀՄ ժողովուրդների սեփականությունը դարձնելու նպատակով։ Հիրավի, ինչպե՞ս չուրախանալ, երբ նրա հոգեպարար մեղեդիները մշտապես հնչում են ռուսական, ուկրաինական, բելոռուսական, ղազախական, ուզբեկական, բալթիական, կովկասյան և միջինասիական բազում ժողովուրդների բեմերից, ռադիոներից, հեռուստատեսության էկրաններից... Այսօր նրան գիտեն ու եղբայրաբար սիրում են սովետական մեծ հայրենիքի տասնյակ միլիոնավոր արվեստասերներն ու աշխատավորները։

Մենք հպարտանում ենք, երբ կոմիտասյան երգի կարկաչուն ու վճիտ առվակները հագեցնելով բազում ժողովուրդների հոգևոր ծարավը, այնպես հորդառատ թափվում են համամարդկային արվեստի ջինջ օվկիանոսը։ Սա մե՜ծ, շատ մեծ հասում է հայ ժողովրդի համար, որից ելնելով ասում ենք. միայն սովետական կարգերի շնորհիվ Կոմիտասն այսօր գրավում է իր արժանի տեղը երաժշտական արվեստի համաշխարհային հսկաների կողքին։

# ԿՈՄԻՏԱՍԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅ ԱՐՎԵՍՏՈՒՄ

Ռ. Ա. ԱԹԱՅԱՆ

Արվեստագիտության թեկնածու

Կոմիտասի գործունեությունը հայ արվեստի պատմության մեջ մի ամբողջական փուլ է կազմում։ Դրա նշանակությունն իր որոշ կողմերով երաժշտության բնագավառից տարածվում է և այլ բնագավառներ։ Միևնույն ժամանակ, Կոմիտասի գործունեության ամենակարևոր արդյունքներն իրենց նշանակությամբ դուրս են գալիս հայ իրականությունից, մտնում միջազգային ասպարեզ։

Կարևոր է ընդգծել երկու երևույթ. Կոմիտասի զարմանալի ունիվերսալիզմը և նրա գործի խոր սկզբունքայնությունը։ Դեռևս 1904 թ., բազմագիտակ երաժշտագետ Վ. Ղորղանյանը Կոմիտասի աշխատանքը համարում էր մի ամբողջ գիտական ինստիտուտի կարողության համեմատ. չափազանցում չէ այդ։

Անցյալի հայ երաժիշտները, կադրերի խիստ սակավության պայմաններում, արդեն իսկ ստիպված էին հանդես գալ որպես բազմակողմանի գործիչներ, և դա սովորական էր։ Բայց երբ Կոմիտասն էր հանդես գալիս՝ որպես բարձրատաղանդ ու ինքնատիպ կոմպոզիտոր, խորապես գիտական սկզբունքով առաջնորդվող երաժիշտ-ազգագրագետ, որպես նույնքան սկզբունքային ու խորաթափանց երաժշտաբան, որպես առաջնակարգ երաժիշտ կատարող (երգիչ և խմբավար), որպես մանկավարժ, հրապարակախոս ու հասարակական գործիչ— ապա երևույթն առանձնահատուկ էր, քանի որ նրա գործունեության այդ բնագավառներից ոչ մեկը մյուսի համեմատությամբ երկրորդային չեղավ։ Բոլոր բնագավառներում էլ նրա արածը գնահատելի է։ Թե՛ «քանակական» և թե՛ «որակական» ցուցանիշներով, բոլոր բնագավառներում նա հասավ կարևոր նվաճումների և հեռանկարային նշանակություն ունեցող խոր հետքեր թողեց։

Կոմպոզիտոր-Կոմիտասի ստեղծագործությունը, եթե այն դիտենք «քանակական» ցուցանիշով, երկար ժամանակ հայտնի էր ընդամենը երեք տասնյակից քիչ ավելի ժողովրդական երգերի մշակումով։ Բայց հայտնի էր նաև, որ նա հնարավորություն չի ունեցել գրածը տպագրել տալու, իսկ հիվանդության տարիներին շատ բան ցրիվ եկել, կորսվել է։ Թեև Կոմիտասյան նյութերը դանդաղ են հայտնաբերվում, բայց այժմ իսկ հայտնաբերված նրա ստեղծագործությունները մեծ չափով գերազանցում են սկզբնական քանակությունը։

Այսպես՝ նրա աշխարհիկ ստեղծագործություններից 40 մեներգ դաշնամուրով և 29 խմբերգ արդեն տպագրված են գիտական հրատարակությամբ։ 70 այլ խմբերգեր հրատարակվում են հոբելյանի առթիվ, մի շարք ստեղծագործություններ հրապարակված են մամուլում, հրատարակության են պատրաստվում մի քանի տասնյակ այլ երգեր և այլն։ Այժմ մենք հնարավորություն ունենք նաև համեմատաբար լրիվ պատկերացնելու այդ ստեղծագործության ժանրային ընդգրկումը։ Բազմաբովանդակ գյուղական երգերի մշակումների հետ կան նաև քաղաքի ժողովրդականացած երգերի ու հոգևոր երաժշտության բազմաթիվ մշակումներ և դրանց նյութերով ստեղծագործություններ, ընդհանրապես ժողովրդական սկզբնաղբյուրից անկախ գործեր և այլն։ Թեև տվյալներ կան, որ այդ ևս ողջ եղածը չէ, բայց պատկերը շատ ավելի բացահայտ է։

Անդրադառնալով «որակական» ցուցանիշին, ասենք, որ ժառանգության հիմնական մասը կազմող ժողովրդական երգերի մշակումները՝ որպես կոմպոզիտորական ստեղծագործություն, հաճախ որոշ թերահավատությամբ են պատկերացվել։ Իրականում ժողովրդական նյութի մշակումը այս դեպքում ոչ մի բանով չի զիջում լիովին ինքնուրույն կոմպոզիտորական ստեղծագործությանը։ Բանն էլ հենց այն է, որ Կոմիտասն աննախընթաց կերպով բարձրացրեց ժողովրդական երգի մշակում կոչվող ժանրի գեղագիտական նշանակությունը։ Չնայած Կոմիտասի մշակումներում լիովին պահպանված են ժողովրդական շունչն ու ոգին, և նա ինքն այդ գործերը ներկայացնում էր, առաջին հերթին, որպես ժողովրդի ստեղծագործություն (Հայ գեղջուկ երգեր. գրի առավ և դաշնակեց Կոմիտաս վարդապետ), բայց դրանցում ակնբախ է կոմպոզիտորական խոր միջամտությունը, համեստ չափանիշներում ներդրված են ստեղծագործական հզոր նախաձեռնություն և անհատականություն։ Հիրավի, դրանք ժողովրդական սկզբնաղբյուրից նյութ առած կոմպոզիտորական ինքնուրույն աշխատանքներ են (դրանցում նույնքան արժեքավոր է ժողովրդական նյութի բանաստեղծական մշակումը)։

Այդ մեներգերն ու խմբերգերը, ինչպես նաև բազմամաս խմբերգային սյուիտներն ստեղծելիս Կոմիտասը չգնաց արվեստի տրորված ճանապարհներով։ Խորապես գիտենալով ո՛չ միայն հայ ժողովրդական երաժշտությունը, այլև ժամանակակից (XX դարասկզբի) եվրոպական կոմպոզիտորական արվեստը, երաժշտական-արտահայտչական միջոցների բնագավառում նա ստեղծեց իր սեփականը, ինքնատիպը։ Այս է պատճառը, որ այդ ստեղծագործությունները ժամանակին արժանացան եվրոպական խոշորագույն հեղինակությունների բարձր դրվատանքին և այսօր էլ ունեն ո՛չ միայն գեղարվեստական, այլև գեղագիտական-իմացական մեծ արժեք։

Կոմիտասի ստեղծագործությունները լայն հեռանկարներ բացին հայ երաժշտական նոր մշակույթի զարգացման համար, քանի որ դրանք հայ երաժշտության մեջ ներդրին ավանդույթների վրա հիմնված, բայց նորագույն կոմպոզիտորական հնարներով հարստացված երաժշտական լեզու, ցույց տվին հայ երաժշտության հետագա զարգացման ճանապարհը։ Թեև մեր ժամանակակից հայ կոմպոզիտորները ազգային ոճն ավելի լայնորեն են պատկերացնում և իրագործում (այդ բանում որոշակի դեր է կատարում նաև գուսանական երաժշտության առանձնահատկությունների դրսևորումը), ավելի լայնորեն են օգտագործում համաշխարհային երաժշտության նորագույն նվաճումները, բայց այդ ոճի կոմիտասյան ընկալումը մնում է որպես ուղեցույց։

Կոմիտասի ստեղծագործությունները կազմեցին հայ դասական արվեստի



բարձրարժեք հատվածը, միաժամանակ, իրենց ժանրում դրանք համաշխարհային դասական-երաժշտական մշակույթի խիստ հետաքրքրական ու ինքնատիպ երևույթներից են, թեև, դժբախտաբար, դեռ քիչ են ճանաչված*։

Երաժիշտ-ազգագրագետ Կոմիտասը իր գիտակցական կյանքի գրեթե ողջ ընթացքում ամբողջ հոգով նվիրվեց ժողովրդական երգի հավաքմանը։ Մինչև Կոմիտասը այս բնագավառում Հայաստանում քիչ բան էր արված, և հարցը դա չէ միայն, այդ գործին մոտեցել էին ոչ թե գիտական, այլ զուտ կիրառական (ժողովրդական երգերը բեմական կատարման համար հարդարելու և ցուցադրելու) նպատակով։ Կոմիտասը շատ ավելի լայն էր դիտում խնդիրը և հեռանկարային։ Նա համոզված էր, և իր բազմաթիվ գրություններում ևս պարզ արտահայտել է, որ անարատ կերպով ցուցադրված ժողովրդական երաժշտությունը շատ կարևոր տեղ ունի որևէ ժողովրդի ընդհանուր մշակույթի ինքնատիպությունը հաստատելու գործում։ Ժողովրդական երգերը հավաքելիս նրա առաջին նպատակը (գոնե հասունացած շրջանում) հենց սա էր. և այս ուղղությամբ ոչ պակաս, քան կոմպոզիտորական արվեստում, միջազգային համաժողովներում նա բազմիցս արժանացել է խոր գնահատման։ Նրա արտասահմանյան համերգների քննախոսականներում հաճախ է գրվել, որ Կոմիտասը ժողովրդական երաժշտության միջոցով ճանաչել տվեց Հայաստանն ու հայ ժողովրդին։

Միևնույն նպատակադրումից ելնելով՝ Կոմիտասը շեշտում էր նաև ժողովրդականության դերը կոմպոզիտորական արվեստի զարգացման համար։ Չէ՞ որ ժողովրդական նյութը կամ ոճը ներդրվելով պրոֆեսիոնալ ստեղծագործության մեջ (անշուշտ, ստեղծագործական անհատականությամբ, բայց ոչ պասսիվ ոճավորման միջոցով), շատ բանով որոշելու էր նույն այդ կոմպոզիտորական ստեղծագործության ազգային ինքնատիպությունը։ Հենց Կոմիտասին է պատկանում այն միտքը, թե «ժողովրդական երգը մեծ դեր է խաղալու ապագայի ուղիղ երաժշտության ճանապարհը գծելու գործում» և կամ. «Մենք՝ հայերս, դեռ պետք է մեր ոճը ստեղծենք, ապա թե առաջ գնանք»։

Ժողովրդական երգի նշանակության և այդ երգը հավաքելու այս վեհ նպատակի գիտակցումն արդեն գործի կեսն էր, բայց միայն կեսը։ Մյուս կեսն էր՝ հայ երգը հայտնաբերել ու ձայնագրել այնպես, որ դարերի ավանդույթներ ունեցող այդ արվեստը ներկայանար ոչ թե պրիմիտիվներով, որպիսիք միշտ եղել են, կան ու կլինեն ժողովրդի երաժշտական կենցաղում, այլ այն ստեղծագործություններով, որպիսիք, հիրավի, կարող էին համարվել ժողովրդի հավաքական հանճարի հղկված ու կատարելագործված արգասիքը։ Ի՞նչ ասել կուզի՝ Կոմիտասի հավաքած երգերը հենց այդպիսիք են, և դա շնորհիվ այն բանի, որ նա այդ երգերը հայտնաբերում էր ժողովրդի խոր ընդերքում, երգի հնչման «բնական» պայմաններում և այդ գործում նրա նուրբ լսողության ու ճաշակի հետ կարևոր դեր էր խաղում նաև ժողովրդական հոգու անարատ արտահայտումներն զգալու սուր «հոտառությունը»։ Զուր չէ, որ Կոմիտասի ձայնագրած որոշ երգեր հավասարեցվում են պատմա-մշակութային արժեքավոր հայտնաբերումների։

---

* Կոմիտասի երկերը Հայաստանից դուրս պրոպագանդելու համար, ցավոք սրտի, շատ քիչ բան է արված։ Նրա երգերի տեքստը թարգմանելու և դրանք այլ լեզուներով հրատարակելու ուղղությամբ ձեռնարկված են անսիստեմ, երբեմն անձնական նախաձեռնության վրա հիմնված նախնական և շատ անհաստատ քայլեր միայն։ Նույնիսկ ռուսաց լեզվով դեռևս չկան քիչ թե շատ բավարար թարգմանություններ, որոնց շնորհիվ այդ երգերը մատչելի կդառնային Սովետական Միության բազմազգ ժողովրդին։ Այսպիսի «ինքնաղքատացումը» ներելի չէ։

Իր ազգագրական-երաժշտական ժառանգությամբ (որ դարձյալ, դժբախտաբար, փոքր մասով է միայն հայտնի) Կոմիտասը խոշոր ավանդ մուծեց հայագիտության բնագավառում. Կոմիտասի ձայնագրած երգերը շնորհակալ նյութ կարող են տալ ո՛չ միայն հայ ժողովրդական երաժշտության, այլև նրա պատմության, ընդհանուր ազգագրության, հոգեբանության ու այլ բնագավառներին։ Ավելորդ է ասել, թե այդ նույն երգերը որքան մեծ դեր են խաղացել, խաղում են և ապագայում էլ կխաղան հայ կոմպոզիտորական արվեստի և երաժշտագիտության զարգացման համար։ Կոմիտասի ազգագրական ժառանգությունը ներդրում է նաև միջազգային երաժշտական ֆոլկլորում, քանի որ այն այդ ֆոլկլորը հարստացրել է աշխարհի բազմազգ ժողովուրդներից մեկի՝ ազգային վառ անհատականությամբ ու գեղարվեստականությամբ օժտված երաժշտությամբ*։

Ժողովրդական երգի հայտնաբերման ու ձայնագրման հետ սերտորեն կապված էր երաժշտաբան-Կոմիտասի գործը։ Թերևս սա այն բնագավառն է, որտեղ ամենից քիչ բան է հայտնաբերված Կոմիտասի ժառանգությունից։ Նրա՝ տպագրված մի քանի հոդվածները (դրանց թվում, առաջին հերթին՝ Լոռու գութաներգը Վարդաբլուր գյուղի ոճով երաժշտագիտական էտյուդը) իրենց բնագավառում մեծ արժեք են ներկայացնում, մեթոդաբանական արժեքավոր նորություններով հարստացնելով ժողովրդական երաժշտության մասին ընդհանուր գիտությունը։ Բայց պահպանված ձեռագիր պատառիկներն ավելի շատ եղածի վկայությունն են։ Ժողովրդական երաժշտությունից բացի, այլ հարցերի նվիրված նրա աշխատությունները ևս մեծարժեք են։ Դրանցից են, օրինակ, նրա աշխատությունները միջնադարյան հայ պրոֆեսիոնալ երգարվեստի (հոգևոր երաժշտության) առանձնահատկությունների և բուն ժողովրդական երաժշտության հետ նրա փոխհարաբերության վերաբերյալ։ Մի բնագավառ, որ միջազգային երաժշտագիտության ասպարեզում չի դադարել և չի դադարում սևեռուն ուշադրության առարկա լինելուց։ Կոմիտասի երաժշտաբանական աշխատանքի ցրիվ եկած պատառիկները փնտրելիս բնավ չպետք է մոռանանք նաև հայ հին նոտագրության՝ խազերի վերաբերյալ նրա ավելի քան քսան տարվա հետազոտությունների արդյունքների հայտնաբերումը։

Կոմիտասի բազմաբեղուն գործունեության ամեն մի ասպարեզ առանձին ուսումնասիրության նյութ կարող է դառնալ. բոլորի վրա նույնիսկ հակիրճ կանգ առնելը դարձյալ դուրս է մեկ հոդվածի հնարավորության սահմաններից։ Բավականանանք նշելով, որ մյուս բնագավառների նվաճումները ևս շատ բանով նման են ասվածներին, արդյունք են մի կողմից՝ Կոմիտասի բնական արտակարգ օժտվածության, մյուս կողմից՝ այն բանի, որ նա խորապես ըմբռնում էր արվեստագետի և քաղաքացու հառաջադիմական դերը։ Այս տեսակետից առանձնապես բնութագրական է հրապարակախոս-Կոմիտասը։ Այդ են վկայում նրա ելույթները, որ երբեմն տպագրվել և դրա շնորհիվ են մեզ հասել. թե՛ նիհիլիստական, անհեռանկար կոսմոպոլիտության դեմ Նրա Հայն ունի ինքնուրույն երաժշտություն ցայտուն ու խորապես հիմնավորված ելույթը, թե՛ Կ. Պոլսի գրական բազմամարդ ասուլիսներից մեկում նրա

---

* Պատահաբար սխալ չհասկանալու նպատակով շեշտենք, որ այս ասելով հայ ժողովրդական երաժշտությունը որևէ չափով չենք գերադասում որևէ այլ ժողովրդի երաժշտությունից։ Միջազգային ֆոլկլորի գեղարվեստա-գիտական արժեքն այնքանով մեծ է, որքան նա լայնորեն է ընդգրկում տարբեր ժողովուրդների ստեղծագործությունը, պայմանով, եթե այդ ստեղծագործությունները ներկայացված են ազգային նույնքան ցայտուն ինքնատիպություն ունեցող, իրոք բարձր գեղարվեստական նմուշներով, որպիսիք Կոմիտասի ներկայացրածներն են։



արտասանած եզրափակման խոսքը, որ մեր ժամանակակից տերմինոլոգիայով կարող ենք վերնագրել՝ Երեսներս դեպի գյուղ, դեպի ժողովուրդ, թե՛ նրա ասույթները մանկավարժության հասարակական նշանակության ու խնդիրների մասին— բոլորը լի են ժողովուրդների մշակույթի գնահատման, հայ ժողովրդի ազգային ինքնաճանաչման, ընդհանրապես ժողովրդական գործի կարևորության խոր գիտակցությամբ և ժամանակին իրոք մեծ դեր են կատարել։

Կոմպոզիտորական և երաժշտական-կատարողական արվեստի նրբությունների, տեսական ու պատմական երաժշտագիտության մեջ այդքան խորացած՝ այսպես թե այնպես նաև եկեղեցու հետ կապված անցյալի գործչին հեշտ էր պատկերացնել որպես ժողովրդի՝ լայն առումով առօրյա կյանքից, նրա անմիջական կենսական շահերից կտրված մի անձնավորություն։ Բնավ այդպիսին չէր Կոմիտասը։ Նրա գործունեությունն ամբողջովին ներթափանցված էր մեկ հիմնական գաղափարով— մեծարել աշխատավոր ժողովրդին, ցույց տալ նրա ստեղծագործական կարողությունը և դրանով հաստատել ազատ ու ինքնուրույն կյանքի նրա իրավունքը։ Եվ, պատահական չէ, որ թե՛ ստեղծագործության մեջ, թե՛ լուսավորական աշխատանքում Կոմիտասը հանդես էր գալիս որպես իսկական հայրենասեր. չլինելով քաղաքական գործիչ, հայ ժողովրդի ազգային ազատագրության հարցում ևս նա ուներ առաջադիմական ռեալ հայացքներ։ Զգտելով հնարավորին չափ լայնորեն ցուցադրել հայ ժողովրդի հոգեկան գանձերը Եվրոպայում և այդ միջոցով նրա համար յուրովի իրավունք նվաճել ազատ ու ինքնուրույն գոյության, նա, միաժամանակ, գրում էր. «Զպետք է խաբվենք Եվրոպայի խոստումնալից խաբկանքներեն» և Խ. Աբովյանի, Մ. Նալբանդյանի ու Հ. Թումանյանի նման հայերի ազատագրության հույսը կապում էր ռուս ժողովրդի սոցիալական հեղափոխության հետ. «...մեր փրկությունը կռելու և կոփելու ենք Փետպուրկի պարիսպներու դռներուն առաջ»,— գրել է նա Արշակ Չոպանյանին ուղղված նամակում։

Կոմիտաս անունը հայ ժողովրդի համար դարձել է ամենանվիրական անուններից մեկը։ Կոմիտասի՝ այնքան խոր, առանձնապես հուզական ընկալման մեջ իրավամբ որոշակի դեր է կատարում արևմտահայ մտավորականության մյուս ականավոր ներկայացուցիչների հետ նաև իր ողբերգական ճակատագիրը, որի հետևանքով արհեստականորեն, այնքան վաղաժամ ընդհատվեց չափազանց կենսունակ ու շնորհաշատ այդ անձնավորության գործունեությունը. սակայն պատմական ահավոր ոճրագործության դեմ ընդվզումի բնական զգացումը չէ միայն, որ ստեղծել է այդ նվիրականությունը. հարազատ ժողովրդի մշակույթի ճանաչման, գնահատման ու զարգացման ասպարեզում Կոմիտասի կատարած մեծ գործի խոր գիտակցումն է դրա հիմքը։

Կոմիտասի ժառանգությունը ո՛չ միայն պատմական, այլև արդիական մեծ նշանակություն ունի։

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ

Ռ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

## ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԱՐՎԵՍՏԸ

*Վ. Ի. Լենինի բազմաբեղուն գործունեության մեջ առաջնային տեղ է գրավում կապիտալիզմի կործանման հենակետի՝ մարքսիստական նոր տիպի հեղափոխական կուսակցության ստեղծումը, որը, մարդկության հազարամյա պատմության մի չնչին ժամանակահատվածում, պրոլետարական հեղափոխականների փոքրիկ խմբից արագորեն աճեց, հասակ առավ և դարձավ ռուսաստանյան հասարակական կյանքի քաղաքական հզորագույն ուժը, աշխատավոր միլիոնների ավանգարդը։*

*Ամբարելով հեղափոխական բոլոր սերունդների կողմից կուտակած ազատության ու հավասարության ամենաազնիվ, արդարացի ու հումանիստական ձգտումները և իմաստավորելով աշխատավորների դարավոր հեղափոխական պայքարի պատմական փորձը, կոմունիստների լենինյան կուսակցությունը պրոլետարիատին զինեց սոցիալիստական հեղափոխության, հին աշխարհը կործանելու ու նրա փլատակների վրա կոմունիստական անդասակարգ հասարակարգ կառուցելու գիտական ծրագրով, իսկ այժմ էլ ուղի է հարթում երջանկավետ կոմունիզմի համար մեր մոլորակի վրա։*

*Նոր տիպի մարքսիստական կուսակցության լենինյան ուսմունքի մեջ ուրույն տեղ է գրավում* ղեկավարման արվեստը: *Ընդսմին, դրա նշանակությունն առանձնապես մեծ է, որովհետև, ի տարբերություն նախորդ հասարակարգերի, կապիտալիզմի ոչնչացումը և կոմունիստական հասարակությամբ նրա փոխարկումը տեղի է ունենում ոչ թե տարերայնորեն, այլ ժողովրդական մասսաների և նրանց առաջնորդ հեղափոխական կուսակցությունների գիտակցական, կազմակերպված ու պլանաչափ գործունեության շնորհիվ, որում և դրսևորվում է կուսակցության ղեկավար ֆունկցիան։*

*Վ. Ի. Լենինը երկրի ղեկավարումը համարում էր դժվարագույն ու բարդ արվեստ և գտնում, որ առանց այդ արվեստի բոլոր գաղտնիքներին տիրապետելու, կուսակցությունը չի կարող իրականացնել ժողովրդական մասսաների առաջնորդի, ստեղծագործական աշխատանքը կազմակերպողի իր դերը։*



*Ղեկավարումը, որպես արվեստ, ընդգրկում է կուսակցության ու ժողովրդական մասսաների գործունեության բոլոր ոլորտները և բաղկացած է բազմաթիվ տարրերից։ Այն սկսվում է կուսակցության քաղաքական ստրատեգիայի, նրա գլխավոր գծի ու տակտիկայի մշակումից, ամեն մի պատմական էտապում հեղափոխական վերափոխումների շղթայի հիմնական օղակի սահմանումից։ Ղեկավարել՝ նշանակում է գտնել դեպի հիմնական նպատակը տանող ճիշտ ուղին, սահմանել նրան հասնելու եղանակները, որոշել պայքարի ու աշխատանքի մեթոդները, տնտեսական, քաղաքական, գաղափարական միջոցներն ու միջոցառումները, դասավորել հասարակական կյանքի առաջմղիչ հիմնական և օժանդակ ուժերը, մոբիլիզացնել և կազմակերպել ժողովրդական մասսաների հեղափոխական ու աշխատանքային գործունեությունը և այլն։ Անդրադառնալով ղեկավարման արվեստին, Լենինն ասել է. «Բավական չէ հեղափոխական և սոցիալիզմի կողմնակից կամ կոմունիստ լինել ընդհանրապես։ Հարկավոր է կարողանալ յուրաքանչյուր տվյալ մոմենտում գտնել շղթայի այն հատուկ օղակը, որից պետք է ամբողջ ուժով բռնել՝ ամբողջ շղթան ձեռքին պահելու և հաջորդ օղակին անցնելը հաստատուն կերպով նախապատրաստելու համար, ընդ որում օղակների կարգը, նրանց ձևը, նրանց կապակցումը, նրանց տարբերումն իրարից դեպքերի պատմական շղթայի մեջ՝ այնքան պարզ և այնքան հասարակ չեն, ինչպես սովորական, դարբնի շղթայի մեջ» (Երկեր, հատ. 27, էջ 329—330)։*

*Ղեկավարման արվեստին տիրապետելու հիմնական պայմանը և, ընդհանրապես, կոմունիստական կուսակցության հեղափոխական գործունեության հաջողության գրավականը* հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների խորապես ըմբռնումն ու գիտակցումն է, որի միակ զենքը մարքս–լենինյան տեսությունն է, նրա ստեղծագործական կիրառումն ու զարգացումը, նրա անաղարտության պահպանումը: *Լենինը կուսակցության անդամներին, մասնավորապես ղեկավարներին շարունակ կոչ էր անում հեղափոխական պրակտիկ աշխատանքի հետ միասին, սիստեմատիկորեն զբաղվել տեսության հարցերով, ստեղծագործորեն զարգացնել այն։ Դոգմատիկ մոտեցումը տեսության հարցերին նա համարում էր կործանարար և պահանջում՝ պահպանել ու ամրապնդել տեսության և պրակտիկայի անխզելի կապը, որովհետև տեսական հարցերի ճիշտ լուծման երաշխիքը հեղափոխական պրակտիկայի իմացումն է, նրա ընդհանրացումը։ Տեսական ամեն մի ընդհանրացում, որը չի համապատասխանում պրակտիկային, հակասում է նրան, հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափություններին, ոչ միայն դառնում է սխոլաստիկա, այլև՝ վտանգավոր կուսակցության ճիշտ ղեկավարման համար, կոմունիզմի գործի համար։*

*Լենինն անողոք և անզիջում էր հեղափոխական տեսության աղավաղումների, այն ռևիզիայի ենթարկողների, աջ և «ձախ» օպորտունիստների նկատմամբ։ Մարքս-լենինյան տեսության անաղարտության պաշտպանությունը կուսակցության հեղափոխական գործունեության և ճիշտ ղեկավարության հաջողությունների հիմքերի հիմքն է։ Առանց դրան կուսակցությունը չի կարող կատարել սովետական ժողովրդի առաջնորդի ու ղեկավարի իր պատմական դերը։*

*Կոմունիստական շինարարության արդի էտապում, երբ հասարակական կյանքի զարգացումն անհամեմատ բարդացել է, հետևաբար և ավելի դժվարացել է ղեկավարման արվեստը, երբ միջազգային կոմունիստական շարժման մեջ, մասնավորապես չինական կոմունիստների մաոյական ղեկավարու-*

թյան կողմից կատաղի հարձակումներ են կատարվում լենինիզմի դեմ, ընդսմին, այն հասցնելով հակասովետիզմի պետական քաղաքականության աստիճանի, անզիջում պայքարը հանուն մարքս-լենինյան տեսության անաղարտության, բախտորոշ նշանակություն է ստացել կոմունիստական շարժման համար ամբողջ աշխարհում։

Կուսակցության ճիշտ ղեկավարության մյուս կարևոր երաշխիքն ու գրավականը Լենինը համարում էր կուսակցական և պետական կյանքի ղեկավարման գերագույն սկզբունքի՝ կոլեկտիվության հետևողական կիրառումը։ Նա նշում էր, որ կուսակցությունը չի կարող կատարել իր առաջնորդի ու ղեկավարի դերը, «առանց գործը վարելու որոշ ձևեր և կանոններ կոլեկտիվորեն մշակելու»։ Ղեկավարման կոլեկտիվությունը քաղաքական ճիշտ գիծ մշակելու և պայքարի առավել նպատակահարմար և ներգործուն մեթոդներ ընտրելու վճռական երաշխիքներից մեկն է, քանի որ անընդհատ բարդացող հասարակական հարաբերություններում երևույթների զարգացման տենդենցների, նրանց ներքին կապի ըմբռնումը, բոլոր մինուսների ու պլյուսների ճշգրտորեն հաշվառումը և դրանց հիման վրա ճիշտ որոշումներ ընդունելը հնարավոր է միայն կոլեկտիվ փորձով և իմաստությամբ։ Ընդսմին, ղեկավարման կոլեկտիվության սկզբունքի էությունը Լենինը միայն կուսակցական ղեկավար օրգաններում հարցերի կոլեկտիվ քննությունը չէր համարում։ Նա մեծ նշանակություն էր տալիս այդ բնագավառում կուսակցության շարքային անդամների առաջարկություններին ու փորձին։ IX համագումարին նախապատրաստվելու կապակցությամբ կուսակցության անդամներին հղած նամակում Լենինը գրել է. «Պետք է համագումար բերել լավ մտածված և ուշադրությամբ, կուսակցության բոլոր անդամների ընդհանուր աշխատանքով, ընդհանուր ջանքերով մշակված տնտեսական շինարարության գործնական փորձը» (Երկեր, հատ. 30, էջ 516)։

Կառավարող կուսակցության ղեկավար օրգանների կողմից ճիշտ որոշումների ընդունումն առանձնապես սկզբունքային նշանակություն ունի, քանի որ դրանք դառնում են պարտադիր ոչ միայն կուսակցության, այլև ողջ ժողովրդի, ինչպես Լենինն էր ասում, «ամբողջ հանրապետության համար»։ Այդ կապակցությամբ որոշումների կոլեկտիվ քննարկումների գործում նա մեծ դեր էր հատկացնում նաև ժողովրդական լայն մասսաների մասնակցությանը, նրանց փորձի, մտահղացումների, իղձերի ունկնդրումին։ 1921 թ. սկզբին, երբ կուսակցության Կենտկոմը նախապատրաստում էր պարենմասնատրումը պարենհարկով փոխարինելու տնտեսական քաղաքականության սկզբունքները, Լենինն անձամբ ընդունեց հանրապետության համարյա թե բոլոր նահանգների գյուղացիական ներկայացուցիչներին՝ իմանալու նրանց կարծիքը, առաջարկություններն ու դիտողությունները՝ որոշումը վերջնականապես ձևակերպելու համար, որին նա շատ կարևոր նշանակություն էր տալիս։

Այն բանից հետո, երբ մշակված է քաղաքականության ընդհանուր գիծը և սահմանված են նրա իրականացման հիմնական ուղիները, կուսակցության ղեկավարության հերթական խնդիրը Լենինը համարում էր նրա ծրագրի ու տակտիկայի ճշտության մեջ ժողովրդական լայն մասսաներին համոզելը, կուսակցության լոզունգները նրանց սեփականությունը դարձնելը, որովհետև, վերջին հաշվով, ժողովրդական լայն մասսաները (կուսակցական թե անկուսակցական, միևնույնն է) մոբիլիզացվում և պայքարում են որևէ քաղաքականության կենսագործման համար, երբ համոզվում են, որ դա բխում է իրենց



շահերից, արտահայտում է իրենց իղձերը, պահանջներն ու նպատակները։ «Ժողովրդական մասսայի մեջ մենք, այնուամենայնիվ, մի կաթիլ ենք ծովում, և մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ,— գրել է Լենինը,— երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը։ Առանց դրան կոմունիստական կուսակցությունը չի կարող առաջնորդել պրոլետարիատին, իսկ պրոլետարիատը չի կարող իր ետևից տանել մասսաներին, և ամբողջ մեքենան կքանդվի» (Երկեր, հատ. 33, էջ 360—361)։

Որպեսզի կուսակցությունը կարողանա մշակել մասսաների շահերից բխող քաղաքականություն և նրա ճշտության մեջ համոզի մասսաներին, նա պետք է կարողանա կապվել, մերձենալ, Լենինի արտահայտությամբ, որոշ իմաստով անգամ ձուլվել նրանց հետ։ Կուսակցությունը կկորցնի ավանգարդի ու ղեկավարի իր դերը, եթե պատնեշավորվի մասսաներից, հանդես բերի աղանդավորական գործելակերպ։ Նա ոչ միայն պետք է սովորեցնի մասսաներին, այլև սովորի նրանցից։ «Ավանգարդը միայն այն ժամանակ է կատարում ավանգարդի դերը,— գրել է Լենինը,— երբ նա կարողանում է չկտրվել իր ղեկավարած մասսայից, այլ իսկապես առաջ տանել ամբողջ մասսային։ Առանց գործունեության ամենատարբեր ասպարեզներում ոչ կոմունիստների հետ դաշնակցելու խոսք անգամ չի կարող լինել որևէ հաջող կոմունիստական շինարարության մասին» (Երկեր, հատ. 33, էջ 266—267)։

«Ձուլվելով» մասսաների հետ, կուսակցությունը, դրանով հանդերձ, չպետք է օպորտունիստական հարմարվողականություն ցուցաբերի մասսաների հետադիմական, նրանց քաղքենիական տրամադրությունների նկատմամբ, որ հաճախ անխուսափելիորեն դրսևորում են նրանք։ Նա պետք է ընթանա մասսաների առջևից և բացահայտի այդ տրամադրությունները, վճռականորեն պայքարի դրանց դեմ։ Կուսակցությունը մասսաների հետ իր կապը պահպանում և նրանց նկատմամբ իր ղեկավարությունն իրականացնում է սովետների, արհմիությունների, երիտասարդական կազմակերպությունների, կոոպերատիվ ընկերությունների և հասարակական այլ կազմակերպությունների միջոցով, որոնցում միավորվում են տարբեր մասնագիտության աշխատողներ։ Ժողովրդական լայն մասսաների հետ կուսակցության անխզելի կապի ամրապնդումը, նրանց իր շուրջը համախմբելու հմտությունը կուսակցական ղեկավարության հաջողության գրավականն է, կուսակցության ուժի և անպարտելիության աղբյուրը։

Մասսաների հետ մշտական կապի պահպանումն ունի նաև մի այլ նշանակություն։ Այն հնարավորություն է տալիս ժամանակին բացահայտելու նրանց տրամադրության ու դասակարգային ուժերի հարաբերակցության մեջ կատարվող փոփոխությունները և դրանց (ինչպես և ընդհանրապես փոփոխվող իրադրությանը) համապատասխան ժամանակին փոխել լոզունգները, գործողության ծրագիրը և այլն։ Դա շատ կարևոր է, որովհետև, ինչպես Լենինն էր նշում, «կուսակցության կողմից մասսաներին առաջադրվող յուրաքանչյուր լոզունգ կարող է քարանալ, մեռած դառնալ, պահել իր ուժը շատերի համար նույնիսկ այն ժամանակ, երբ փոխվել են այդ լոզունգի անհրաժեշտությունն ստեղծող պայմանները։ Այդ չարիքն անխուսափելի է և առանց դրա դեմ կռվել և դրան հաղթել սովորելու, չի կարելի ապահովել կուսակցության ճիշտ քաղաքականությունը» (Երկեր, հատ. 28, էջ 232)։ Լոզունգների ժամանակին փոփոխման կլասիկ օրինակներ էին VIII համագումարի որոշումը միջակ գյուղացիության չեզոքության քաղաքականությունից նրա հետ ամուր դաշինք կնքելու քաղաքականությանն անցնելը, X համագումարի որո-

շումը՝ պարենմասնատրումից պարենհարկին, կամ ռազմական կոմունիզմի քաղաքականությունից նոր տնտեսական քաղաքականությանն անցնելը և այլն։

Ամենալավ, ժամանակի ոգուն և իրադրությանը համապատասխանող լոզունգներն ու որոշումներն անգամ, նույնիսկ մասսաների սեփականությունը դառնալուց հետո էլ, բացի քարանալուց, կարող են վերածվել նաև թղթի կտորների, մասսաների աչքում հեղինակազրկել կուսակցությանը, խարխլել նրանց վստահությունը, առաջ բերել անտարբերություն և պասիվություն, եթե ժամանակին չեն կենսագործվում։ Այդ պատճառով էլ կուսակցության քաղաքականության ճշտության մեջ մասսաներին համոզելուն զուգընթաց, կուսակցության ղեկավարության հաջորդ աստիճանը և գլխավոր խնդիրը դառնում է կազմակերպչական աշխատանքը, կուսակցական բոլոր օրգանների և օղակների, պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների աշխատանքի կազմակերպումը՝ հանուն մշակված քաղաքականության կենսագործման։

Անդրադառնալով կազմակերպչական աշխատանքի դերին ու նշանակությանը, Լենինը գրել է. «Պետք է մտածել, որ հաջող կառավարելու համար, բացի համոզել կարողանալուց... անհրաժեշտ է գործնականապես կազմակերպելու կարողություն։ Սա ամենադժվար խնդիրն է, որովհետև գործը վերաբերում է տասնյակ և տասնյակ միլիոնավոր մարդկանց կյանքի ամենախոր, տնտեսական հիմքերը նոր ձևով կազմակերպելուն։ Եվ այդ ամենաշնորհակալ խնդիրն է, որովհետև միայն նրա լուծումից հետո (գլխավոր և հիմնական գծերով) կարելի է ասել, որ Ռուսաստանը դարձել է ոչ միայն սովետական, այլև սոցիալիստական հանրապետություն» (Երկեր, հատ. 27, էջ 288)։ Պրակտիկան անվերապահորեն հաստատել է այն ճշմարտությունը, որ կուսակցության անխտիր բոլոր որոշումների և միջոցառումների իրականացման հաջողության գրավականներից մեկը կուսակցական ապարատի բոլոր օղակների, բոլոր ղեկավար օրգանների մարտունակությունն ու գործարարությունն է, որը միաժամանակ կուսակցության ղեկավար դերի ապահովման և բարձրացման հիմնական երաշխիքներից է։

Բայց կուսակցական բոլոր ղեկավար օրգաններն էլ անուժ և անզոր կդառնան, եթե լավ չգործեն կուսակցության հիմնաքարը հանդիսացող սկզբնական կազմակերպությունները, քանի որ նրանք են մասսաների շրջանում և նրանց հետ անմիջական աշխատանք կատարողները, նրանց կուսակցության քաղաքականության ճշտության մեջ համոզողները, նրա կենսագործման համար մասսաներին կազմակերպողները։ Սկզբնական կազմակերպությունների մարտունակությունն ու գործարարությունը կուսակցության ղեկավար դերի ապահովման և բարձրացման ելակետն է։

Կառավարող կուսակցության ղեկավարության հաջողության գրավականներից մեկը Լենինը համարում էր կուսակցական ապարատի և սովետական պետական օրգանների ու հասարակական կազմակերպությունների ճիշտ փոխհարաբերության սահմանումը, նրանց համագործակցության ուժեղացումը։ Կուսակցությունը, նշում էր նա, պետք է ղեկավարի, ուղղություն տա պրոլետարիատի դիկտատուրայի բոլոր լծակներին և ոչ թե նրանց ֆունկցիաներն իր վրա վերցնի, որպիսի ցավից, ի դեպ, մինչև այժմ էլ դեռ չեն ազատվել շատ կուսակցական օրգաններ։ Անդրադառնալով այդ սկզբունքին, կուսակցության VIII համագումարը կազմակերպական հարցերի վերաբերյալ բանաձևում գրել



է. «Շփոթել կուսակցական կոլեկտիվների ֆունկցիաները պետական օրգանների, այն է՝ սովետների ֆունկցիաների հետ, ոչ մի դեպքում հնարավոր չէ... Իր որոշումները կուսակցությունը պետք է անցկացնի սովետական օրգանների միջոցով, սովետների սահմանադրության շրջանակներում։ Կուսակցությունը ջանում է ղեկավարել սովետների գործունեությունը, բայց չփոխարինել նրանց» («ՍՄԿԿ-ն... բանաձևերում ու որոշումներում», մաս 1, 1954, էջ 565)։ Նույն սկզբունքը կուսակցությունը կիրառում է պրոլետարիատի դիկտատուրայի բոլոր մյուս լծակների նկատմամբ։

Ղեկավարման արվեստի մեջ ամենաբարդ և ամենակարևոր սկզբունքներից մեկը մարդկանց ճիշտ ընտրությունն ու դասավորումն է, կադրերի անձնական պատասխանատվության սահմանումը հանձնարարված աշխատանքի համար։ Այլ կերպ չի էլ կարող լինել, որովհետև, վերջին հաշվով, հարցերը գործնականորեն լուծում են մարդիկ, նրանք են քաղաքական ու կազմակերպչական աշխատանք կատարողները, գործնականում որոշումների ու դեկրետների կենսագործումը կազմակերպողները։ Մարդկանց ճիշտ ընտրությունն ըստ նրանց գործնական ու քաղաքական հատկանիշների, ըստ մասսաների շրջանում ունեցած նրանց հեղինակության, կարելի է ասել վճռող նշանակություն ունի, որովհետև որոշումների, լոզունգների, աշխատանքի քիչ թե շատ հաստատուն ձևերի սահմանումից հետո «գործնական աշխատանքի անցումը կապվում է միանձնյա ղեկավարության հետ, որպես մի սիստեմի, որն ամենից ավելի է ապահովում մարդկային ընդունակությունների լավագույն օգտագործումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 389—390)։ Դժբախտաբար, այս բնագավառում ևս, գուցե ամենից շատ, ամեն ինչ բարվոք չէ։ Կադրերի ընտրության լենինյան սկզբունքների անտեսման ինչքան ասես փաստեր կան կյանքում։ Ընդսմին, խոսքը միայն կադրերի անհաջող ընտրությանը չի վերաբերվում, այլև նրան, որ նրանցից շատերը պատշաճ կերպով չեն կատարում իրենց պարտականությունները և, ցավոք սրտի, պատասխանատվություն չեն կրում, իսկ գործը լրիվ ձախողելուց հետո միայն «տեղաշարժերի» են ենթարկվում, «ազատվում, այլ աշխատանքի» անցնելու կապակցությամբ։

Կուսակցությանն ու ժողովրդին ղեկավարելու լենինյան արվեստի մեջ գերսկզբունքային նշանակություն ունի երկաթյա, գիտակցական կարգապահությունը, բոլորի համար՝ անխտիր և պարտադիր կերպով։ Լենինը առանց կարգապահության անկարելի էր համարում բոլշևիկների կողմից ցարիզմի ու բուրժուազիայի տապալումը, իշխանության գրավումն ու պահպանումը, սոցիալիստական հիմունքներով հասարակության վերափոխումը։ Կուսակցության շարքերի կարգապահությունը խարսխվում է նրա նպատակների, հայացքների ու գործողությունների միասնության վրա։ Այն պահպանվում և ամրապնդվում է կուսակցության անդամների գիտակցականությամբ, կոմունիզմի գաղափարներին նրանց նվիրվածությամբ, այն իրականացնելու համար մղվող պայքարում նրանց տոկունությամբ, անձնազոհությամբ ու հերոսությամբ։ Կարգապահության թուլացումն անխուսափելիորեն տանում է դեպի կուսակցության շարքերի միասնության խախտում, մասսաների առաջ նրա հեղինակազրկում, անհնար է դարձնում առաջնորդի ու ղեկավարի ֆունկցիայի իրականացումը և, վերջիվերջո, նրան տանում է դեպի կազմալուծում ու կործանում։ Լենինը կուսակցության կարգապահությունը խախտողներին համարում էր բուրժուազիայի գործակիցներ, կուսակցական տոմսով քողարկված կոմունիզմի թշնամիներ։ «Ով թեկուզ չնչին չափով թուլացնում է պրոլետա-

րիատի կուսակցության երկաթե կարգապահությունը (առանձնապես նրա դիկտատուրայի ժամանակ), նա փաստորեն օգնում է բուրժուազիային՝ ընդդեմ պրոլետարիատի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 36)։

Կուսակցության մեջ կարգապահության հետ միասին Լենինը սկզբունքային նշանակություն էր տալիս աշխատանքային կարգապահության ստեղծմանը, այն համարելով ժողովրդական մասսաներին սոցիալիստական հասարակության կառուցման գործի մեջ ակտիվորեն ներգրավելու, նրանց գործունեությանը գիտակցված բնույթ տալու վճռական պայմաններից մեկը։ Իր վրա վերցնել ղեկավարման ֆունկցիան, բայց չպայքարել և չստեղծել մասսաների գործունեության բոլոր ոլորտներում երկաթյա գիտակցական աշխատանքային և հասարակական կարգապահություն, նշանակում է կոմունիստական հասարակության կառուցման գործը հենց սկզբից դատապարտել անհաջողության։

Ղեկավարման լենինյան արվեստի խիստ կենսական տարրերից են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որոնք խոշոր դեր են խաղում կուսակցության ղեկավար դիրքի ապահովման և բարելավման գործում։ Սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը այն հատու զենքն են, որոնց միջոցով նա ժամանակին բացահայտում է իր քաղաքականության մեջ և պրակտիկ աշխատանքներում դրսևորվող թերությունններն ու բացերը, սխալներն ու շեղումները և վերացնում դրանք։ Սեփական սխալների ընդունումն ու քննադատությունը, ընդ որում, հրապարակորեն՝ ժողովրդական լայն մասսաների առաջ, ավելի է կոփում և ամրապնդում կուսակցությունը, բարձրացնում նրա հեղինակությունը, ուժեղացնում կապերը նրա հետ, նպաստում ղեկավարման բարելավմանը։ «Քաղաքական կուսակցության վերաբերմունքը դեպի իր սխալները,— գրել է Լենինը,— կուսակցության լրջության և իր դասակարգի ու աշխատավոր մասսաների վերաբերմամբ իր պարտականություններն իրապես կատարելու ամենակարևոր և ամենաճիշտ չափանիշներից մեկն է։ Բացահայտորեն ընդունել սխալը, բացահայտել նրա պատճառները, վերլուծել այդ սխալը ծնող իրադրությունը, ուշադրությամբ քննարկել սխալն ուղղելու միջոցները,— ահա դա է լուրջ կուսակցության հատկանիշը, ահա դա է դասակարգի, ապա նաև մասսայի դաստիարակումն ու ուսուցումը» (Երկեր, հատ. 31, էջ 52)։

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կոմունիստական կուսակցությունների ներքին զարգացման օբյեկտիվ օրինաչափություններից են, որոնց կենսագործմամբ ավելի է ուժեղանում կուսակցությունը։ «Մինչև այժմ կործանված բոլոր հեղափոխական կուսակցությունները կործանվել են այն բանից, որ մեծամտել են և չեն կարողացել տեսնել, թե ինչում է իրենց ուժը, և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին։ Իսկ մենք չենք կործանվի,— ասել է Լենինը,— որովհետև չենք վախենում խոսել մեր թուլությունների մասին, և կսովորենք հաղթահարել այդ թուլությունները» (Երկեր, հատ. 33, էջ 367)։

Վերջապես, ղեկավարման լենինյան արվեստում գերսկզբունքային նշանակություն ունի կուսակցության շարքերի, ինչպես նաև կուսակցության ու ժողովրդի միասնության պահպանումն ու ամրապնդումը։

Կուսակցության միասնությունը՝ նրա կազմակերպությունների և ղեկավար օրգանների, կուսակցության բոլոր անդամների միասնական կամքի ու գործողությունների մարմնավորումն է՝ նրա գործունեության պրոցեսում։ Այն խարսխվում և պահպանվում է նրա ծրագրի, ստրատեգիայի ու տակտիկայի,



հայացքների ու գաղափարների, նպատակի ու շահերի, կազմակերպական սկզբունքների և կարգապահության ընդհանրության վրա։ Միասնությունը բացառում է կուսակցության ներսում խմբերի ու ֆրակցիաների գոյությունը, քանի որ դրանք անխուսափելիորեն տանում են դեպի կուսակցության պառակտում, նրա կործանում և, որպես այդ բոլորի հետևանք, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ուժերի ջլատում։ Չպետք է մոռանալ, որ կառավարող կուսակցության միասնությունը ժողովրդի համախմբվածության գլխավոր երաշխիքն է։

Ջանդրադառնալով կուսակցության ու ժողովրդի միասնության ստեղծման բազմաթիվ ասպեկտներին, անհրաժեշտ ենք համարում նշել միայն մի հանգամանք. դա կուսակցության անդամների անձնական օրինակի հարցն է աշխատանքում և պայքարում, ժողովրդական լայն մասսաների շրջանում վստահության ստեղծումը։ Լենինը գրում էր, որ կուսակցությունն իր անձնական օրինակով կոչված է բարձրացնելու կուսակցության հեղինակությունը և պահանջում էր անազնիվներին վտարել մեր շարքերից։ Մասսաներն այժմ առավել դյուրազգաց են կուսակցական տոմսավոր անազնիվների ու կարիերիստների, սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների, պաշտոնները չարաշահողների, սոցիալիստական սեփականությունը հափշտակողների ու վատնողների նկատմամբ, որոնք, դժբախտաբար, դեռ քիչ չեն։ Կուսակցության ղեկավար դերը բարձրացնելու համար պետք է կուսակցությունը մաքրել նման տարրերից։

Այսպիսիք են, ընդհանուր գծերով, կուսակցության ու ժողովրդի ղեկավարման լենինյան արվեստի մի քանի ասպեկտները, որոնց դերն ու նշանակությունը գնալով ավելի է մեծանում կոմունիստական շինարարության արդի էտապում, որը թելադրվում է կյանքի նոր հանգամանքներով։

Ամենից առաջ այն պայմանավորվում է կոմունիստական հասարակության բարձրագույն փուլի կառուցման դժվարություններով ու բարդություններով։ Կոմունիզմի կառուցման ուղու հարթումը ՍՄԿԿ-ից պահանջում է ավելի մանրակրկիտ և բազմակողմանիորեն հաշվի առնել միջազգային զարգացման և ներքին կյանքում տեղի ունեցող փոփոխությունները, ճշգրտորեն կանխատեսել երևույթների զարգացման ընթացքն ու ապագան, ակտիվորեն ներգործել հասարակության զարգացման առաջընթացի վրա։

Երկրորդ, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում վիթխարիորեն աճում են տնտեսական ու կուլտուրական շինարարության մասշտաբները, դա, բնականաբար, պահանջում է զգալիորեն բարձրացնել կուսակցության քաղաքական ու կազմակերպական ղեկավարման մակարդակը, այն դարձնել ավելի ճկուն, ներգործուն և որակյալ։

Երրորդ, կոմունիստական շինարարության պրոցեսում տեղի է ունենում ժողովրդական լայն զանգվածների ստեղծագործական ակտիվության հետագա վերելք, ընդ որում, միլիոնավոր նոր աշխատավորներ են ներգրավվում ոչ միայն տնտեսական ու կուլտուրական շինարարության ոլորտը, այլև պետական գործունեության և արտադրության կառավարման մեջ։ Ճիշտ հունով տանել այդ ակտիվությունը և գլխավորել այն, հնարավոր է միայն կուսակցության ղեկավար դերի բարձրացմամբ։

Չորրորդ, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում ավելի է զարգանում ու ծավալվում սոցիալիստական դեմոկրատիան, կատարելագործվում հասարակության քաղաքական կազմակերպման սիստեմը, մեծանում և բազմա-

ցան են դառնում հասարակական կազմակերպությունների դերն ու ֆունկցիաները։ Կուսակցությունը միայն իր ղեկավար դերի բարձրացմամբ կարող է ակտիվորեն ներգործել այդ պրոցեսների վրա, գիտականորեն մշակել և սահմանել դրանց գործունեության մեթոդներն ու եղանակները։

Հինգերորդ, բազմազգ և վիթխարի այնպիսի մի երկրում, ինչպիսին է ՍՍՀՄ-ը, կոմունիզմի հաջող կառուցումը հնարավոր է ազգային հանրապետությունների և տեղական կազմակերպությունների իրավունքների և ֆունկցիաների ընդլայնմամբ, նրանց բոլորի ստեղծագործական ակտիվության բարձրացմամբ։ Այդ բնագավառում ցենտրալիզմի և դեմոկրատիզմի հարմոնիկ զուգորդումը ճկուն ղեկավարման ապացույց է։

Վեցերորդ, կոմունիզմի կառուցման պրոցեսում ստեղծվում է նրա ապագա քաղաքացին, նոր մարդն իր նոր հատկանիշներով։ Դա անհրաժեշտ է դարձնում զգալիորեն բարելավել աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, որի հաջողության գրավականը նույնպես կուսակցության ղեկավար դերի բարձրացումն է։

Կուսակցության ղեկավար դերի բարձրացման ու աճման օբյեկտիվ պայմանները, սակայն, ավտոմատիկորեն չեն կարող հասցնել ղեկավարման մակարդակի բարձրացմանը։ Որպեսզի այդ պրոցեսը տեղի ունենա, անհրաժեշտ է ամենայն հետևողականությամբ կենսագործել ղեկավարման լենինյան արվեստի բոլոր դրույթները և ստեղծագործորեն զարգացնել ու մշակել դրանք։

Ավելի քան 50 տարի է, ինչ ՍՄԿԿ-ն, որն իր շարքերում այժմ ունի գրեթե 14 միլիոն անդամ, գլխավորում ու ղեկավարում է սովետական ժողովրդի հերոսական պայքարը կոմունիստական անդասակարգ հասարակության կառուցման համար։ Պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ուղիների հարթումը, անկասկած, դժվարին ու բարդ գործ է։ ՍՄԿԿ-ն հաջողությամբ է լուծել սոցիալիզմի կառուցման գործը։ Նրա ղեկավարությամբ են կազմվել և կենսագործվել սոցիալիստական ու կոմունիստական մեծ վերափոխումների պլանները մեր երկրում։ Նա է մշակել և իրականացրել ՍՍՀՄ արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը և կազմակերպել սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը։ Այժմ լենինյան կուսակցությունը սովետական ժողովրդին առաջնորդում է դեպի կոմունիզմ։ Կասկածից վեր է, որ ՍՄԿԿ-ն հաջող կիրագործի նաև իր պատմական այդ միսիան։ Դրա գրավականը նրա գաղափարական և կազմակերպական համախմբվածությունը, ժողովրդական մասսաների հետ ունեցած նրա սերտ կապը, նրանց շահերի ու իղձերի արտահայտիչ լինելն է։

Փ. Ի. ԵՆԳՈՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

# ՍՄԿԿ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՊԱՐԲԵՐԱՑՈՒՄԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐՈՒՄ

XIX դարի վերջերին և XX դարի սկզբներին Ռուսաստանում գործում էին քաղաքական մի շարք կուսակցություններ, այդ թվում ռեակցիոն «ռուս ժողովրդի միությունը», միապետականները, միացյալ ազնվականության խորհուրդը և այլն, որոնք կալվածատերերի դասակարգային կազմակերպություններն էին։ Դրանց հարում էին հակահեղափոխության կողմն անցած բուրժուազիայի ավելի հետամնաց խավերը, որոնք միավորվել էին տարբեր կուսակցությունների մեջ (Հոկտեմբերի 17-ի միությունը, առևտրա-արդյունաբերական կուսակցությունը և այլն)։ Լիբերալ միապետական բուրժուական կադետական կուսակցությունը հակահեղափոխությանը պաշտպանելու համար կոնստիտուցիոն պատրանքներ էր սերմանում և կեղծավոր դեմոկրատական ֆրազներով հակադրվում պրոլետարական դեմոկրատիզմին։ Նարոդնիկական, աշխատավորական կուսակցությունները (ժողովրդական սոցիալիստները, սոցիալիստ-հեղափոխականները) այս կամ այն չափով արտահայտում էին գյուղացիության և քաղաքային մանր բուրժուազիայի շահերը, տատանվում կապիտալիստական հողատիրության ու ճորտատիրական պետության դեմ վճռական պայքար մղելու ուղիներ ընտրելու մեջ։ Այդ ժամանակաշրջանում քաղաքական ասպարեզում հայտնվում են նոր ձևավորվող մանր բուրժուական՝ մենշևիկյան և պրոլետարական՝ բոլշևիկյան կուսակցությունները։

Ռուսաստանում գործող կուսակցությունները ստեղծվել են տարբեր ժամանակներում։ Ժամանակագրական տեսակետից առաջինները եղել են կալվածատերերի ու ազնվականների կուսակցությունները, հետագայում կապիտալիզմի զարգացմանը, բուրժուական ու պրոլետարական դասակարգերի ձևավորմանը զուգընթաց ստեղծվել են բուրժուական ու աշխատավորական կուսակցությունները։ Պատմականորեն սկզբում հանդես են եկել դասակարգերը, ապա նրանց կուսակցությունները։ Ռուսաստանում բանվոր դասակարգի կազմավորման պրոցեսը ավելի արագ ընթացավ ետռեֆորմյան շրջանում, երբ արդյունաբերական կապիտալը և ապրանքա-դրամային հարաբերություններն արմատավորվել էին ռուսական իրականության մեջ։ Անցյալ դարի 70—80-ական թվականներին, բանվոր դասակարգի ձևավորման, դասակարգային ինք-

նագիտակցության դրսևորման ժամանակ նախադրյալներ են ստեղծվում բանվորների կազմակերպչական միավորման համար։ Այդ ժամանակամիջոցում երևան են գալիս առաջին բանվորական կազմակերպությունները, մարքսիստական գաղափարները տարածող խմբակները։

1880-ական, 1890-ական թվականներին ստեղծվում են առաջին սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները, իսկ 1895 թվականին՝ «Պետերբուրգի բանվոր դասակարգի ազատության պայքարի միությունը», որը հանդիսացավ բոլշևիկյան կուսակցության սաղմը։ 1897, 1898 թթ. առաջին փորձերն են կատարվում Ռուսաստանում միասնական սոցիալ-դեմոկրատական կուսակցություն ստեղծելու համար։ 1900 թ. հրատարակվում է համառուսաստանյան քաղաքական լրագիրը՝ «Искра»-ն, իսկ 1902 թվականին Վ. Ի. Լենինի Ի՞նչ անել հռչակավոր գիրքը, որոնք թեորիապես ու կազմակերպչորեն նախապատրաստում են մարքսիստական կուսակցության ստեղծումը։ Լենինի և մյուս մարքսիստների ջանքերով 1903 թվականին ՌՍԴԲԿ II համագումարում ստեղծվում է բոլշևիկյան կուսակցությունը։

Բոլշևիկյան կուսակցության անցած ուղու պատմությունը լի է մեծ փորձություններով, մակընթացություններով ու տեղատվություններով, պայքարի բազմապիսի ձևերով, նահանջներով ու հարձակումներով։ Ղեկավարվելով մարքս-լենինյան տեսությամբ, այն հեղափոխական պայքարի ամեն մի փուլում առաջ է քաշել ստրատեգիական ու տակտիկական խնդիրներ ու կոչեր։ Բոլշևիկյան կուսակցությունը պայքարի տարբեր փուլերում երկրում ստեղծված քաղաքական իրադրությանը համապատասխան փոփոխել է գլխավոր հարվածի ուղղությունը, հեղափոխական ուժերի տեղաբաշխման, դասակարգային մարտումների ղեկավարման մեթոդներն ու եղանակները։ Լենինը «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ գրքում համառոտակի շարադրել է բոլշևիկյան կուսակցության մարտական ուղու պատմությունը, զարգացման փուլերը, ներառյալ հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը։

Այդ աշխատության մեջ Լենինն ամենից առաջ գիտականորեն պարզաբանում է Ռուսաստանում հեղափոխական շարժման երկու ստրատեգիական փուլերը (1903 թվականից մինչև 1917 թ. փետրվարը, 1917 թ. մարտից մինչև 1917 թ. հոկտեմբերը), այնուհետև մանրամասնորեն լուսաբանում առաջին ստրատեգիական փուլը, որն իր հերթին բաժանվում է մի քանի գլխավոր տակտիկական շրջանների։

Բոլշևիկյան կուսակցության պատմության առաջին գլխավոր տակտիկական փուլը Լենինը համարում է հեղափոխության նախապատրաստման տարիները (1903—1905 թվականները)։ Այդ ժամանակ Եվրոպայում սկսված տնտեսական ճգնաժամը տարածվում է նաև Ռուսաստան, որի հետևանքով ավելի են սրվում ռազմա-ֆեոդալական իմպերիալիզմի հակասությունները։ Տնտեսական ճգնաժամի հետևանքով փակվում են բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, գործադրկության պատճառով սովի մատնվում հարյուր-հազարավոր բանվորական ընտանիքներ։ Կալվածատերերի ճնշումը, հարկային ծանր քաղաքականությունը քայքայում են գյուղը։ Միլիոնավոր գյուղացիներ հողազրկվում են, դառնում վարձու աշխատողներ։

Հատկանշական է, որ այդ շրջանում Ռուսաստանի բանվոր դասակարգը դառնում է գալիք հեղափոխության ազդեցիկ ուժը և իր ձեռքն է վերցնում



ցարիզմի ու բուրժուազիայի դեմ մղվող հեղափոխական պայքարի նախաձեռնությունը։

Այդ ժամանակ քաղաքական պայքարի թատերաբեմ է դուրս գալիս հեղափոխական գյուղացիությունը։ Քաղաքի և գյուղի մանր բուրժուազիայի շրջաններում աճում է դժգոհությունն ինքնակալության դեմ, պարզորոշ է դառնում հեղափոխական մարքսիստների և լիբերալ բուրժուազիայի միջև պայքարը՝ պրոլետարիատին իրենց կողմը ներգրավելու համար։ Սոցիալ-դեմոկրատիայի շրջանում առաջանում են հակամարտ հոսանքներ։ Էկոնոմիզմը վերափոխվում է մենշևիզմի, հանգելով բանվոր դասակարգի պայքարը բուրժուազիայի շահերին հարմարեցնելու օպորտունիստական տեսակետին։

«Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ գրքում Լենինը բոլշևիզմի պատմության առաջին գլխավոր տակտիկական փուլը համարում է այնպիսի ժամանակաշրջան, երբ ամենուրեք զգացվում է մեծ փոթորիկի մոտեցումը, երբ դասակարգերի մեջ սկսվում է խմորում, երբ ակներև է դառնում բացահայտ պայքարը (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 12)։ Հասարակական քաղաքական խմբերի պայքարում բյուրեղանում են դասակարգերի գաղափարական ու քաղաքական կողմնորոշումը, ստրատեգիական գիծը։

Բոլշևիկյան կուսակցության պատմության երկրորդ գլխավոր տակտիկական փուլն ընդգրկում է առաջին հեղափոխության տարիները՝ 1905—1907 թվականները։ Այդ շրջանում Ռուսաստանում տեղի է ունենում աշխարհում առաջին համաժողովրդական հեղափոխությունը՝ ուղղված ճորտատիրության և ինքնակալության դեմ։

Լենինը նկատել է, որ ռուսական պատմության մեջ ջրի երես են բարձրանում տասնամյակներով ու դարերով հասունացող հակասությունները։ Կյանքը դառնում է արտասովոր, իրադարձություններով հարուստ։ Մասսան, որը միշտ գտնվում է ստվերում կամ նույնիսկ արհամարհվում է, քաղաքական բեմ է ելնում, որպես ակտիվ մարտնչող։ Նա հերոսական ջանքեր է թափում բարձրանալու, հասնելու պատմության կողմից իր վզին փաթաթված վիթխարի համաշխարհային խնդիրների բարձրությանը։ Իր սեփական համոզմամբ ու պայքարով մասսան ոտքի է ելնում ստուգելու իր դասակարգային խնդիրներն ու թեորիաները (տե՛ս, Երկեր, հ. 8, էջ 115)։

Հեղափոխությունը շարժման մեջ է դնում Ռուսաստանի բոլոր դասակարգերին, կուսակցություններին, քաղաքական մյուս ուժերին, հարկադրում նրանց հանդես գալ բացահայտորեն և ասպարեզ բերել իրենց ծրագրային ու տակտիկական հայացքները։ Ցարիզմը, ազնվականությունն ու նրանց կուսակցությունները՝ ռուս ժողովրդի միությունը, միապետականները, միացյալ ազնվականության խորհուրդը և այլն, բռնություններով, դումայական կեղծ խոստումներով ու զանազան այլ խաբեություններով ձգտում են թաղել հեղափոխությունը, անսասան պահել ինքնակալությունը։

Ստեղծված իրավիճակում, երբ հեղափոխության դեմ պայքարում էին միայն ոստիկանությունն ու ժանդարմերիան, ցարիզմն ստիպված էր «պետական ծառայության» վերցնել բոսյակներին, խուլիգաններին, շանտաժի ու հալածանքների նոր ձևերով ու եղանակներով հակազդել հեղափոխական ուժերի վրա։ Մինչև հեղափոխությունը ցարիզմը միայն հալածում էր ագիտատորներին, հետապնդում հեղափոխական կազմակերպություններին։ Հեղափոխության ժամանակ նա կազմակերպում է խռովություններ, հակահեղափոխական տեսարաններ, աստիճանաբար գործողության մեջ դնում քաղաքացիական պա-

տերազմ հրահրելու մտադրությունը։ Ցարիզմը, որպեսզի պահպանի հեղափոխության դեմ ուժերի գերակշռությունը, փոխում է պայքարի ձևերը, մասսաների վրա ներգործելու եղանակները։

Հեղափոխության նկատմամբ թշնամական այլ վարքագիծ էր դրսևորում ռուսական լիբերալ բուրժուազիան, որը չնայած ցանկանում էր ինքնակալության տապալումը, սակայն սարսափում էր ժողովրդական հեղափոխությունից։ Նա ավելի շատ վախենում էր ոչ թե ինքնակալության պահպանումից, այլ ժողովրդի լիակատար հաղթանակից։

Լիբերալ բուրժուազիան ելնելով հեղափոխության նկատմամբ ունեցած իր ըմբռնումից, ձգտում էր «...որ ցարի ու հեղափոխական ժողովրդի միջև որքան կարելի է ավելի խաղաղ գործարք լինի, այն էլ այնպիսի գործարք, որի դեպքում ամենից ավելի նրան, բուրժուազիային հասներ իշխանություն, իսկ ամենից քիչ հեղափոխական ժողովրդին, պրոլետարիատին և գյուղացիությանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 9, էջ 10)։ Լիբերալ բուրժուազիայի ներկայացուցիչները՝ Օսվոբոժդենյականները,— ասում էր Լենինը,— ուզում էին ինքնակալության հետ հաշիվ մաքրել մեղմորեն, ռեֆորմատորաբար, զգուշաբար, առանց որևէ բեկման, սիրալիր և քաղաքավարի (Երկեր, հ. 9, էջ 58—59)։

Բոլշևիզմի պատմության երկրորդ գլխավոր տակտիկական փուլը բնորոշվում է նրանով, որ այդ ժամանակամիջոցում ռուսական հեղափոխության հարցում տեղի ունեցավ պայքար բոլշևիկյան ու մենշևիկյան կուսակցությունների միջև։ Բացահայտվեցին նրանց քաղաքական հայացքների, տեսությունների, ստրատեգիական պլանների արմատական տարբերությունները։

Մենշևիկյան կուսակցությունը համեմատություններ անելով արևմտյան Եվրոպայի անցյալի հետ և պատմական տարբեր դարաշրջանների միջև սխալ զուգահեռ անցկացնելով, առաջադրում էր օպորտունիստական պլան, որն ապահովում էր բուրժուազիայի հաղթանակը Ռուսաստանում, հաստատում բուրժուական դիկտատուրա։ Այլ կերպ ասած, մենշևիկներն առաջարկում էին մեխանիկորեն Ռուսաստան փոխադրել արևմտաեվրոպական բուրժուական հեղափոխությունների սխեման։ Ստրատեգիական բոլորովին այլ ծրագրով հանդես եկավ բոլշևիկյան կուսակցությունը։ Բոլշևիկյան տեսակետը նախատեսում էր հեղափոխության ղեկավարությունը հանձնել պրոլետարիատին, նրա ղեկավարությամբ և գյուղացիության անմիջական օգնությամբ Ռուսաստանում կենսագործել դեմոկրատական հեղաշրջում, միապետության ու արիստոկրատիայի հետ հաշիվ մաքրել, ոչ մի զիջում չանել ճորտատիրության, մարդու անարգման նզովյալ ժառանգությանը։ Այլ կերպ ասած, կատարել կուսակցության մինիմում ծրագիրը և պայմաններ նախապատրաստել սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 9, էջ 59)։

Բոլշևիկների պատմության երկրորդ գլխավոր տակտիկական շրջանում ոչ բոլոր դասակարգերն են հանդես գալիս բացահայտորեն։ Հասունացող իրադարձությունները որոշակի ազդեցություն են գործում դասակարգերի հարաբերությունների վրա։ Այդ ժամանակ գործադուլային պայքարը ծավալվում է այնպիսի լայնությամբ ու սրությամբ, որպիսին չէր եղել աշխարհում։ Տնտեսական գործադուլը վերաճում է քաղաքականի, քաղաքականը՝ ապստամբության։ Տեղի է ունենում պրոլետարիատի և տատանվող գյուղացիության հարաբերությունների գործնական ստուգում։ Հասարակական լարված մթնոլորտում ծնունդ են առնում առաջին սովետները, սովետական իշխանության նախատիպը։ Հասարակական քաղաքական պայքարում բոլշևիկները առաջ են



քաշում պառլամենտական և ոչ պառլամենտական տակտիկայի ձևեր, պառլամենտարիզմը բոյկոտի ենթարկելու եղանակը, դրանք մեկը մյուսով փոխարինելը։ Այդ ժամանակաշրջանի յուրաքանչյուր ամիս իր բովանդակությամբ, իրադարձությունների հարստությամբ հավասար էր խաղաղ զարգացման մեկ տարուն։ «Առանց 1905 թվականի «գլխավոր փորձի» 1917 թվականի հոկտեմբերյան հեղափոխության հաղթությունն անհնարին կլիներ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 13)։

Բոլշևիկյան կուսակցության պատմության երրորդ գլխավոր տակտիկական փուլն ընդգրկում է հեղափոխության պարտության, ստոլիպինյան ռեակցիայի ժամանակաշրջանը։ Հոգևոր կյանքում այդ տարիներին հոռետեսության տարերքը դառնում է իշխող արվեստում, փիլիսոփայության մեջ անկումային տրամադրությունները և միստիցիզմը հանդես են գալիս որպես հակահեղափոխական տրամադրությունների արտահայտություն։

Ռուսաստանում ֆեոդալական ինքնակալությունը վերածվում է բուրժուական միապետության և աբսոլյուտիզմը քողարկվում է կեղծ կոնստիտուցիոն ձևով։ Հունիսի 3-ի պետական հեղաշրջումով և երրորդ դումայի հիմնումով բացահայտորեն ամրացվում են ցարիզմի դաշինքը կալվածատերերի և առևտրա-արդյունաբերական բուրժուազիայի վերնախավի հետ։ «Անհրաժեշտաբար, վերջնականապես կանգնելով Ռուսաստանի կապիտալիստական զարգացման ուղու վրա և ձգտելով պաշտպանել հենց այնպիսի մի ուղի, որը հնարավորություն կտար ճորտատեր-հողատերերին պահպանելու իրենց իշխանությունն ու իրենց եկամուտները, ինքնակալությունը խուսանավում է այդ դասակարգի և կապիտալի ներկայացուցիչների միջև։ Նրանց մանր գժտություններն օգտագործվում են աբսոլյուտիզմի պաշտպանության համար, որն այդ դասակարգերի հետ միասին կատաղի հակահեղափոխական պայքար է մղում մոտիկ անցյալի մասսայական կռվում իր ուժը ցույց տված սոցիալիստական պրոլետարիատի և դեմոկրատական գյուղացիության դեմ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 397)։

Հունիսի 3-ի հեղաշրջումից հետո ռեակցիան հարձակման է անցնում։ Ամբողջ երկրով մոլեգնում է տեռորը, ցրվում են պրոֆեսիոնալ միությունները, կոոպերատիվ կազմակերպությունները. ընդհատակ են անցնում բոլշևիկյան տեղական կազմակերպությունները։ Արտակարգ օրենքներով ռեպրեսիաների են ենթարկվում հեղափոխական բանվորներ, գյուղացիներ ու կուսակցական գործիչներ։ Այդ միջոցներով ռեակցիան ջանում էր խառնաշփոթություն, տարընթացություն առաջացնել հեղափոխության շարքերում։

Ռեակցիայի հարձակումը քայքայում, ջլատում է բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունները։ Այլասերման պրոցեսն առանձնապես ընդգրկում է էսեռների ու մենշևիկների կուսակցությունները։ Էսեռների աջ թևի ներկայացուցիչները վերածվում են անսկզբունք բախտախնդիրների ոհմակի։ Մենշևիկները խուճապահար նահանջելով դավաճանում են հեղափոխությանը, հայտարարում, թե հեղափոխությունն ընդմիշտ պարտված է, իսկ անլեգալ կուսակցությունը պետք է լիկվիդացվի։ Ձայնակցելով բուրժուական մտավորականներին, մենշևիկ-լիդերները լուտանք էին թափում հեղափոխության հասցեին, ճգնում մասսաներին հեռու պահել հեղափոխական պայքարից։ Մենշևիկ-լիկվիդատորները, կադետները, հեղափոխության դասալիքները ճգնում էին գաղափարապես զինաթափել բանվոր դասակարգին, աշխատավոր մասսաներին։ Նրանց նպատակն էր՝ խեղաթյուրել մարքսիստական փիլիսոփայու-

թյունը, այն նենգափոխել սուբյեկտիվ իդեալիստական փիլիսոփայությամբ:

Քաղաքական ու տնտեսական հալածանքները գաղափարական կյանքում, անկումային տրամադրությունները չէին կարող անհետևանք մնալ: Երկրում տեղի ունեցած հասարակական անցքերի ժամանակ, բանվոր դասակարգի մի մասի մոտ անտարբերություն է առաջանում դեպի քաղաքական պայքարը, կուսակցական աշխատանքը: Այդպիսիք անկարող էին ռեակցիայի հարձակման պայմաններում կիրառել հեղափոխական, սոցիալ-դեմոկրատական նոր տակտիկա, մնում էին հեղափոխության ժամանակաշրջանի դիրքերում, դրանով կասեցնում պրոլետարիատի համախմբման պրոցեսը նոր պայմաններում:

Հեղափոխական պայքարի անկման շրջանում, երբ տարընթացությունն ու շփոթը տարածվել էին, ձևավորվեցին օտզովիզմի և ուլտիմատիզմի հոսանքները: Ջախորդ ժամանակի պայմաններում,— նկատել է Լենինը,— օտզովիստներն ու ուլտիմատիստները ավելի ու ավելի են երևան բերում իրենց անբավարար սոցիալ-դեմոկրատական կոփվածությունը և ավելի ու ավելի սուր հակասության մեջ մտնում հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի տակտիկայի հիմունքների հետ (տե՛ս Երկեր, հ. 15, էջ 553—554):

Բանվոր դասակարգի և կուսակցական ինտելիգենցիայի մի մասին համակած անկայունությունն ու շփոթվածությունը դժվարություններ առաջացրին բոլշևիկյան կուսակցության քաղաքական ու գաղափարական գործունեության համար: Բոլշևիկների առաջ խնդիր էր դրվում դասակարգային պայքարի ծանր պայմաններում «...պահպանել պրոլետարական պայքարի բարձր վերելքի տարիներում ստեղծված կուսակցական կազմակերպությունը... որը գիտակցաբար կանգնած է օրթոդոքսալ մարքսիզմի հողի վրա և միավորում է բոլոր «ազգային» սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները միասնական հեղափոխական ս.-դ. տակտիկա կիրառելու նպատակով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 555):

Բոլշևիկյան կուսակցությունը ռեակցիայի ժամանակաշրջանում անփոփոխ թողնելով ստրատեգիական հիմնական պլանը, վերանայում է մինչ այդ առաջ քաշած լոզունգներն ու պայքարի եղանակները: Հարձակման նախկին տակտիկան փոխարինվում է կազմակերպված նահանջի տակտիկայի: Այդ առթիվ Լենինը ասել է. ժամանակավորապես հրաժարվել քաղաքական սուր լոզունգներից ու կոչերից, փողոցային մարտերից, ամեն կերպ ամրապնդել կապերը մասսաների հետ, ճիշտ զուգակցել ու օգտագործել պայքարի լեգալ ու անլեգալ ձևերը, առանց խուճապի ընդհատակ տանել հեղափոխության ուժերը, կոմպլեկտավորել ու պահպանել դրանք գալիք հեղափոխական մարտերի համար (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 14):

Ստոլիպինյան ռեակցիայի ժամանակաշրջանում Ռուսաստանի բոլոր հեղափոխական և օպոզիցիոն կուսակցություններից միայն բոլշևիկները նահանջեցին ամենից ավելի կանոնավոր, իրենց շարքերի նվազագույն վնասումով, նրա կորիզի առավելագույն պահպանմամբ, նվազագույն պառակտումներով, նվազագույն բարոյալքումով, գործն ավելի լայն, ճիշտ ու եռանդով նորոգելու առավելագույն ընդունակությամբ (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 14): Բոլշևիկները դրան հասան իրենց մշակած ճկուն տակտիկայով, երկրում ստեղծված քաղաքական վիճակի նկատմամբ ճիշտ դիրքորոշում ընդունելու շնորհիվ:

Բոլշևիկյան կուսակցության պատմության գլխավոր տակտիկական մյուս փուլը, ըստ Լենինի, ընդգրկում է 1910—1914 թթ.՝ հեղափոխական նոր վե-



րելքի ժամանակաշրջանը: Այդ ժամանակահատվածում նոր ուժով սկսում են գործել առաջին հեղափոխության շրջանի գործոնները, հասունացող քաղաքական ճգնաժամի նախանշանները: Ընդլայնվեց հեղափոխական խմորումների շառավիղը, ներգրավելով աշխատավորական նոր զանգվածներ: Առաջ են քաշվում մասսաներին քաղաքական բացահայտ պայքարի կոչող լոզունգներ ու կոչեր: Ելնելով ստեղծված իրավիճակից, բոլշևիկյան կուսակցությունը ավարտված է համարում գործունեության ընդհատակյա շրջանը և մասսաներին կողմնորոշում դուրս գալ պայքարի ինքնակալության դեմ՝ հանուն դեմոկրատական կարգերի հաստատման: Այդ նշանաբանով 1910 թվականի աշնանը քաղաքական ելույթներ են սկսվում Պետերբուրգում, Մոսկվայում, Վարշավայում, Ռիգայում, Խարկովում, Օդեսայում և մյուս քաղաքներում: 1911 թվականին Ռուսաստանի տարբեր քաղաքներում տեղի են ունենում 466 խոշոր գործադուլներ, որոնց թիվը 1912-ին եռապատկվում է: Լենայի ոսկու հանքերի բանվորների գնդակոծումից հետո գործադուլներն ու քաղաքական ցույցերը դառնում են մասսայական: Ռուսաստանում բանվորական շարժման վերելքի պայմաններում, Պրագայում տեղի ունեցավ բոլշևիկյան կուսակցության վեցերորդ կոնֆերանսը: Օրավուր զարգացող իրադարձությունների ոլորտը լայնանում էր: Առանձնապես նշանակալի էին ելույթները երկրի եվրոպական մասի քաղաքներում:

1913—1914 թթ. բանվորական ցույցերին ու գործադուլներին արձագանքում են գյուղացիները: Հողի համար և կալվածատիրական շահագործման դեմ Ռուսաստանի նահանգներում բազմաթիվ գյուղացիական հուզումներ ու ապստամբություններ են տեղի ունենում: Քաղաքական այդ ելույթները հաճախ ավարտվում էին իշխանությունների հետ ընդհարումներով: Նկատի ունենալով այդ, Լենինը ասել է՝ 1913—1914 թվականին Ռուսաստանը ըստ էության ապրում էր թաքնված քաղաքացիական կռիվների ժամանակաշրջան: Աշխատավորական դասակարգերը հուզումների մեջ են, իսկ կառավարությունը փաստորեն պատերազմում է (В. И. Ленин, ПСС, т. 25, стр. 65): Ժողովրդական հուզումները ճնշելու, աշխատավորությանը հնազանդ պահելու համար ցարիզմը գործադրում էր կեղծ խոստումների, խաբեության, բացահայտ բռնությունների ու հալածանքների իր փորձված մեթոդները: Ռեակցիոն ուժերի հետ դաշնակցած ցարիզմը ձգտում էր կանխել հեղափոխական վերելքը, ջախջախել բոլշևիկյան կուսակցությունը, գլխատել բանվոր դասակարգին, անսասան պահել իշխող դասակարգերի տիրապետությունը: Դրան հակառակ բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիության հետ միասին, բոլշևիկների ղեկավարությամբ ուժեղացնում էր պայքարը ինքնակալության դեմ:

Ցարիզմի գործադրած բոլոր ջանքերն ապարդյուն են անցնում: Նա ինքնակալությանը հեղափոխական վտանգից փրկելու համար դիմեց ծայրահեղ միջոցի, մտավ առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի հորձանուտը: Բոլշևիկների համար սկսվեց պայքարի քաղաքական իրադարձություններով հարուստ պատերազմական ժամանակաշրջան, որը Լենինը համարեց կուսակցության պատմության գլխավոր տակտիկական նոր փուլ:

Համաշխարհային պատերազմում միջազգային իմպերիալիզմը բացահայտ դրսևորեց իր սոցիալ-քաղաքական բովանդակության հակասությունները, տնտեսական կառուցվածքի արատները: Իմպերիալիզմը ռազմական թատերաբեմ ներգրավեց բազմաթիվ երկրներ, աշխարհամասեր: Ստեղծված խառը իրավիճակում իմպերիալիստական ամեն մի պետություն հենվելով իր ռազ-

մական կազմակերպված ուժերի վրա, պատերազմական գործողություններ է
սկսում սեփական շուկաներն ընդարձակելու համար:
Պատերազմող երկրներում մեծ տարածում էին ստացել սոցիալ-շովինիս-
տական, պացիֆիստական հայացքները: Օպորտունիզմը քայքայել էր երկրորդ
ինտերնացիոնալը: «Երկրորդ ինտերնացիոնալիզմի գիտուն հիմարները և պա-
ռավ կնանիք, որոնք արհամարհանքով ու գոռոզությամբ կնճռում էին իրենց
քիթը ռուսական սոցիալիզմի մեջ «ֆրակցիաների» առատության ու նրանց
միջև եղած պայքարի անողոքության առթիվ, երբ պատերազմը բոլոր առա-
ջավոր երկրներում խլեց գովված «լեգալությունը», չկարողացան նույնիսկ
մոտավորապես հայացքների այնպիսի ազատ (անլեգալ)... մշակում կազմա-
կերպել, որպիսիք կազմակերպեցին ռուս հեղափոխականները Շվեյցարիայում
և մի շարք այլ երկրներում: Հենց դրա համար էլ բոլոր երկրների թե՛ ուղղա-
կի սոցիալ հայրենասերները և թե՛ «կաուցկիականները» պրոլետարիատի
վատթար դավաճաններ դուրս եկան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 15):
Պատերազմի տարիներին բոլշևիկյան կուսակցությունը գլխավոր հար-
վածն ուղղում է միջազգային օպորտունիզմի, սոցիալ շովինիզմի դեմ և պա-
տերազմող երկրների ս.-դ. կուսակցությունների հեղափոխական խմբերի հետ
միասին հետևողական պաշտպանում պրոլետարական ինտերնացիոնալիզմը:
Բոլշևիկյան կուսակցության պատմության գլխավոր տակտիկական հա-
ջորդ փուլը 1917 թվականի փետրվարից մինչև հոկտեմբերը ընկած ժամա-
նակաշրջանն է: Այդ ամիսներին տեղի են ունենում պատմական իրադարձու-
թյուններ: Հօդս է ցնդում Ռոմանովների դինաստիան, Ռուսաստանը դառնում
է դեմոկրատական բուրժուական հանրապետություն, Լենինը հավաստել է, որ
ինչպես «խիստ պառլամենտական» հանրապետություններում, այնպես էլ
Ռուսաստանում ստեղծվում է օպոզիցիոն և հեղափոխական կուսակցություն-
ների ազատություն: Բոլշևիկյան կուսակցությունը դուրս է գալիս ընդհատա-
կից և քաղաքական ու կազմակերպական լայն աշխատանք ծավալում:
Ապրիլյան թեզիսներում Լենինը կուսակցությանը նպատակադրում էր
բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից անցում կատարել սոցիալիս-
տական հեղափոխության: Հակառակ դրան մենշևիկներն ու էսեռները յուրաց-
նելով երկրորդ ինտերնացիոնալի էկլեկտիկ դրույթները, հեռանալով հեղա-
փոխական մարքսիզմից, գլորվեցին օպորտունիզմի ճահիճը:
Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով
ավարտվում է բոլշևիկյան կուսակցության պատմության նախասովետական
ժամանակաշրջանը, և ինչպես Լենինն է ասում. «...ոչ մի երկրում այդ 15
տարում նույնիսկ մոտավորապես այսքան շատ բան չեն ապրել՝ հեղափոխա-
կան փորձի, շարժման տարբեր ձևերի՝ լեգալ ու անլեգալ, խաղաղ ու փոթոր-
կոտ, ընդհատակյա ու բացահայտ, խմբակային ու մասսայական, պառլա-
մենտական ու տեռորիստական ձևերի միմյանց հաջորդելու արագության ու
բազմազանության իմաստով: Ոչ մի երկրում այսքան կարճ ժամանակամի-
ջոցում չի համակենտրոնացվել ժամանակակից հասարակության բոլոր դա-
սակարգերի պայքարի ձևերի, երանգների, մեթոդների այնպիսի հարստու-
թյուն...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 11): Այդ 15 տարիների ընթացքում
դասակարգային մեծ ընդհարումների ու հեղափոխական գոտեմարտերի պայ-
մաններում բոլշևիկյան կուսակցությունը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ Ռու-
սաստանի բանվոր դասակարգին հաղթանակի տարավ ընդդեմ ցարիզմի ու
բուրժուազիայի, տակտիկայի տիպար դարձավ կոմունիստական և բանվորա-
կան կուսակցությունների համար:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՅԱ. ԿՐՈՆՐՈԴ

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ ԵՎ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սոցիալիզմը հասարակության սոցիալ-տնտեսական կազմակերպման
բարձրագույն ձևն է, որին հասել է մարդկությունը պատմական զարգացման
պրոցեսում: Ավելի քան կես դար մեր երկրում, գրեթե քառորդ դար մի շարք
ուրիշ երկրներում սոցիալիստական հարաբերությունները ռեալ իրականու-
թյուն են: Այժմ արդեն ոչ միայն որպես Մարքսի, Էնգելսի, Լենինի հանճա-
րեղ գիտական կանխատեսություն, այլև որպես կենդանի փորձի տեսական
ընդհանրացման արդյունք մեր առջև կանգնում են արտադրության նոր եղա-
նակի հիմնարար գծերը, որոշվում նրա համանշանակալի սկզբունքային հի-
մունքները:

Սոցիալիզմի գիտական տեսությունը զարգանում է բուրժուական և մա-
նրբբուրժուական տեսությունների դեմ մղվող մշտական պայքարում: Բուր-
ժուական, ռեֆորմիստական և ռևիզիոնիստական տեսաբանները, գաղափա-
րական շուկային մատակարարելով սոցիալիզմի իրենց «կոնցեպցիաները», չեն
դադարեցնում գրոհը մարքս-լենինյան տեսության վրա: Սոցիալիզմի գիտա-
կան ըմբռնումը ննենգափոխվում է սոցիալիզմի զանազան «մոդելներով»: Մո-
դելի և տեսության միջև հավասարության նշան է դրվում, որը գիտական մո-
տեցում չէ և հաճախ ձեռնարկվում է ամենևին էլ ոչ լավագույն մտադրու-
թյուններով: Ինչ խոսք, այս կամ այն օբյեկտիվ երևույթի կամ պրոցեսի, այդ
թվում նաև տնտեսական պրոցեսի ամեն մի, իրոք գիտական, մոդել գիտական
ճանաչողության կարևոր միջոց է: Նրա նշանակությունն ավելի ու ավելի է
մեծանում հետազոտության մաթեմատիկական մեթոդների հաջողությունների
շնորհիվ: Բայց որքան էլ մեծ լինի մոդելավորման տեսական-ճանաչողական
նշանակությունը, մոդելը ինքնըստինքյան երբեք չի փոխարինում և չի կարող
փոխարինել տեսությանը: Բանն այն է, որ այն, իսկն ասած, վերարտադրում
է տվյալ օբյեկտի հատկանիշների որոշակի միագումարը ֆունկցիոնալ կա-
պերի սիստեմի ձևով. սոցիալիզմի էկոնոմիկայում այդպիսի մոդելը կարող է
արտացոլել սոցիալիստական արտադրահարաբերությունների որոշ կարևոր

գծեր, դրանց քանակական պարամետրերը, դինամիկ բնութագրերը։ Մինչդեռ գիտական տեսությունը բացահայտում է նախ և առաջ պատճառական հարաբերություններն ու կապերը, դրանց որակական բնութագրերը, դրանց օրենքները, այսինքն՝ հասարակական-տնտեսական կարգի բուն էությունը, նրա ամենահիմնական օրինաչափությունները։

Ահա թե ինչու, սոցիալիզմի գիտական տեսությունը փոխարինելով զանազան «մոդելներով», հեշտ է սոցիալիզմի, նրա էկոնոմիկայի օրենքների խիստ միանշանակ էության փոխարեն ներկայացնել այն ֆունկցիոնալ ձևերի բազմազանությունը, որոնցում դրսևորվում է այդ էությունը, նայած պատմական կոնկրետ հանգամանքներին։ Ավելին, հեշտ է նաև ամենևին ոչ էական, երբեմն էլ կողմնակի գծերը ընդհանրացնել ու ներկայացնել որպես ինչ-որ հիմնարար հատկանիշ։ Սովորաբար հենց նման խեղաթյուրումների էլ հանգում են սոցիալիզմի բուրժուական, ռևիզիոնիստական և ռեֆորմիստական «մոդելները»։

Մարքս-լենինյան տեսության մեծագույն նշանակությունն այն է, որ բացահայտելով արտադրության սոցիալիստական եղանակի գործողության ու զարգացման օբյեկտիվ օրենքները, նա զինում է կուսակցությանն ու ժողովրդին իրենց հեղափոխական-ստեղծարար պրակտիկ գործունեության մեջ։ ՍՄԿԿ և սոցիալիզմի մյուս երկրների կոմունիստական կուսակցությունները իրագործում են տնտեսական ռեֆորմներ, լուծում ժողովրդա-տնտեսական խոշոր պրոբլեմներ, որոնք թելադրվել են արտադրաուժերի բուռն զարգացման, գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով։ Այդ ստեղծագործական պրակտիկ աշխատանքը հենվում է տնտեսագիտական այն տեսության վրա, որը բացահայտում է սոցիալիզմի ընդհանուր հիմքերն ու օրինաչափությունները և սոցիալիստական էկոնոմիկայի պատմական առանձնահատուկ, ազգային գծերը առանձին երկրներում՝ նրանց զարգացման յուրաքանչյուր տվյալ աստիճանի վրա։ Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում 1969 թվականի հունիսի 17-ին Մոսկվայում ընդունված հանրագումարային փաստաթղթում ասված է. «Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո շատ երկրներում սոցիալիզմի կառուցումը, որը կատարվում է ընդհանուր օրինաչափությունների հիման վրա, ծավալվում է տարբեր ձևերով, հաշվի առնելով պատմական կոնկրետ պայմաններն ու ազգային առանձնահատկությունները»։

Սոցիալիզմի ընդհանուր հիմքերն ու օրինաչափությունները վճռական նշանակություն ունեն, հատուկ են նրան, որպես պատմականորեն որոշակի արտադրաեղանակի։ Իհարկե, նայած երկրի պատմական կոնկրետ պայմաններին, նրա ազգային առանձնահատկություններին, զարգացման տվյալ փուլի, նյութական կենցաղի և կուլտուրայի առանձնահատկություններին և այլն, այն կոնկրետ ձևերը, որոնցով կատարվում է սոցիալիստական շինարարությունը և որոնցով դրսևորվում է արտադրության սոցիալիստական եղանակը, ունեն յուրատեսակ շատ գծեր։ Դրա հետ մեկտեղ,— և դա է ընդհանուրի ու յուրահատուկի փոխադարձ կապի դիալեկտիկան,— տնտեսական բազիսի արմատական, ֆունդամենտալ գծերը, նրա գործողության ներքին օրենքները նույնն են։ Սոցիալիզմի սոցիալ-տնտեսական էությունը միանական է, որքան էլ փոփոխվեն առանձին երկրներում նրա զարգացման պատմական կոնկրետ ձևերը։



## ԱՐՏԱԴՐԱՄԻՋՈՑՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԻՄՆԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆ Է

Արտադրամիջոցները և աշխատուժը, ինչպիսին էլ լինի արտադրության եղանակը, միշտ էլ արտադրության գործոններն են, առանց դրանց միացման այն չի կարող գործել։ «Այն հատուկ բնույթով ու եղանակով,— գրել է Մարքսը,— որով իրականացվում է այդ միացումը, որոշվում են հասարակական կարգի տարբեր տնտեսական դարաշրջանները» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 24, стр. 43—44)։ Արտադրության գործոնների միացման հատուկ «բնույթն ու եղանակն» էլ հենց ոչ այլ ինչ է, եթե ոչ արտադրամիջոցների սեփականության պատմականորեն հաստատված ձևը, հիմնական տիրապետող արտադրահարաբերությունը, այն հիմքը, որի վրա խարսխվում է տրնտեսական հարաբերությունների ամբողջ սիստեմը։ Եթե գոյություն ունի արտադրամիջոցների սեփականատերերի առանձին դասակարգ, իսկ այդ միջոցներից զրկված անմիջական արտադրողները առաջիններին վաճառում են իրենց աշխատուժը, ապա մեր առջև է արտադրության կապիտալիստական եղանակը։ Սեփականության գոյության հարաբերություններում տեղի ունեցած արմատական հեղաշրջումը, կապիտալիստների ունեզրկումը, արտադրամիջոցների հանրայնացումը, որի շնորհիվ այդ միջոցները դառնում են «միավորված արտադրողների սեփականություն, անմիջական հասարակական սեփականություն» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 25, ч. 1, стр. 480), նշանակում են արտադրության՝ սկզբունքորեն նոր, սոցիալիստական եղանակի առաջացում։

Մեր երկրում և սոցիալիզմի մյուս երկրներում արտադրամիջոցների հասարակական սեփականությունը պատմականորեն առաջանում և զարգանում է առաջատար համաժողովրդական (պետական) և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ձևերով։ Վերջինս արտացոլում է գյուղացիության առանձնահատուկ ուղին դեպի սոցիալիզմ. դա մանր-ապրանքային արտադրության կոոպերացումն է։ Հենց այն փաստը, որ հաստատվում է արտադրության հիմնական միջոցների համաժողովրդական սոցիալիստական սեփականություն, որը որոշիչ դեր է խաղում էկոնոմիկայում, նշանակում է նաև, որ կոոպերատիվ սեփականությանը հատուկ է սոցիալիստական բնույթը։

Արտադրամիջոցների համաժողովրդական սոցիալիստական սեփականության մարքս-լենինյան ըմբռնումը հնարավոր չէ, առանց հաշվի առնելու նրան ներքնապես հատուկ, սոցիալիզմի օրոք օբյեկտիվորեն անհրաժեշտ պետական ձևը։ Սոցիալիզմի պայմաններում չկա և չի կարող լինել արտադրամիջոցների առաջատար համաժողովրդական սեփականություն՝ առանց նրա համապետական տնօրինության՝ հօգուտ ժողովրդի։ Դա բխում է սոցիալիզմի հարաբերությունների բուն էությունից, պետական իշխանության անհրաժեշտությունից՝ արտադրության և բաշխման սոցիալիստական սկզբունքներն իրականացնելու համար։

Սոցիալիզմի օրոք պետության ղեկավար գործունեությունը ընդգրկում է վերարտադրության ամբողջ հասարակական պրոցեսը, ապահովում էկոնոմիկայի պլանաչափ բնույթը, հենվում մասսաների ընդհանուր կազմակերպման, նրանց գիտակցված գործողությունների վրա։ Կատարելով տնտեսական-կազմակերպչական ֆունկցիա, սոցիալիստական պետությունը որակապես նոր դեր է խաղում բուրժուական պետության համեմատությամբ։ Ընդհանրացնելով սովետական պետության գործունեության առաջին փորձը, Լենինն ընդ-

գծում էր, որ պետական իշխանությունը «սկսում է վերածվել երկրի էկոնոմիկայի կառավարման ֆունկցիաներն անմիջականորեն կատարող կազմակերպության» (В. И. Ленин. Полн. собр. соч., т. 38, стр.442)։ Սոցիալիստական շինարարության պրոցեսում պետությունը լիովին դարձավ հենց այդպիսի կազմակերպություն։ Դրանում արտահայտվեց արտադրամիջոցների հանրայնացման սոցիալիստական բնույթը՝ նրանց օրգանական միացումը բանվոր դասակարգի իշխանության, համաժողովրդական իշխանության հետ։

Բայց այս ամենը չի նշանակում, թե սոցիալիստական պետությունն իր տնտեսական ֆունկցիաների առումով պետք է դիտել ոչ թե որպես վերնաշենք, այլ բազիս։ Արտադրամիջոցների սեփականությունը հիմնական տնտեսական հարաբերությունն է։ Սոցիալիզմի օրոք նրա անբաժանելի կրողը ժողովուրդն է՝ միասնական սոցիալիստական կոլեկտիվ արտադրողը։ Պետությունը ևս այդ արտադրահարաբերությունների ինչ-որ ինքնուրույն, ժողովրդից զատված «կրող» չէ։ Նրա ֆունկցիան է՝ իրավական տեսակետից ժողովրդի անունից և նրա օգտին իրականացնել սեփականության այդ օբյեկտիվ հարաբերությունները, որոնց իրական և միակ սուբյեկտը ժողովուրդն է։ Սա է գործի էությունը։ Միայն ռևիզիոնիստական մեկնաբանությամբ է, որ համաժողովրդական պետական սեփականությունը, որպես բուն պետության սեփականություն, փաստորեն հակադրվում է անմիջականորեն ժողովրդական սեփականությանը։

Նույնը վերաբերում է նաև արտադրամիջոցների և սպառման առարկաների յուրացմանը։ Սոցիալիզմի օրոք այդ հարաբերությունների մեջ՝ որպես սուբյեկտ հանդես է գալիս ժողովուրդը և միայն ժողովուրդը։ Պետությունը ժողովրդական իշխանության ձևն է, քաղաքական այն ապարատը, որը կազմակերպում և պահպանում է այդ համաժողովրդական յուրացումը։ Ինքնըստինքյան պետությունը ոչինչ չի յուրացնում, քանի որ նա հանդես չի գալիս որպես ժողովրդին հակադիր ինչ-որ մի առանձին սուբյեկտ։ Համապետական ձևով իրականացվում է թե՛ արտադրամիջոցների, և թե՛ սպառման առարկաների իրական համաժողովրդական յուրացումը։ Մի՞թե պարզ չէ, որ համաժողովրդական շահի կրողը միայն ժողովուրդն է։ Պետությունը պահպանում և կազմակերպում է այդ շահի իրականացումը, ինչպես որ, ի միջի այլոց, նաև սոցիալիստական հասարակարգի տնտեսական շահերի ամբողջ սիստեմի իրականացումը։

Վերջապես, ելնելով այն բանից, որ սոցիալիստական պետությունը ղեկավարում է տնտեսական պրոցեսը, ժողովրդատնտեսական մասշտաբով նրա կանոնավորումը, սխալ կլիներ պետությանը վերագրել «հավաքական բանվորի» մի շարք ֆունկցիաներ։ Այդպիսի ֆունկցիաներ կարող են կատարել միայն հանրային արտադրության անմիջական մասնակիցները։ Իսկ պետական կառավարման օղակները, որպես պետական-քաղաքական միասնական ապարատի մարմիններ, կատարում են տնտեսական-քաղաքական ֆունկցիաներ։ Տնտեսական պրոցեսի պետական ղեկավարումը բուն այդ պրոցեսի և նրան օբյեկտիվորեն հատուկ օրենքների հետ շփոթելու հետևանքով առաջ է գալիս ինչպես համաժողովրդական սեփականության սխալ ըմբռնում (մոռացում այն բանի, որ նրա սուբյեկտը ժողովուրդն է), և միայն ժողովուրդը այնպես էլ խոտորում դեպի օբյեկտիվ տնտեսական պրոցեսի սուբյեկտիվ մեկնաբանությունը։

Պետության և նրա ապարատի օղակների՝ քաղաքական վերնաշենքին



պատկանելը խուսընդոտ չէ, որպեսզի առավել մեծ դեր խաղան ղեկավարման տնտեսական մեթոդները, որոնք անմիջականորեն հենվում են նյութական խթանների վրա, որպեսզի տնտեսական կառավարման մարմինների գործունեության մեջ վերից վար ավելի ու ավելի լայնորեն արմատավորվեն տնտեսական հաշվարկի, տնտեսական խթանման, նյութական պատասխանատվության հիմունքները։ Այս ամենը ռեալ, կենսականորեն անհրաժեշտ ձևերն են, որոնցով ժամանակակից պայմաններում զարգանում է սոցիալիստական պետության տնտեսական-կազմակերպչական գործունեությունը։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԵՎ ՌԵՎԻԶԻՈՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Սոցիալիզմի բուրժուական «մեկնաբանները» և քննադատները ինչպես նաև նրա ռեֆորմիստական և ռեվիզիոնիստական «տեսաբանները» ճիգ են թափում պսակազերծելու արտադրամիջոցների հասարակական սեփականությունը՝ ուրպես սոցիալիզմի հիմք: Բանը սեփականությունը չէ, պնդում են բուրժուական տնտեսագետները, այլ փաստական վերահսկողությունը։ Այդ թեզիսը կոչված է լուծելու կրկնակի խնդիր։ Նախ, թաքցնել կապիտալիզմի, նրա մոնոպոլիստական և պետական-մոնոպոլիստական ձևերի ռեակցիոն էությունը։ Մենեջերների «վերահսկողությունը» հայտարարվում է կապիտալիստների սեփականության փոխարինում։ Դրա վրա են խարսխվում «կառավարողների հեղափոխության», «տեխնոկրատիայի դարագլխի», «համաձայնեցված էկոնոմիկայի», «սոցիալական պարտնյորության կամ մասնակցության էկոնոմիկայի», «խառը էկոնոմիկայի» և նմանօրինակ այլ տեսությունները։ Երկրորդ, խեղաթյուրել սոցիալիզմի իրական հարաբերությունները, պատկերել սոցիալիզմը՝ որպես հիերարխիկան-շահագործական կառուցվածք, որտեղ գլխավոր դերը սեփականությունը «վերահսկող» սոցիալական «խավերինն», «ինստիտուտներինն» է։

Այսպիսով, արտադրամիջոցների հասարակական սեփականությունը՝ սոցիալիզմի հիմնական արտադրահարաբերությունը սոցիալիզմի բուրժուական մեկնաբանության մեջ վերանում է, փոխարինվելով սուբյեկտիվ վոլյունտարիստական վերահսկողությամբ։ Սակայն ամբողջ աղն էլ այն է, որ սեփականության նկատմամբ «վերահսկողությունը» չի փոխարինում սեփականությանը, չի հակադրվում նրան, այլ սեփականության հարաբերությունների ֆունկցիան է։ Եթե արտադրամիջոցների սեփականության սուբյեկտը ժողովուրդն է, ապա, ի դեմս նրան ներկայացնող պետության, վերահսկողությունն ժողովրդինն է։ Սոցիալիստական պետությունը ժողովրդից բարձր կանգնած, նրան հակադիր ինչ-որ հաստատություն չէ, այլ հենց իր՝ ժողովրդի քաղաքական իշխանությունն է։

Արտադրամիջոցների համաժողովրդական սեփականության դերի վերաբերյալ մարքս-լենինյան տեսության դեմ առավել նուրբ և նենգ ձևերով է պայքարում ժամանակակից ռևիզիոնիզմը։ Եթե մի կողմ թողնենք ռևիզիոնիստական կոնցեպցիաների մանրամասնությունների, վարիանտների տարբերությունները, ապա դրանց էությունը, բուն կորիզը հանգում է հետևյալին։ Արտադրամիջոցների հանրայնացումը, քանի որ դա տեղի է ունենում պետական ձևով, և ժողովրդի անունից պետության կողմից սեփականատիրոջ իրավունքի իրականացումը դեռևս սեփականությունը չի դարձնում անմիջական համաժողովրդական սեփականություն։ Դրանով է նշանավորվում իբր միայն

սոցիալիզմի ինչ-որ «վարչական փուլի» առաջացումը, երբ արտադրողների փոխարեն պետությունն է տնօրինում սեփականությունը, իրականացնում յուրացումը։ Սեփականության պետական տնօրինությունը չի փոխում արտադրողների դրությունը արտադրության հասարակական պրոցեսում. նրանք իբր առաջվա պես օտարված են արտադրամիջոցներից և չեն կարող իրականացնել հանրային սեփականատերերի իրենց իրավունքները։ Իսկ սոցիալիստական հանրայնացման բարձրագույն ձևը, ռևիզիոնիստական տեսաբանների կարծիքով, իսկական, անմիջականորեն հանրային սեփականությունն այն սեփականությունն է, որը հասարակությունը հանձնում է արտադրողների միություններին՝ ձեռնարկությունների աշխատողների կոլեկտիվներին լիակատար տնօրինման և օգտագործման համար (արտադրության արդյունքների յուրացման հետ միասին, այսինքն՝ փաստորեն հանձնում է նրանց լիակատար տնօրինությանը)։

Ո՞րն է այդ ռևիզիոնիստական կոնցեպցիայի արմատը։ Արտադրության սոցիալիստական եղանակի գործողության և զարգացման օբյեկտիվ պահանջմունքներից և օրենքներից կտրված լինելը, սոցիալիզմի ռեալ հակասությունների և դրանց լուծման ձևերի աղավաղումը։ Մարքսը, որը բացահայտեց և ապացուցեց սոցիալիստական հանրայնացման անհրաժեշտությունը, ընդգծում էր. «Արտադրամիջոցների ազգային կենտրոնացումը դառնալու է հասարակության ազգային հիմքը, որը կազմված է լինելու ընդհանուր և ռացիոնալ պլանով հասարակական աշխատանքով զբաղվող ազատ և հավասար արտադրողների միավորումից (К. Маркс и Ф. Энгельс. Соч.. т, 18, стр. 57)։ Էնգելսը խորտակիչ քննադատության ենթարկեց ինքնուրույն կոմունաների «սոցիալիստական» սեփականության դյուրինգյան ուտոպիան, որոնք, նրա ասելով, պետք է հանդես գային որպես արտադրամիջոցների անմիջական սեփականատերեր՝ ամբողջ հասարակության փոխարեն։ Լենինը, որը անխնա պայքար էր մղում անարխո-սինդիկալիզմի դեմ, ամենայն կտրականությամբ պնդում էր. «...Սոցիալիզմից լիակատար հրաժարում է նշանակում առանձին ֆաբրիկայի բանվորների սեփականության կամ առանձին պրոֆեսիայի բանվորների՝ իրենց հատուկ արտադրության սեփականության ամեն մի, ուղղակի, թե անուղղակի, օրինականացումը...» (Полн. собр. соч., т. 36, стр. 481)։

Բայց գուցե սոցիալիզմի զարգացման պատմական փորձը պահանջում է ճշգրտե՞լ մարքս-լենինյան տեսության այդ դրույթները։ Գուցե սոցիալիզմի ժամանակակից տնտեսական կառուցվածքի մեջ երևան են եկել այնպիսի գործոններ և պրոցեսներ, որոնք ստիպում են որոնել սոցիալիստական սեփականության ա՞յլ ձևեր։ Գուցե սեփականության ապակենտրոնացումը, ձեռնարկությունների կոլեկտիվների միջև նրա մասնատումը համապատասխանում է էկոնոմիկայի զարգացման ժամանակակից մակարդակի՞ն։ Տեսությունը և բազմահարուստ պրակտիկ փորձը միատեսակ և ընդ որում բացասական պատասխան են տալիս այս բոլոր հարցերին։

Ժամանակակից արտադրաուժերը նշանակում են արտադրության հասարակական բնույթի այնպիսի զարգացում, որը պահանջում է այդ պրոցեսի ժողովրդատնտեսական միասնություն, ձեռնարկությունների, նրանց միավորումների, արտադրության ճյուղերի և ոլորտների, տնտեսական շրջանների և այլ բնագավառների անխզելի պլանաչափ փոխադարձ համագործակցություն, կոորդինացում, փոխգործողություն ամբողջ երկրի շրջանակներում։ Արտադրու-



թյան հասարակական բնույթի զարգացման հենց ժամանակակից բարձր մակարդակից է բխում արտադրության վճռական միջոցների համազգային սեփականության նյութական անհրաժեշտությունը, այսինքն՝ արտադրողների՝ որպես արտադրամիջոցների սեփականատերերի ոչ թե լոկալ, խմբային, հասարակության ներսում մեկուսացած միավորումների անհրաժեշտությունը, այլ նրանց համաժողովրդական, համապետական միավորման անհրաժեշտությունը։ Հանրային սեփականությամբ միավորված արտադրողների միայն այդպիսի համազգային ասոցիացիան էլ կարող է ապահովել հասարակական արտադրության պլանաչափ պրոցեսը։

Հենց համաժողովրդական սեփականության անհրաժեշտությունը, ի հակակշիռ նրա լոկալ մասնատման ամեն տեսակ ուղղակի կամ անուղղակի ձևերի, ծնունդ է առնում նաև սոցիալ-տնտեսական գործոնների հետևանքով։ Բանը հետևյալն է։ Արտադրամիջոցների համաժողովրդական հանրայնացումն ընդգրկում է երկու կողմ։ Առաջին կողմն այն է, որ ամբողջ հասարակությունը, բոլոր արտադրողները դառնում են հանրային սեփականության մասնակիցներ։ Որպես սեփականատեր, հասարակության անդամներ, նրանք հավասար դրության մեջ են գտնվում։ Չկա որևէ դասակարգ, խումբ, խավ, որին մենաշնորհային կերպով պատկանեն արտադրամիջոցները։ Դրանք պատկանում են հասարակությանը։ Հենց դա էլ արտահայտվում է համաժողովրդական սեփականության այն առաջատար, վճռական կողմի մեջ, որը մենք կանվանեինք արտադրամիջոցների համաժողովրդական, անմիջական հասարակական յուրացում-տնօրինում։ Այսպիսով, հասարակության մեջ բոլոր արտադրողները՝ որպես միասնական կոլեկտիվ, հանդիսանում են արտադրամիջոցների տերերը, ինքը հասարակությունը (և ոչ թե ինչ-որ մի դասակարգ, խավ, մարդկանց խումբ) որոշում է արտադրամիջոցների և աշխատուժի միացման բոլոր պայմանները, ժողովրդի օգտին տնտեսական պրոցեսում նրանց գործունեության հասարակական, սոցիալ-տնտեսական բովանդակությունն ու ձևերը։

Բայց որպեսզի արտադրամիջոցները ռեալ գործեն, որպեսզի տեղի ունենա հասարակական վերարտադրության պրոցես, քիչ է միայն որոշել դրանց օգտագործման պայմաններն ու նպատակները, հարկավոր է դրանք գործողության մեջ դնել։ Այլ կերպ ասած, անհրաժեշտ է, որ աշխատողները, միավորված արտադրողները գործնականում կոնտակտի մեջ մտնեն արտադրամիջոցների հետ, իրականացնեն դրանց փաստական արտադրական օգտագործումը առանձին ձեռնարկություններում, որոնք տարբերվում են արտադրության նյութական միջոցների կատարելության աստիճանով, աշխատանքի մեքենայացման, տեսակների և պայմանների (նրա որակավորման, ծանրության, ֆիզիկական և մտավոր աշխատանքի զուգորդման) ու այլ պայմանների մակարդակով։ Արտադրամիջոցների այդ փաստական օգտագործումը գոյացնում է համաժողովրդական սեփականության մյուս էական կողմը, որը մենք կանվանեինք արտադրամիջոցների անմիջական հասարակական յուրացում—օգտագործում։ Միասնականորեն վերցրած, սեփականության հենց այդ երկու կողմերն էլ՝ յուրացում-տնօրինումը և յուրացում-օգտագործումը կազմում են սոցիալիստական հասարակական սեփականության բարդ կատեգորիան։

Դժվար չէ նկատել, որ հասարակական սեփականության երկու կողմերին հատուկ է ո՛չ միայն միասնությունը. նրանց հատուկ է նաև ներքին ոչ անտագոնիստական հակասություն։ Եթե սեփականության առաջատար հարաբերու-

թյան՝ յուրացում-տնօրինման գծով սոցիալիստական հասարակության բոլոր անդամները հավասար են, հասարակության միջոցով բոլորը արտադրամիջոցների հավասար սեփականատերեր են, ապա արտադրամիջոցների յուրացում-օգտագործման գծով նրանք հավասար չեն, քանի որ օգտագործում են արտադրության տարբեր միջոցներ ոչ միատեսակ պայմաններում, ծախսելով աշխատանքի տարբեր, սոցիալապես ոչ համասեռ տեսակներ։ Բայց այդ հակասությունը անտագոնիստական բնույթ չի կրում, քանի որ սեփականության առաջատար հարաբերության՝ յուրացում-տնօրինման գծով աշխատավորները հավասար են։ Ուստի, ապահովվում է հավասար վարձատրություն հավասար աշխատանքի համար, բաշխում ըստ աշխատանքի, և հասարակությունն իր տնտեսական հնարավորությունների համեմատ քայլ առ քայլ հավասարեցնում է արտադրության և աշխատանքի պայմանները, այսինքն՝ աստիճանաբար վերացնում է արտադրողների փաստական անհավասարությունը արտադրամիջոցների յուրացում-օգտագործման գծով։

Այս ներքին հակասության գոյության մեջ էլ երևան է գալիս արտադրամիջոցների սեփականության անմիջականորեն հասարակական համաժողովրդական միասնության սոցիալ-տնտեսական անհրաժեշտությունը, այդ սեփականության ազգային համապետական կենտրոնացման անհրաժեշտությունը։ Իսկապես, ի՞նչ կնշանակեր այդպիսի կենտրոնացումից հրաժարվելը, սեփականության մի մասի ամրացումը ձեռնարկությունների մեկուսացած կոլեկտիվներին՝ մենաշնորհային յուրացման-տնօրինման համար։ Դա կնշանակեր վերացնել արտադրամիջոցների յուրացման-տնօրինման գծով տնտեսական հավասարության և դրանց յուրացման-օգտագործման գծով անհավասարության հակասությունը լուծելու բուն հնարավորությունը։ Սեփականության մասնատումը կհասցներ այն բանին, որ հասարակական շահը կզրկվեր իր նյութական կողմից՝ արտադրողների համաժողովրդական միավորումից, որպես արտադրամիջոցների անմիջական հասարակական սեփականատիրոջից։ Ընդհանուր տնտեսական շահի տեղը կբռնեին խմբային արտադրողների մեկուսացված և միմյանց հակասող, մրցակցող շահերը։ Այսպիսին է սեփականության մասնատման, ըստ կոլեկտիվների նրա մեկուսացման տրամաբանությունը։

Կոմունիստական կուսակցությունները, առաջնորդվելով մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ, կատարելագործում են սոցիալիստական էկոնոմիկայի գործողության մեխանիզմը։ Նրանք այդ բանին հասնում են տնտեսավարման դեմոկրատական մեթոդները է՛լ ավելի զարգացնելու, սոցիալիզմի տնտեսական հարաբերությունների և նրա բարձր զարգացած ինդուստրիալ կառուցվածքի պահանջներին համապատասխան դեմոկրատական ցենտրալիզմի ձևերը զարգացնելու ճանապարհով, տնտեսավարման մեթոդները զարգացնելու, պլանավորումը կատարելագործելու, ձեռնարկությունների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը, նրանց լիակատար տնտեսական հաշվարկը ընդլայնելու, նյութական խթաններն ամրապնդելու ճանապարհով և այլ միջոցներով։

Իսկ ռևիզիոնիստները, ուռճացնելով դեմոկրատական ցենտրալիզմի խախտումների հետ առնչված թերություններն ու հիվանդագին երևույթները, հարվածներ են հասցնում բուն համաժողովրդական սեփականությանը։ Ռևիզիոնիստներին հատուկ մանրբուրժուական գաղափարախոսությունն ու հոգեբանությունը, որոնք, վերջին հաշվով, արմատավորվել են մանր ապրանքային



արտադրողների (գյուղացու, քաղաքային մանր բուրժուայի) հմտությունների մեջ, ինչպես նաև մտավոր ազատ պրոֆեսիաների (բուրժուական հասարակության մեջ իրենց դրության համաձայն մասնատված, ատոմացված պրոֆեսիաների) ներկայացուցիչների հմտությունների մեջ, նրանց տանում են դեպի սեփականության համաժողովրդական միավորման աշխատանքի համազգային միավորման ժխտում։ Հանրապետական սեփականության առկայությունը նրանք հայտարարում են տնտեսության բյուրոկրատացման աղբյուր, արտադրողների նախաձեռնությունը ճնշելու, նույնիսկ սեփականությունից նրանց իբր օտարման աղբյուր։ Այստեղից էլ արվում է այն հետևությունը, որ անհրաժեշտ է համաժողովրդական պետական-կենտրոնացված սեփականությունը փաստականորեն (եթե ոչ իրավաբանորեն) փոխարինել արտադրողների խմբերի սեփականությամբ։ Մեթոդոլոգիապես դա օբյեկտիվ սոցիալ-տնտեսական վերլուծության փոխարինումն է վոլյունտարիստական-սուբյեկտիվիստական կոնստրուկցիաներով։ Իսկ դասակարգային իմաստով դա նշանակում է՝ անցում սոցիալիզմի մանրբուրժուական մեկնաբանության ռելսերի վրա։

## ԱՇԽԱՏՈՒԺԻ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԻ ՄԵՋ ՆՐԱ ՆԵՐԳՐԱՎՄԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

Սեփականության հարցի հետ անխզելիորեն կապված է նաև սոցիալիզմի օրոք աշխատուժի և աշխատանքի բնույթի հարցը։ Համաժողովրդական մասշտաբով արտադրամիջոցների և աշխատուժի անմիջական հասարակական միացումը վերացնում է աշխատուժի, որպես ապրանքի, բնույթը։ Սոցիալիստական արտադրահարաբերությունների արմատական, խոր բովանդակությունը, դրանց բուն էությունը հենց այն է, որ որքանով արտադրամիջոցները դառնում են անմիջական համաժողովրդական ունեցվածք, այդքանով էլ աշխատուժը դադարում է մեկուսացված ունեցվածք՝ արտադրության միջոցներից զուրկ առանձին աշխատողների ապրանք լինելուց։ Դառնալով արտադրամիջոցների հասարակական սեփականատերեր, ազատ աշխատողները իրենց աշխատուժերը միացնում են՝ դարձնելով հասարակական-միավորված (անմիջական հասարակական) աշխատուժեր։

Կապիտալիստի կողմից բանվորի վարձկալումը կապիտալը և աշխատուժը միացնելու, բանվորի կողմից այն հօգուտ կապիտալիստի օտարելու, վարձկալման ժամանակամիջոցում այն կապիտալի գործող տարրի՝ փոփոխական կապիտալի վերլուծելու ակտն է։ Սոցիալիզմի օրոք աշխատուժի վարձկալումը աշխատուժի և նրա գործելու պայմանների (արտադրամիջոցների) միացման առաջնային ակտ չէ. դրանք միացած են արդեն հասարակական մասշտաբով, հասարակական սեփականության կողմից։ Ուստի, վարձկալումը այստեղ արտահայտում է ոչ թե մասնավոր անձանց հարաբերությունները, այլ աշխատուժը նրա գործողության կոնկրետ ոլորտի մեջ պլանաչափորեն մտցնելու հասարակական ակտը։ Ընդ որում, քանի որ աշխատողները հասարակական սեփականատերեր են, նրանք իրենց աշխատուժը չեն օտարում որպես ապրանք՝ առ ու վաճառքի հիմունքներով։ Արտադրության հասարակական պրոցեսում նրանք գործում են սկզբունքորեն այլ հիմունքներով՝ բաժին են ստանում սպառման այն ֆոնդից, որը պլանաչափորեն ստեղծվում է հասարակության կողմից, իր աշխատանքի հասարակական չափի համեմատ, ըստ աշխատանքի բաշխման հիմունքներով։ Այսպիսով, եթե կապիտալիստական վարձկալման ակտը աշխատողի համար աշխատուժի նրա անձնական

սեփականության իրացումն է, ապա սոցիալիստական վարձակալման ակտը աշխատողի համար արտադրության բոլոր գործոնների (արտադրամիջոցների և աշխատուժի) նրա հասարակական սեփականության իրացումն է։

Ռևիզիոնիզմի որոշ տեսաբաններ փորձում են վարձակալման սոցիալիստական ձևը մեկնաբանել որպես աշխատուժի առ ու վաճառք։ Դրա համար օգտագործվում է դարձյալ այն նույն կոնցեպցիան, որի համաձայն համաժողովրդական սեփականությունը հայտարարվում է պետության սեփականություն (ի հակակշիռ ժողովրդի անմիջական հասարակական սեփականության)։ Ելնելով դրանից, վարձակալման ձևը դիտվում է որպես աշխատուժի վաճառք արտադրամիջոցների սեփականատիրոջը՝ պետությանը։ Տվյալ կոնցեպցիայի տրամաբանության համաձայն, միայն սեփականության տնօրինման հանձնումը ձեռնարկությունների կոլեկտիվներին՝ կվերացնի վարձակալության հարաբերությունները։ Սակայն իրական է հենց հասարակական համաժողովրդական սեփականության մասնատումը, նրա վերածումը առանձին կոլեկտիվների սեփականության, որոնք ստեղծվում են ոչ թե կոոպերատիվ անդամության միջոցով, այլ շուկայական վարձակալման հիմունքներով, և դա հասցնում է այն բանին, որ ըստ աշխատանքի բաշխման քողի տակ թաքնվում է աշխատուժի արժեքի իրացումը։ Նա դադարում է անմիջականորեն հասարակականորեն միավորված աշխատուժ լինելուց, ուստի և աշխատողը գոյություն ունենալու համար, վաճառում է այն, որպես իր միակ ունեցվածքը։

Չի կարելի չնշել, որ վերջին ժամանակներս սովետական որոշ տնտեսագետներ նույնպես սոցիալիզմի համար առաջ են քաշում աշխատուժ-ապրանքի, վարձակալության՝ որպես առ ու վաճառքի, աշխատավարձի՝ որպես աշխատուժի արժեքի իրացման վերսիան։ Ընդ որում, որպես փաստարկ առաջ է քաշվում սոցիալիստական արտադրության ապրանքային բնույթը։ Քանի որ աշխատանքի արդյունքները ապրանքներն են, ապա աշխատուժը նույնպես ապրանք է, ասում են այդ վերսիայի կողմնակիցները։ Նման պնդումը տարրական մոլորության արդյունք է։ Աշխատանքի արդյունքների՝ որպես ապրանքների արտադրությունն ու իրացումը կարող են կատարվել և, ինչպես ցույց է տալիս պատմության փորձը, կատարվել են արտադրության ամենաբազմազան եղանակների պայմաններում, ընդ որում, բացի կապիտալիզմից, արտադրության այդ եղանակները բնավ կապված չեն եղել աշխատուժը ապրանքի վերածելու հետ. ընդհակառակը, դրանք բացառել են նրա ապրանքային բնույթը։ Հետևաբար, այն բանից, որ աշխատանքի արդյունքները ապրանք են, ամենևին չի բխում այն հետևությունը, թե աշխատուժը նույնպես ապրանք է։

Բայց բանը ոչ միայն և ոչ այնքան պատմական անալոգիաներն են։ Համաժողովրդական սոցիալիստական սեփականության հարաբերությունները աշխատանքի անմիջական հասարակական բնույթի առաջացման հիմքն են։ Սակայն սոցիալիզմը, որպես արտադրաեղանակ, աշխատանքի այդ բնույթի զարգացման սոսկ առաջին, նախնական աստիճանն է։ Սոցիալիստական աշխատանքը դեռևս պահանջում է նյութական խթաններ, նրան հատուկ են հակասությունները՝ ընդհանուր հասարակական աշխատանքի և արտադրության յուրաքանչյուր օղակում նրա վրա ծախսվող առանձնահատուկ սոցիալական ոչ-համասեռ աշխատանքի միջև (բանվորների և գյուղացիների, մտավոր և ֆիզիկական, որակյալ և ոչ որակյալ աշխատանք և այլն)։ Այս ամենն էլ, պայմանավորելով ձեռնարկությունների տնտեսական համեմատական անջատվածության անհրաժեշտությունը և ներքին ոչ-անտագոնիստական աշխատանքա-



յին հակասությունների լուծման անհրաժեշտությունը, վերջին հաշվով, հանգեցնում է այն բանին, որ աշխատանքի արդյունքներն արտադրվում և իրացվում են համարժեքային փոխանակման հիման վրա, ըստ արժողության, այսինքն՝ որպես ապրանքներ։

Իսկ ինչ վերաբերում է արտադրության այն գործոններին, որոնց միացումը որոշում է արտադրության բուն եղանակը և հանդիսանում սոցիալիզմի վճռական հիմքը, ապա դրանք ոչ միայն վաղօրոք միավորված են հասարակական սեփականության հարաբերություններով, այլև իրենց տնտեսական շրջանառության համար կարիք չունեն առ ու վաճառքի, օբյեկտիվորեն բացառված են դրանից։ Ֆաբրիկաները, գործարանները, կոլտնտեսությունները, իրենց գործող աշխատանքային միջոցների (հիմնական ֆոնդերի հետ միասին չեն վաճառվում և չեն գնվում և, հետևաբար, իրենցից չեն ներկայացնում ապրանք։ Աշխատուժը նույնպես օբյեկտիվորեն բացառված է առ ու վաճառքի հարաբերություններից, որովհետև անմիջականորեն հասարակական սեփականության իրացումը միավորված աշխատողների համար, ինչպես մենք տեսանք, ոչ թե նրա արժեքի իրացումն է, այլ հասարակության կողմից վերարտադրվող սպառման ֆոնդի բաշխմանը ըստ աշխատանքի մասնակցելը։ Բայց բոլոր արտադրամիջոցները, որպես արտադրության արդյունքներ, ապրանքներ են, որոնք իրենց առ ու վաճառքի համարժեքային-հատուցողական շրջանառությունն են կատարում տնտեսական հաշվարկով աշխատող բուն սոցիալիստական ձեռնարկությունների միջև։

Իհարկե, աշխատուժի սկզբունքորեն նոր, ոչ-ապրանքային բնույթը իր հետ բերում է բազմազան հարաբերությունների և երևույթների խոր փոփոխություններ՝ կապված հասարակական վերարտադրության պրոցեսում աշխատուժի գործողության հետ։ Եվ չի կարելի աչք փակել այն բանի վրա, որ դրա կողմից կյանքի կոչված շատ պրոբլեմներ սպասում են իրենց խոր, հանգամանալի հետազոտությանը, մասնավորապես այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են աշխատուժի ծախսումների փոխհատուցման, անհրաժեշտ արդյունքի կազմավորումը, աշխատավարձի էությունը և շարժումը, հասարակական անմիջական աշխատանքի ձևերը, աշխատանքի հասարակական բաժանումը և կոոպերացումը, աշխատանքի տնտեսական խթանների զուգորդումն ու փոխգործողությունը։ Առանձնապես հրամայական է դարձել այդ պրոբլեմների մշակումը ժամանակակից տնտեսական պրակտիկայի, տնտեսական ռեֆորմի խորացման ու հետագա զարգացման պայմաններում։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՆՄԻՋԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ՁԵՎԵՐԸ

Քանի որ սոցիալիզմի օրոք հասարակական արտադրության բոլոր տարրերը միացած են մի ամբողջական օրգանիզմի մեջ, որի միասնական սուբյեկտը ժողովուրդ-սեփականատերն է, դրանց գործողության և զարգացման տարերային ձևը հաղթահարվում է։ Էկոնոմիկայի շարժման տիրապետող ձևը դառնում է պլանաչափությունը։ Այստեղ մենք մոտենում ենք սոցիալիզմի ևս մի արմատական հիմքին՝ նրան հատուկ տնտեսական կապերի էությանը։

Մենք արդեն տեսանք, որ աշխատուժի և արտադրամիջոցների կապը այստեղ իրականացվում է առանց ապրանքափոխանակման։ Նա չի տարածվում նաև արտադրության վճռական իրային գործոնների վրա՝ աշխատանքի գործող միջոցների (հիմնական ֆոնդերի), ֆաբրիկաների, գործարանների, հողի

վրա։ Եվ այսպես, արտադրության գործոնները իրար հետ կապված են ուղղակի տնտեսական կապերով, պլանաչափ շրջանառություն են կատարում վերարտադրության պրոցեսում, առանց առ ու վաճառքի։ Համապատասխանաբար սոցիալիզմի համար վճռական նաև մյուս տնտեսական հարաբերությունները իրականացվում են ուղղակի պլանաչափ կապերի ձևով՝ հավելյալ արդյունքի հիմնական զանգվածների բաշխումը և վերաբաշխումը, ընդլայնված վերարտադրության հիմնական համամասնությունների սահմանումն ու ապահովումը և այլն։

Բայց սոցիալիզմի տնտեսական կապերը դրանով չեն սպառվում։ Ուղղակի կապերի հետ անխզելի միասնության մեջ, լրացնելով դրանք, գործում են նաև ապրանքա-արժեքային, անուղղակի կապեր։ Ուղղակի տնտեսական կապերի առկայությունն ու տիրապետությունը, երբ տնտեսական շրջանառության (նրա որոշակի ոլորտի՝ աշխատանքի արդյունքների շրջանառության) համար դեռ պահպանվում են ապրանքա-արժեքային, անուղղակի կապերը, վերջիններիս տալիս է նոր, մինչև սոցիալիզմը անհայտ բնույթ։ Նախ՝ տեղի ունենալով տիրապետող ուղղակի կապերի շրջանակներում, ապրանքային անուղղակի կապերն իրագործվում են պլանաչափորեն և ոչ տարերային։ Երկրորդ. դրանք սոցիալիստական էկոնոմիկայում լրացուցիչ կապերի դեր են խաղում, գոյացնելով աշխատանքի և արտադրության խթանման արժեքային ձևեր։ Երրորդ. դրանք հասարակական հաշվառման և իրայնացված աշխատանքի շարժման ընդհանուր ձև են ստեղծում այն արժեքի (նրա դրամական ձևի) օգնությամբ, որը գործում է ինչպես անուղղակի, այնպես էլ ուղղակի կապերում։

Այսպիսով, սոցիալիզմի օրոք արտադրության և աշխատանքի անմիջական հասարակական բնույթի նկատառումով արդեն տիրապետում է պլանաչափ տնտեսական կապի ուղղակի ձևը։ Իսկ միայն առաջին, սկզբնական պատճառի շնորհիվ, որին հասնում է նրանց այդ անմիջական հասարակական բնույթը, սոցիալիզմը որպես տնտեսական կապի լրացուցիչ ձև լայնորեն օգտագործում է ապրանքա-դրամական հարաբերությունները։

Ընդգծենք կապի երկու ձևերի անխզելի միասնությունը, նրանց փոխադդեցությունը և փոխգործունեությունը հասարակական վերարտադրության բոլոր փուլերում և օղակներում։ Այդ միասնությունը բխում է այն բանից, որ ապրանքային արտադրությունը, ապրանքա-դրամական հարաբերությունները ներքուստ անհրաժեշտ են, հատուկ արտադրության սոցիալիստական եղանակին։ Սոցիալիստական արտադրահարաբերությունների սիստեմը չի կարող լույս գնալ և լույս չի գնում, առանց ապրանքադրամական հարաբերությունների, անուղղակի ապրանքային կապերի, առանց դրանց օրենքի՝ արժեքի օրենքի այդ հարաբերությունների բոլոր օղակներում՝ թե ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ, և թե՛ ձեռնարկությունների մակարդակի վրա, որոշակի տեղ են գրավում ապրանքային կապերը, արժեքի օրենքը։ Հասարակական արդյունքի շրջանառությունը, որը տեղի է ունենում որպես ապրանքային շրջանառություն, ընդգրկում է հասարակական վերարտադրության բոլոր օղակներն ու փուլերը, հանդիսանում սոցիալիզմի տնտեսական հարաբերությունների սիստեմի իրականացման անհրաժեշտ ձևերից մեկը։

Միայն ելնելով արտադրության սոցիալիստական եղանակի սկզբունքային հիմքերից, հնարավոր է ճիշտ լուծել ժողովրդական տնտեսության ղեկավարման կենտրոնացված ձևերի և նրա օղակների՝ ձեռնարկությունների,



նրանց միավորումների և այլ բաժանմունքների տնտեսական ինքնուրույնության հարաբերակցության ու փոխադարձ կապի հարցը, կամ, ինչպես երբեմն ոչ ճիշտ ձևակերպվում է այդ պրոբլեմը, պլանի և շուկայի հարաբերակցության հարցը (պլանին հակադրված է ոչ թե շուկան, այլ պլանի բացակայությունը, տարերային գործողությունները. իսկ շուկան սոցիալիզմի օրոք հիմնականում պլանաչափ է)։

Ներքուստ սոցիալիզմին հատուկ պլանաչափության ապահովումը անհրաժեշտաբար ենթադրում է կենտրոնացված պլանավորում և հասարակական տնտեսության այն գործոնների, տարրերի ու պրոցեսների ղեկավարում, որոնցից կախված է ժողովրդատնտեսական գլխավոր համամասնությունների սահմանումը և սոցիալիստական հասարակության հիմնական նպատակների կատարումը։ Դրանց են վերաբերում հասարակական վերարտադրության բոլոր տարրերի հաշվեկշռվածության, տնտեսական աճի լավագույն տեմպերի պահպանումը, գիտատեխնիկական առաջադիմության ստրատեգիական ուղղությունների իրականացումը և այդ հիման վրա ժողովրդի պահանջմունքների առավելագույն հնարավոր բավարարումը, նրա բարեկեցության բարձրացումը և երկրի անվտանգության ապահովումը։

Այլ կերպ ասած, մակրոհամամասնության և մակրոտնտեսական պրոցեսների սահմանումն ու ապահովումը, այսինքն՝ այնպիսի համամասնությունների և պրոցեսների, որոնք ընդգրկում են ժողովրդական տնտեսությունն ամբողջությամբ վերցրած,— դա համապետական կենտրոնացված պլանավորման օբյեկտն է։ Դրա հետ մեկտեղ կենտրոնացված պլանի շրջանակներում միկրոհամամասնության, միկրոպրոցեսների իրականացումը, այնպիսի համամասնությունների և պրոցեսների, որոնք շոշափում են ձեռնարկությունների, նրանց միավորումների, շրջանների, ճյուղերի փոխհարաբերությունները, կարող է լինել արտադրության անմիջական օղակների ինքնուրույն տնտեսավարման օբյեկտը։ Այս դեպքում որոշվող պարամետրերը՝ միկրոհամամասնությունն ապահովող կենտրոնացված և պլանային առաջադրանքները և համապետական տնտեսական ներգործության անուղղակի լծակները՝ նորմատիվները, պլանային գները, հարկաբաշխիչ դրույթները, վարկը,— բավական են, որպեսզի ձեռնարկությունների ինքնուրույն տնտեսավարումը համապատասխանի ժողովրդատնտեսական պլանով և նրա առաջադրանքներով արտահայտված հասարակական պահանջմունքներին։

Տնտեսական ռեֆորմը ելնում է հենց կենտրոնացված պլանավորումն ու կառավարումը ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության, նրանց լիակատար տնտեսական հաշվարկի հետ զուգորդելու այդ սկզբունքից։ Ղեկավարման տնտեսական մեթոդները առաջին պլանի վրա դնելը, ձեռնարկությունների վարչական խնամակալությունից հրաժարվելը, դիրեկտիվային պլանային առաջադրանքները նվազագույնի հասցնելը, միջին և երկարաժամկետ հեռանկարային պլանավորումը ռեֆորմի համաձայն, զուգորդվում են ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ամրապնդման, նրանց իրավունքների ընդլայնման, տնտհաշվարկային միավորումների կազմակերպման, ձեռնարկությունների տնօրինության ներքո աշխատողների նյութական խթանման և արտադրության զարգացման խոշոր տնտհաշվարկային ֆոնդերի ստեղծման, պայմանագրային հարաբերությունների ամրապնդման և աստիճանաբար արտադրամիջոցների ֆոնդային բաշխման փոխարեն դրանց մե-

ծաքանակ առևտրի անցնելու, ճկուն գներ մտցնելու, շահույթի, վարկային հարաբերությունների դերի ուժեղացման լայն միջոցառումների հետ։

Սոցիալիստական տնտեսավարման տեսական նկատառումները և պրակտիկան համոզիչ կերպով հերքում են բուրժուական և ռևիզիոնիստական հերյուրանքները նաև սոցիալիզմի օրոք արտադրության բնույթի, նրան հատուկ տնտեսական կապերի ձևերի հարցում։ Բուրժուական տնտեսագետները հակված են սոցիալիզմը մեկնաբանել որպես բացարձակորեն ցենտրալիստական «հրամանատարական» էկոնոմիկա, որն անհամատեղելի է շուկայի հետ, իսկ շուկա ասելով նրանք, իհարկե, հասկանում են միայն տարերային շուկան։ «Կամ սոցիալիզմ, կամ շուկա»,— կտրականապես ձևակերպում է կեղծ ալտերնատիվը բուրժուական տնտեսագետ Լ. Միզեսը։ Նրան կրկնում է կոմունիստական էկոնոմիկայի «մասնագետ» Պ. Ուայլսը, որը գտնում է, որ կամ գործում է պահանջարկի և առաջարկի օրենքի տարերային խաղը կարգավորող շուկան, կամ կենտրոնացված պլանավորումը, երրորդը տրված չէ։ Այսպիսին է բուրժուական տնտեսագետների տիրապետող կոնցեպցիան։ Սոցիալիզմի վերաբերյալ ռևիզիոնիստական հայացքների արմատներն էլ հենց գտնվում են այդտեղ։ Քանի որ սոցիալիզմը օգտագործում է ապրանքային արտադրությունը, արժեքային լծակները, քանի որ ռևիզիոնիստները սոցիալիզմը ներկայացնում են որպես «շուկայական սոցիալիզմ» ու այն դիտում որպես մի էկոնոմիկա, որտեղ տիրապետում են ապրանքա-արժեքային հարաբերությունները. տնտեսական պրոցեսը համապատասխանաբար կարգավորվում է արժեքի օրենքով։

«Շուկայական սոցիալիզմի» կոնցեպցիայի հիմքում ընկած է արտադրության մասնակից ձեռնարկությունների մեկուսացման բացարձակացումը, դրանք որպես անջատ-անջատ սեփականատերեր դիտելը, որոնք տնտեսավարում են իրենց հաշվին և տարերայնորեն մտցված են շուկայական մրցակցային պայքարի մեջ։ Այդ կոնցեպցիան ժխտում է դիրեկտիվային կենտրոնացված պլանավորման անհրաժեշտությունը։ Դրա պատկերմամբ պլանը շուկայական ուժերի խաղի պրոգնոզ-պլանն է, ինդիկատիվ պլան (պլան-ինֆորմացիա, ցանկություն)։ Նրա համար էկոնոմիկայի կանոնավորիչը միջճյուղային և ներճյուղային մրցակցությունն է արժեքի օրենքի հիման վրա, որը լրացվում է էկոնոմիկայի վրա անուղղակի ներգործությամբ միայն (ներդրումների պետական քաղաքականությունը, վարկային քաղաքականությունը, հարկային օրենսդրությունը)։

Ակներևաբար, արժեքի օրենքը որպես էկոնոմիկայի համամասնությունների վճռական կարգավորիչ մեկնաբանելու, սոցիալիստական հասարակության մեջ ապրանքա-դրամական հարաբերությունները ըստ դրանց տարերային տարբերակի պատկերելու ամեն մի փորձ սոցիալիզմի օրոք տնտեսական զարգացման պրոցեսի խեղաթյուրումն է։ Քննության առնվող հայացքը բխում է օբյեկտիվի և տարերայինի շփոթումից, մեկի և մյուսի նույնացումից։ Քանի որ էկոնոմիկայի օրենքները օբյեկտիվ են, ապա նրանք դրա շնորհիվ իբր տարերային են։ Իսկ հասարակությանը մնում է միայն «պլանաչափորեն» հաշվի առնել դրանց գործողությունները, կուրորեն հետևել դրանց, բարենպաստ պայմաններ ստեղծելով էկոնոմիկայի օրենքների ավտոմատիկ գործողության համար։ Իրականում «տարերային-շուկայական սոցիալիզմի» այդպիսի կոնցեպցիան իսկական պլանաչափությունը նենգափոխում է կեղծ պլանաչափությամբ, որը կողմնորոշվում է դեպի տարերային զարգացման արդյունքները։ Իսկական պլանաչափությունը բացառում է տնտեսական օրենքների տարերային գործողությունները։ Խորապես սխալ կլիներ կարծել, թե օրենքների գործողության տարերային արդյունքը նույնական է նրանց գործողության պլանաչափ արդյունքին։ Չէ՞ որ օրենքների տարերային դրսևորումը դրանց «իրականացումն է չիրականացման միջոցով», երբ «արտադրության առանձին ճյուղերի համամասնությունը,— Մարքսի արտահայտությամբ,— վերարտադրվում է անհամամասնությունից, որպես մշտական պրոցես» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 25, ч. 1, стр. 282)։ Օրենքների տարերային գործողություններն անխուսափելիորեն ժողովրդական տնտեսությանը հսկայական վնասներ են պատճառում։ Միայն տնտեսական օրենքների պլանաչափ գործողության և փոխգործողության պրոցեսն է պայմաններ ստեղծում դրանց ակտիվ օգտագործման համար՝ նպատակ ունենալով հասնել տնտեսական առաջադիմության ըստ հնարավորին առավել օպտիմալ արդյունքների։

Սոցիալիզմի էկոնոմիկայի բնույթն աղավաղող մյուս տեսությունը «մաքուր սոցիալիզմի» ձախլիկ-դոգմատիկ տեսությունն է։ Դրա կողմնակիցները, դոգմատիկ կերպով մեկնաբանելով մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների ասույթները, ժխտում են ապրանքային արտադրությունը սոցիալիզմի օրոք, ապրանքա-դրամական հարաբերությունների, արժեքի օրենքի անհրաժեշտությունը։

Մարքսը և Էնգելսը կարծում էին, որ սոցիալիզմին, որպես անմիջական հասարակական արտադրության հասարակարգի, հարկավոր չեն լինի ապրանքային արտադրությունը, արժեքը, փողը։ Իրականում, քանի որ Մարքսի և Էնգելսի տրամադրության տակ կար միայն մասնավոր սեփականության բազայի վրա ապրանքային հարաբերությունների զարգացման փորձը, միակ գիտական հետևությունը, որը կարելի էր այդ հիման վրա անել, այն էր, որ մասնավոր սեփականության փոխարինումը հավասարազոր կլինի ապրանքային հարաբերությունների անկման։

Սակայն սոցիալիզմի զարգացման փորձը ցույց տվեց ապրանքային արտադրության և ապրանքա-դրամական հարաբերությունների անհրաժեշտությունը նաև սոցիալիստական հասարակական սեփականության բազայի վրա։ Արդեն անցման ժամանակաշրջանի հարաբերությունների լենինյան վերլուծությունն տվել է այդ պրոբլեմի նոր մեկնաբանության մեթոդոլոգիական հիմքերը։ Հենց սոցիալիզմի զարգացման ժամանակաշրջանում փողի, տնտեսական հաշվարկի, անձնական նյութական շահագրգռվածության խթանների դերի, ապրանքի դիալեկտիկայի լենինյան վերլուծությունը մեթոդոլոգիական նախադրյալներ ստեղծեց սոցիալիզմի օրոք ապրանքային արտադրության անհրաժեշտությունն ըմբռնելու համար։ Երբ կենդանի պրակտիկայի փորձը կուտակվեց, համապատասխան տեսական հետևություն արվեց նաև սոցիալիզմի քաղաքատնտեսության կողմից։

Իսկ «մաքուր սոցիալիզմի» տեսության կողմնակիցները, կառչելով ցիտատներից, դոգմատիկ կերպով ժխտում են սոցիալիստական իրականության ռեալ փաստերը։ Սոցիալիզմի օրոք ապրանքային արտադրության ժխտումը ձախլիկ բնույթ է կրում, որովհետև կողմնորոշում է դեպի սոցիալիզմի օբյեկտիվ հարաբերությունների խախտումը, հնարավոր համարելով ուղղակի ցատկել-հասնել լիակատար կոմունիզմին։ Իսկ դա ոչ այլ ինչ է, եթե ոչ արկածախնդրություն քաղաքականության մեջ և էկոնոմիկայում, որի կործանարա-

րության օրինակը տալիս է Մաո Ցզե-դունի խմբի պրակտիկան Չինաստանում։ Սոցիալիզմը ոչ-լիակատար կոմունիզմն է, ուսուցանել են Մարքսը և Լենինը։ Եվ նրան հատուկ են բազմաթիվ գծեր, որոնք արդեն չի ունենալու զարգացած կոմունիզմի էկոնոմիկան, դրանց թվում այնպիսի գծեր, ինչպիսին է աշխատանքի սոցիալական անհամասեռությունը, տնտեսական որոշակի անհավասարության առկայությունը, ըստ աշխատանքի բաշխումը, ապրանքային արտադրությունը։ Բայց քանի որ այդ գծերը ներհատուկ են սոցիալիզմին, տնտեսական պրակտիկան պետք է դրանց հետ հաշվի նստի։ Տնտեսավարման ձևերի կատարելագործման ժամանակակից միջոցները լիովին հաշվի են առնում սոցիալիզմի պատմական առանձնահատկությունների ամբողջ միագումարը։ Հենց դա էլ նրանց կենսականությունն է։

Վերը քննության առնվեցին սոցիալիզմի տնտեսական տեսության սոսկ մի քանի ընդհանուր սկզբունքային հիմքերը՝ համաժողովրդական սեփականության հարցը, աշխատուժի բնույթի, պլանաչափության և տնտեսական կապերի հարցը, այսինքն՝ սոցիալիստական ժողովրդական տնտեսության գործողության տնտեսական մեխանիզմի հիմունքները։ Բայց դրանց նույնիսկ համառոտակի քննարկումը ի հայտ է բերում գլխավորը՝ արտադրության սոցիալիստական եղանակի տնտեսական հիմունքների մոնիզմը, այդ հիմունքների, դրանց գործողությանն ու զարգացմանը հատուկ օրենքների անսասան պահպանման անհրաժեշտությունը, որպեսզի անխափան կերպով զարգանա սոցիալիզմի էկոնոմիկան, ավելի ու ավելի լիակատար չափով բացահայտվեն նրան բնորոշ ներքին հզոր ուժերը։

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ «КОММУНИСТ» ԱՄՍԱԳԻՐ*
*№ 11, 1969 թ.*

---

Բ. Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊՐԱԿՏԻԿԱՆ

Մեր երկրում կոմունիստական շինարարության պրակտիկայում մեծ տարածում են գտնում սոցիոլոգիական կոնկրետ հետազոտությունները։ Ուրախալի է նշել, որ այդ հետազոտությունները կատարվում են կուսակցական և պետական մարմինների ակտիվ աջակցությամբ։

Հայտնի է, որ սոցիոլոգիան հասարակական կյանքի ուսումնասիրման կողմերից է, սոցիալական կոնկրետ երևույթների բազմակողմանի վերլուծության հուսալի միջոցը։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները նկատել են, որ պատմության ընթացքը շատ բանով կախված է ինչպես տնտեսական պայմաններից, որոնք, վերջին հաշվով, որոշող են հանդիսանում, այնպես էլ քաղաքական գործոններից, ավանդույթներից, կենսական հանգամանքներից, որոնք ձևավորում են յուրաքանչյուր մարդու կամքը և գիտակցությունը։ «Մարքսը և ես,— գրել է Էնգելսը,— մեղավոր էինք մասամբ այն բանում, որ երիտասարդությունը երբեմն տնտեսական կողմին ավելի մեծ նշանակություն էր տալիս, քան այդ հարկավոր էր։ Մենք ստիպված էինք լինում, առարկելով մեր հակառակորդներին, ընդգծել այն գլխավոր սկզբունքը, որը նրանք ժխտում էին, և միշտ չէ որ բավականաչափ ժամանակ, տեղ ու առիթ են գտնվում պատշաճը հատուցելու փոխներգործությանը մասնակցող նաև մյուս մոմենտներին» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկհատորյակ, հատոր II, էջ 630, Հայպետհրատ, 1950)։

ՍՄԿԿ XXIII համագումարում նշվեց, որ սոցիոլոգիական հետազոտություններն օրավուր ավելի մեծ դեր են խաղում քաղաքական, արտադրական, դաստիարակչական հարցերի լուծման մեջ։ Գիտական կոլեկտիվներ են ներգրավվում հասարակական կյանքի սոցիալական պրոբլեմների ուսումնասիրման ուղղությամբ։ Մոսկվայում, Լենինգրադում, Նովոսիբիրսկում, Սվերդլովսկում, Կիևում, Ռիգայում, Մինսկում, Քիշինևում, Լվովում, Պերմում, Վիլնյուսում, Ուֆայում և շատ ուրիշ քաղաքներում ստեղծված են սոցիոլոգիայի տարբեր բնագավառները հետազոտող գիտական հիմնարկներ։

ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի և Նովոսիբիրսկի պետական համալսարանի տնտեսական-մաթեմատիկական հետազոտությունների լաբորատորիաներում մշակված են մի քանի ծրագրեր՝ սոցիալական ուսումնասիրությունների մասսայական վիճակագրական տվյալները հաշվողական մեքենաներով մշակելու համար։ Այդ մեթոդները օգտագործվել են աշխատանքի տեղավորման, մասնագիտության ընտրության, բնակչության միգրացիայի, բանվորների աշխատավարձի և այլ սոցիալական պրոբլեմների հետազոտության ժամանակ։

Հետաքրքրական աշխատանքներ են կատարվում ՍՍՀՄ ԳԱ Մոսկվայի սոցիոլոգիայի ինստիտուտում, որտեղ սոցիոլոգիական ուսումնասիրության կենսական խնդիրներից է մինիստրությունների, վարչությունների, խոշոր ձեռնարկությունների ղեկավար կադրերի ընտրության, ուսուցման և տեղաբաշխման պրոբլեմը։

Լենինգրադի համալսարանին կից սոցիալական ուսումնասիրությունների գիտահետազոտական ինստիտուտում այլ սոցիալական հետազոտությունների հետ մեկտեղ, անց են կացվում գաղափարական աշխատանքի արդյունավետության բարձրացման հետ կապված ուսումնասիրություններ։ Մոլդավական ՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի սոցիոլոգիական հետազոտությունների սեկտորում մի խումբ գիտնականներ 8 տարի շարունակ աշխատում են գյուղի սոցիալական կառուցվածքի պրոբլեմի վրա, որի արդյունքները հրապարակված են «Աշխատանքը և գիտակցականությունը», «Ժամանակակից կոլտնտեսականի հոգևոր կերպարը» և այլ աշխատություններում։ Ռիգայի համալսարանի փիլիսոփայության և սոցիոլոգիայի ամբիոնին կից գիտնականների մի մեծ խումբ ուսումնասիրում է աշխատուժի հոսունության պրոբլեմը ձկնարդյունաբերության սիստեմում, միաժամանակ քննելով կրթության սոցիալական հարցերը։ Լվովում գիտահետազոտական կազմակերպությունների լայն ցանցը (համալսարան, էկոնոմիկայի ինստիտուտ, հասարակական գիտությունների ինստիտուտ և այլն) հաջողությամբ աշխատում է այնպիսի պրոբլեմների վրա, ինչպիսիք են Արևմտյան Ուկրաինայում բարձրագույն կրթության սոցիալական ասպեկտները, բնակչության հոգևոր կյանքի ձևավորումը, ինչպես նաև սոցիալական պլանավորման և ղեկավարման հարցը, որը ուսումնասիրվում է Լվովի հեռուստացույցների գործարանում։

Սոցիալական կոնկրետ հետազոտությունները, որպես կանոն, կապված են նախնական մեծ ինֆորմացիա հավաքելու հետ (սովորաբար հարցաթերթիկների, հարցազրույցների, դիտարկումների միջոցով)։ Մասսայական ամբողջությունների վերաբերյալ նյութերի մշակման ու վերլուծման կարևոր միջոց է մաթեմատիկան, մասնավորապես, մաթեմատիկական վիճակագրությունը։

Մաթեմատիկական մեթոդները կարող են օգտագործվել սոցիոլոգիական հետազոտությունների բոլոր փուլերում։ Հետազոտման օբյեկտի որոշման ստադիայում առաջանում է այդ օբյեկտի ազդեցության ոլորտի ընտրության պրոբլեմը։ Հետազոտման ընթացքում մաթեմատիկան հնարավորություն է տալիս կիրառել առավել խնայողական և ճշգրիտ մեթոդներ։ Վերջապես, մեծ է մաթեմատիկայի դերը ստացված փաստերը մշակելու ժամանակ։

Բազմագործոն սոցիալական երևույթների էությունը գիտական մեթոդների միջոցով բացահայտելը պահանջում է պետական մոտեցում։ Պրակտիկայում պատահում են դեպքեր, երբ փորձեր են կատարվում առանձին փաստերի հիման վրա ընդհանրացումներ կատարել, ընդհանրացումներ, որոնք ակնհայտորեն անճիշտ են, ոչ գիտական։ «Հասարակական երևույթների բնա-



գավառում չկա ավելի տարածված և ավելի սնանկ պրիոմ, քան առանձին փաստիկներ դուրս կորզելը, օրինակներ խաղալը... Փաստերը, եթե դրանք վերցվեն իրենց ամբողջությամբ, իրենց կապի մեջ,— ոչ միայն «համառ», այլև անվերապահորեն ապացուցիչ բան են։ ...Անհրաժեշտ է վերցնել ոչ թե առանձին փաստեր, այլ քննարկվող հարցին վերաբերող փաստերի ամբողջ միագումարը, առանց որևէ բացառության, որովհետև այլ կերպ անխուսափելիորեն կառաջանա կասկածանք, և միանգամայն օրինական կասկածանք, որ փաստերը ընտրված կամ հավաքված են կամայականորեն, որ իրենց ամբողջությամբ պատմական երևույթների օբյեկտիվ կապի և փոխադարձ կախման փոխարեն հրամցվում է «սուբյեկտիվ» հերյուրանք՝ գուցե և մի կեղտոտ գործ արդարացնելու համար։ Չէ՛ որ դա լինում է... ավելի հաճախ քան թվում է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 363)։

Սոցիալական կոնկրետ հետազոտությունների, ինչպես և այլ հասարակական գիտությունների մեթոդոլոգիական բանալին պատմական մատերիալիզմն է, հասարակական կյանքի մատերիալիստական ըմբռնումը։ Պատմական մատերիալիզմը մարքս-լենինյան սոցիոլոգիան է, որը ստեղծվել ու մշակվել է գիտական կոմունիզմի հիմնադիրների կողմից, զարգացել ու հարստացել հասարակական պրակտիկայից բխող նոր դրույթներով ու ընդհանրացումներով։ Մարքս-լենինյան սոցիոլոգիան չի սահմանափակվում հասարակության զարգացման ընդհանուր օրինաչափությունների բացահայտմամբ ու ուսումնասիրությամբ։ Այն միաժամանակ տեսական ուղենիշ է քննելու սոցիալական իրականության կոնկրետ երևույթներն իրենց բազմաբնույթ կապերի ու կապակցությունների մեջ։

Հարկ է խոստովանել, որ մեր հանրապետությունում անցկացվող սոցիոլոգիական հետազոտությունների ո՛չ մասշտաբները, ո՛չ էլ հատկապես դրանց խորությունը դեռևս չեն համապատասխանում կյանքի պահանջներին։ Կուսակցությունը խնդիր է դնում՝ մշտապես ամրապնդել հասարակական գիտության կապը կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ։ Հայտնի է, որ որոշակի սոցիալական և գաղափարական հետևանքներ չունեցող տնտեսական որոշումներ չեն կարող լինել։ Եվ ընդհակառակը, չի կարող լինել այնպիսի գաղափարական քայլ, որը, վերջիվերջո, չազդի տնտեսական կյանքի վրա։ Անհրաժեշտ է զգաստ և ողջախոհ լինել տեսնելու ընդունվող որոշումների հասարակական հետևանքները։ Հանրապետության հասարակական կյանքն իր բազմազան դրսևորումներով գիտականորեն ղեկավարելու համար անհրաժեշտ են նոր մեթոդներ ու եղանակներ։ Այդ բնագավառում ետ մնալը բացասաբար է ազդում ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացման ու կատարելագործման վրա։

Մեր հանրապետության սոցիոլոգիական հետազոտությունների պրոբլեմատիկայում առաջնահերթ են այն հարցերը, որոնք կապված են հասարակական արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։ Այդ կապակցությամբ սոցիոլոգիական մտքի առջև ծառանում են շատ պրոբլեմներ։ Վերցնենք, օրինակ, կադրերի հոսունությունը։ Տնտեսագետների հաշվարկներով երկրում հոսունությունից առաջացած կորուստները տարեկան կազմում են 3 միլիարդ ռուբլի։

Հանրապետության մի շարք քիմիական ձեռնարկությունների նախնական ուսումնասիրությունը ցույց է տվել, որ այդտեղ մեծ է բանվորական ուժի հոսունությունը։ Դրա պատճառների բացահայտումը և կրճատելու մեթոդների

մշակումը կենսական խնդիր է, որի լուծումը կարող է տալ տնտեսական նշանակալի օգուտ։

Մեր հանրապետությունում կարևորագույն խնդիրներից է աշխատանքային ռեսուրսների ճիշտ պլանավորումը։ Այդ ռեսուրսները սովորական ռեսուրսներ չեն։ Դրանք ոչ միայն գլխավոր արտադրողական, այլև գլխավոր սպառողական ուժն են, ոչ միայն միջոց են, այլև նպատակ։ Ուստի, դրանց նկատմամբ պետք է ունենալ համակողմանի սոցիոլոգիական մոտեցում, թափանցել սուբյեկտի ոլորտը, ձեռնարկել հասարակության տարբեր սոցիալական խմբերի վարքագծի շարժառիթների ուսումնասիրությունը։

Մեր պայմաններում աշխատանքի տեղավորման պրոբլեմն ունի տերիտորիալ, ճյուղային և պրոֆեսիոնալ ասպեկտներ։ Ներկայումս հանրապետության տերիտորիայում աշխատանքային ռեզերվները բաշխված են անհավասարաչափ։ Որոշ շրջաններում ու քաղաքներում զգացվում է բանվորական ուժի պակաս, մինչդեռ առանձին վայրերում նկատվում է ավելցուկ։

Մի ժամանակ գոյություն ուներ «ավտոմատիզմի» կամ ինքնահոսի յուրատեսակ տեսություն, որի համաձայն արտադրության միջոցների հանրայնացումն ինքնին ավտոմատիկ կերպով ապահովում է բնակչության լրիվ զբաղվածությունը։ Իսկ իրականում ոչ մի ավտոմատիզմ չկա, քանի որ արտադրության միջոցների հանրային սեփականությունը միայն նախադրյալներ, հնարավորություններ է ստեղծում այդ պրոբլեմների լուծման համար։ Արտադրության սոցիալիստական եղանակի այդ առավելություններն իրագործելու համար հարկավոր է ամենօրյա փութաջան աշխատանք։

Սոցիալական հետազոտությունները մեծ նշանակություն ունեն նաև բնակչության տեղաշարժը ղեկավարելու համար։ ՍՍՀՄ-ի բնակչության միգրացիայի ուսումնասիրման փորձը ցույց է տալիս, որ սոցիալիզմի պայմաններում միգրացիան բացառիկ բարդ երևույթ է։ Միգրացիոն պրոցեսների թերի ուսումնասիրությունը և շատ անհրաժեշտ ելակետային տվյալների բացակայությունը ներկայումս հնարավորություն չի տալիս ղեկավարել միգրացիան՝ նրա ամբողջ բարդությամբ վերցրած։

Բնակչության միգրացիան էական ազդեցություն է ունենում հասարակության կյանքի շատ կողմերի վրա։ Այսպես, փոփոխելով աշխատանքային ռեսուրսների տեղաբաշխումը, այն նոր պայմաններ է ստեղծում ժողտնտեսության մեջ բանվորական ուժի օգտագործման համար, մի հանգամանք, որն ազդում է հասարակական աշխատանքի արտադրողականության վրա. փոփոխելով սպառողների տեղաբաշխումը, այն ազդում է բաշխման և փոխանակման ծախսերի մակարդակի վրա։ Հասարակական սոցիալական կառուցվածքում տեղի ունեցող փոփոխությունները կապված են զբաղվածության մասնաճյուղային ստրուկտուրայում կատարվող տեղաշարժերի հետ, որոնք, իրենց հերթին, սերտորեն կապված են քաղաքի և գյուղի միջև բնակչության վերաբաշխման հետ։ Անվիճելի է, որ պլանային տնտեսության պայմաններում սկզբունքորեն հնարավոր և գործնականորեն հասանելի է բնակչության միգրացիայի կառավարումը։

Մեր հանրապետության համար հասարակական կարևոր պրոբլեմներից է երիտասարդության սոցիալական հարմարվածությունը։ Ինչպիսի՞ն են երիտասարդության անձնական պլանները նախքան աշխատանքային կյանք մտնելը։ Ինչպե՞ս են դրանք իրագործվում։ Ի՞նչ գիտեն պատանիներն ու աղջիկները նոր մասնագիտությունների մասին։ Ի՞նչ մասսայականություն ունեն



մասնագիտությունները և ի՞նչ զբաղմունք են ընտրում երիտասարդության տարբեր խմբերը։ Այս հարցերն ունեն ոչ միայն ճանաչողական բնույթ։ Դրանց հաջող լուծումը միշտ տալիս է ինչպես սոցիալական, այնպես էլ տնտեսական արդյունք։ Մի կողմից քչանում են սխալների, անբավարարվածության, հիասթափության հնարավորությունները, որ կապված են պատանիների ու աղջիկների՝ կյանքում կատարած առաջին ինքնուրույն քայլերի հետ։ Դա մեր հասարակության մեջ օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում տարբեր տեսակի հակահասարակական երևույթների (հանցագործություններ, ալկոհոլիզմ և այլն) կրճատման համար։ Մյուս կողմից ապահովվում է երիտասարդության ավելի արագ և էֆեկտիվ ներգրավումն աշխատանքային պրոցեսի մեջ։ Ճիշտ է, տնտեսական էֆեկտը այստեղ միշտ չէ, որ աչքի է զարնում։ Նկատի չունենալով այդ և սխալ պատկերացնելով խնայողության արժեքային մեծությունը, որոշ ընկերներ սոցիոլոգիական հետազոտությունների համար կատարվող ծախսերը շռայլություն են համարում, հրաժարվելով շատ էական խնդիրների լուսաբանումից, որի պատճառով մեծ կորուստներ ենք կրում։

Գաղափարական աշխատանքի մակարդակի բարձրացման գործում դժվար է գերագնահատել սոցիոլոգիական հետազոտությունների դերը։ Հասարակական կարծիքի հայտածման ուղղությամբ կատարված հետազոտությունները հնարավորություն են տալիս կատարելագործելու մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, գեղարվեստական գրականության, կերպարվեստի, կինոյի գաղափարական ազդեցության ներգործությունը։ «Արվեստը պատկանում է ժողովրդին» լենինյան լոզունգը նշանակում է այն, որ արվեստի երկերը ստեղծվում են ժողովրդի համար և կոչված են ծառայելու ժողովրդին։ Այս առումով օգտակար կլիներ, եթե գրականագետները, արվեստագետները բնակչության զանազան սոցիալական խմբերի շրջանում սիստեմատիկաբար կազմակերպեին լուրջ հետազոտություններ և բացահայտեին այդ խմբերի վերաբերմունքն այս կամ այն ստեղծագործության նկատմամբ։

Նոր մարդու դաստիարակությունը, մարդկային գիտակցության վերափոխումը ոչ միայն կարևոր, այլև բարդ պրոբլեմ է։ Պատահական չէ, որ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը հատուկ ուշադրություն էին դարձնում անհատի պրոբլեմի, մարդու ձևավորման օրինաչափությունների վրա։ Նրանք տվեցին անհատի սկզբունքորեն նոր սահմանումը, ցույց տալով, որ «մարդու էությունն առանձին անհատին բնորոշ վերացականությունը չէ։ Իրականում դա բոլոր հասարակական հարաբերությունների ամբողջությունն է» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 3, стр. 3.)։

Ժամանակակից պայմաններում հույժ կենսական է կոլեկտիվի պրոբլեմների հետազոտումը։ Ղեկավար, կոլեգա, ենթակա պրոբլեմը կարևորագույն օղակ է հանդիսանում կոմունիստական դաստիարակության խնդրում։ Եթե առաջ հարցը գլխավորապես դրվում էր տվյալ միջավայրում առանձին մարդու վարքի մասին, ապա այժմ,— արդարացիորեն նշում է Վ. Ի. Տերեշչենկոն,— պակաս կարևոր չի դարձել բուն միջավայրի վարքի հարցը, այսինքն՝ այն կոլեկտիվի վարքի հարցը, որի մասն է հանդիսանում աշխատավորը՝ տվյալ ձեռնարկության շրջանակներում (В. И. Терешченко. Организация и управления (опыт США)։

Հարկավոր է նշել, որ այդ բոլոր հարցերի լուծման պրոբլեմը ոչ թե այն է, թե ինչ է պետք ուսումնասիրել, այլ այն, թե ինչպե՞ս, ի՞նչ մեթոդներով,

ի՞նչ կոնկրետ նպատակներ հետապնդելով պետք է կատարել հետազոտությունները։

Սոցիոլոգիական հետազոտությունների կոնկրետ մեթոդներից են՝ վիճակագրական տվյալների վերլուծությունը, հարցաթերթիկների կազմելը, հարցազրույցը, դիտարկման մեթոդը, փաստաթղթերի ուսումնասիրման մեթոդը, սոցիալական էքսպերիմենտի մեթոդը, մաթեմատիկական մեթոդը և բնական գիտությունների այլ մեթոդներ։ Սոցիոլոգիական հետազոտությունների խորացման կարևորագույն նախադրյալն է վիճակագրական ինֆորմացիայի ընդլայնումը և նրա հմուտ մշակումը։ Սոցիալական ինֆորմացիայի հավաքումը իրականացվում է ինչպես պետական սիստեմի, այնպես էլ գիտահետազոտական կենտրոնների, մինիստրությունների, գերատեսչությունների, կուսակցական, արհմիութենական և այլ կազմակերպությունների միջոցով։ Անհրաժեշտ է ընդլայնել հանրապետական վիճակագրական մարմինների կողմից ուսումնասիրվող սոցիալական վիճակագրական պրոբլեմների շրջանը։ Այժմ արդեն բավական չեն սոսկ գումարային ամփոփիչ ցուցանիշները։

Հաշվի առնելով երկրում սոցիոլոգիական հետազոտությունների ավելի լայն կիրառման և ամբողջ Սովետական Միության մասշտաբով այդ գործունեության կոորդինացման անհրաժեշտությունը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությունը որոշում ընդունեց սոցիոլոգիական կոնկրետ հետազոտությունների ինստիտուտ ստեղծելու մասին։

Ներկայումս այդ ինստիտուտն արդեն ձևավորված է և սկսել է իր աշխատանքը։ Գիտահետազոտական աշխատանքի հետ մեկտեղ ինստիտուտի վրա են դրված կոորդինացիոն և մեթոդական կենտրոնի պարտականությունները՝ կապ հաստատելով հանրապետական ու մարզային համանման հիմնարկների հետ։ Խիստ անհրաժեշտ է, որ մեր հանրապետության համապատասխան կազմակերպությունները գործնական կապերի մեջ մտնեն Միության սոցիոլոգիական մտքի կենտրոնի հետ։

Հայաստանի հանրապետական գիտա-տեխնիկական ընկերության խորհրդին (ԳՏԸԽ) կից ստեղծվել է սոցիոլոգիայի կոմիտե։ Այդ կոմիտեն նավթային և քիմիական արդյունաբերության բանվորների արհեստագործական հանրապետական կոմիտեի հետ մեկտեղ սկսել է մի շարք պրոբլեմների հետազոտումը հանրապետության քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում։

Անշուշտ, այդ բնագավառում կարող են մեծ խնդիրներ լուծվել միայն տարբեր գիտական հիմնարկություններում, բուհերում, կուսակցական և պետական կազմակերպություններում աշխատող հետազոտողների կոլեկտիվ ջանքերով։

Դա հնարավորություն կտա սոցիալական հետազոտությունների գործը դնել այն խնդիրների մակարդակին, որը մեզ ներկայացնում է կոմունիստական հասարակարգի կառուցման ներկա փուլը։

Ա. Զ. ԲԵԳԻՅԱՆ

Իրավաբանական գիտությունների դոկտոր

# ԱՎՏՈՆՈՄԻԱՅԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ*

Մեր երկրի ազգերի և ժողովուրդների պետականության, նրա զարգացման հեռանկարների հարցն ունի գիտական, պրակտիկ և քաղաքական կարևոր նշանակություն։ Այն պատշաճ արտացոլում է գտել ՍՄԿԿ ծրագրում, կուսակցական փաստաթղթերում։ Կոմունիստական կուսակցությունը իրավագիտության ոլորտի աշխատողների ուշադրությունն է հրավիրում սովետական ազգային պետականության զարգացման և կատարելագործման ակտուալ պրոբլեմների մշակման անհրաժեշտության վրա։

Վերջին տասնամյակում միութենական և մի շարք ավտոնոմ հանրապետություններում հրատարակվել են ուսումնասիրություններ՝ նվիրված սովետական ազգերի պետականության հաստատմանն ու զարգացմանը։ Հրատարակված աշխատությունների հիմնական արժանիքն այն է, որ այդտեղ միութենական հանրապետությունների պետականության զարգացումը բնութագրող ընդհանուր օրինաչափությունները ցույց են տրված ազգային առանձնահատկությունների բացահայտման ֆոնի վրա։

Սակայն մինչև օրս հրապարակի վրա չկան մենագրական աշխատություններ, որտեղ անհրաժեշտ խորությամբ լուսաբանված լինեն սովետական ազգային պետականության ընդհանուր տեսական պրոբլեմները։ Գիտական հանդեսներում, անկասկած, կան արժեքավոր հոդվածներ, վիճելի առաջարկներ նշված պրոբլեմների վերաբերյալ։ Այդ է վկայում, մասնավորապես, «ազգ» հասկացության հարցի շուրջ «Вопросы истории» ամսագրի էջերում ծավալված դիսկուսիայում սովետական ազգային պետականության տեսության որոշ հարցերի քննարկումը[1]։ Վերոհիշյալ հարցերի շուրջ մինչև այդ ստեղծվել էր որոշ իրավաբանական գրականություն։

Սովետական ազգային պետականության տեսության կարևոր խնդիրներից է ավտոնոմիայի հարցը։ Պ. Գ. Սեմյոնովը Ավտոնոմիան սովետական պետական կառուցվածքում հոդվածում նոր ձևով է մոտենում հարցի տեսությանը և պատմությանը, հանգամանորեն լուսաբանում լենինյան հայացքները մարզային ավտոնոմիայի վերաբերյալ։ Երկար տարիների ընթացքում սովետական իրավաբանական գրականության մեջ մարզային ավտոնոմիան դիտվում էր միակողմանի՝ սոսկ ազգային-տերիտորիալ տեսանկյունից։ Քննադատելով այդ միակողմանիությունը, Սեմյոնովը համոզիչ ցույց տվեց, որ Վ. Ի. Լենինը մար-

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։

[1] Տե՛ս П. Г. Семенов. Нация и национальная государственность в СССР. «Вопросы истории» 1966, № 7, стр. 74—81, М. О. Мнацаканян. Нация и национальная государственность. «Вопросы истории», 1966, № 9, стр. 27—36.

ղային ավտոնոմիային նայում էր որպես դեմոկրատական պետության կազմակերպման ունիվերսալ պլան։ Սակայն քննադատելով մարզային ավտոնոմիայի տեսակետը, նա նշում է, իբր, Լենինը մինչ Հոկտեմբերը սկզբունքորեն բացասաբար էր վերաբերվել ազգային-պետական ավտոնոմիային, այն, ինչպես և ֆեդերացիան, հնարավոր համարել միայն բացառիկ դեպքերում։

Նման մեկնաբանությունը հեռու է ճշմարտությունից։ Վ. Ի. Լենինը երբեք չի բացառել ազգային-տերիտորիալ ավտոնոմիան։ Հայտնի է, որ ազգային հարցի մասին կուսակցության ծրագիրն ազգի ինքնորոշման, մինչև իսկ անջատվելու հետ միասին նախատեսում էր մարզային ավտոնոմիա՝ այն ազգերի համար, որոնք կգերադասեն մնալ տվյալ պետության շրջանակներում։ Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին աշխատության մեջ Լենինը ծիծաղելի էր համարում բունդական Մեդեմի տեսակետը՝ ավտոնոմիան միայն Լեհաստանի նկատմամբ ընդունելի պահանջը։ Վերջինս մերժում էր տերիտորիալ ավտոնոմիան փոքրաթիվ ազգային օկրուգներում։

Հաշվի առնելով ազգային մոմենտը, Լենինը երբեք այն չէր բացարձականացնում։ Ավտոնոմիան, թեկուզ և ազգային ամբողջական կազմ ունեցող ամենափոքր մեծությամբ տերիտորիայի համար, բացառիկ կարևոր է ամեն տեսակ ազգային ճնշման վերացման գործում։ Լենինը, միաժամանակ, նշում էր, որ անհրաժեշտ է նաև հաշվի առնել տնտեսական գործոնը, քաղաքների դերը, վերջիններիս բնակչության խայտաբղետ կազմը, ազգային հատկանիշների պատճառով դրանց տնտեսական կապը գյուղերից ու օկրուգներից կտրելու անհնար լինելը։ Այսպիսով, նա եզրակացնում էր, որ մարքսիստները չպետք է ամբողջովին ու բացառապես կանգնեն «ազգային տերիտորիա փաստական սկզբունքի վրա»։ Հետագա պարզաբանումներից երևում է, որ Լենինն այդ հասկացությունը գործածում է բացառելով տնտեսական, աշխարհագրական և այլ գործոններ։

Մարզային ավտոնոմիայի լենինյան հասկացության Սեմյոնովի բնորոշումը, ազգային-պետականության ստեղծման հարցի մասին, չի ընդունվում պատմա-կուսակցական ու իրավաբանական գրականության մեջ։

ՍՄԿԿ պատմության բազմահատորյակի հեղինակային կոլեկտիվը, մարզային ավտոնոմիայի պահանջը կապում է ո՛չ միայն ազգային կազմի, այլև տնտեսական, աշխարհագրական և այլ առանձնահատկությունների հետ։ Այստեղ ցույց է տրված «կուլտուրական-ազգային ավտոնոմիայի» բուրժուա-նացիոնալիստական էությունը և նշված, որ «Մարզային տերիտորիալ ավտոնոմիայի պահանջը, ինչպես և կուսակցության ամբողջ ազգային քաղաքականությունը, չի ունեցել ոչ մի ընդհանուր բան «կուլտուր-ազգային ավտոնոմիայի» ծրագրի հետ» (տե՛ս История коммунистической партии Советского Союза, т. 2, 1966, стр. 425)։

Մարզային ավտոնոմիան ընդունելի է այն ազգերի համար, ասված է Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմության միհատորյակում, որոնք այս կամ այն պատճառով կցանկանան մնալ տվյալ պետության կազմում (տե՛ս История коммунистической партии Советского Союза, 1959 г, М., стр. 165)։

Անտեսելով ՍՍՀՄ-ում ազգային-պետական շինարարության փորձը, որտեղ իր լրիվ հաստատումն է ստացել մարզային ավտոնոմիայի լենինյան տեսակետը, Պ. Գ. Սեմյոնովն ապացուցում է, որ ՍՍՀՄ-ում ավտոնոմիայի ինստիտուտը կապված է, առաջին հերթին, ոչ ազգային մոմենտի հետ։ Այդ հարցում Մ. Ի. Պիսկոտինը իրավացիորեն նկատում է, որ Սեմյոնովն իր այդ տեսակետներով նսեմացնում է ազգային ավտոնոմիայի պատմական նշանակությունը՝ որպես մեր երկրում ազգային ինքնորոշման իրավունքի իրականացման ձև, լենինյան ազգային քաղաքականության կենսագործման արտահայտություն (տե՛ս «Советы депутатов трудящихся», 1961, № 1, стр. 14—15)։

Մարզային ավտոնոմիայի լենինյան ըմբռնումը՝ որպես ազգային հարցի լուծման անհրաժեշտ պայման, սկզբունքային նշանակություն ունի այն իմաստով, որ Լենինն ավտոնոմիան ընդունում էր բոլոր ազգային շրջանների համար, անկախ նրանց բնակչության թվից։ Լենինը մարզային ավտոնոմիան, որպես



դեմոկրատական հարցերի լուծման անհրաժեշտ մի պայման, առաջին հերթին, ընդունում էր պետության ադմինիստրատիվ-տերիտորիալ կառուցվածքում, միայն խոշոր մարզերի համար, որոնք ունեն քիչ թե շատ տնտեսական, աշխարհագրական առանձնահատկություններ, ինչպես Ուրալը, Հարավը։ Նա գտնում էր, որ ավելի փոքր, ընդհուպ մինչև փոքրագույն տերիտորիալ միավորներ ունեցող մարզերի համար ընդունելի է լայն մարզային և տեղական ինքնավարության սկզբունքը։ Իր առավել ուշ շրջանի աշխատություններում Վ. Ի. Լենինը ավելի որոշակի տարբերություններ էր տեսնում ազգային ավտոնոմիայի և մարզային ու տեղական ինքնավարության միջև։ Հետհոկտեմբերյան շրջանում ընդունված կուսակցության երկրորդ ծրագրում ընդգծված էր, որ սովետական պետական համակարգում տեղական և մարզային ինքնավարությունն անհամեմատ ավելի լայնորեն է իրականացված, քան որևէ տեղ։ Սովետական ավտոնոմիայի կազմավորման փորձը, ազգային մոմենտի տեսակարար կշռի մեծացումը պայմանավորեցին մարզերի պետական-իրավական տարբերությունների սահմանագծումներն ըստ ազգային բնույթի։

Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն է դարձրել սովետական ազգային պետականության տեսական պրոբլեմներին, գիտականորեն հիմնավորել նրա բնույթը, ձևերը, որոշել նրա տեղը համասովետական պետության մեջ։

Պետական շինարարության տեսության և պրակտիկայի համար հսկայական նշանակություն ունի սովետական ազգային պետականության մասին լենինյան ժառանգության վերլուծությունը։ Այստեղ անհրաժեշտ է ցույց տալ մեր երկրի ազգերի և ժողովուրդների պետականության զարգացման ուղիները, կառավարման գործերին աշխատավորության մասնակցությունը, կապված վերջինիս կուլտուրական զարգացման հետ։ Հայտնի է, որ ցարական Ռուսաստանի բուրժուա-կալվածատիրական օրենսդրությունն աշխատավորների համար ամեն տեսակ խոչընդոտներ էր ստեղծում, մասնակցելու պետության և հասարակության կառավարման գործերին, հատկապես այլազգիների նկատմամբ։ Սովետական իշխանությունը սկզբից ևեթ վերացրեց իրավական բնույթի այդ արգելքները, սակայն, գոյություն ունեցող օբյեկտիվ դժվարություններն աստիճանաբար էին հաղթահարվում։

Սովետական իշխանության օրենքները մեր երկրի բոլոր ազգերի և ժողովուրդների աշխատավորությանը հնարավորություն տվեցին մասնակցելու պետության կառավարմանը։ «... Բացի օրենքից,— գրում էր Վ. Ի. Լենինը,— կա նաև կուլտուրական մակարդակ, որը ոչ մի օրենքի չես ենթարկի»։ Կուլտուրական այդ ցածր մակարդակի հետևանքով, սովետներն իրենց ծրագրով լինելով աշխատավորության միջոցով կառավարելու օրգաններ, իրականում հանդիսանում են կառավարման օրգաններ աշխատավորության համար՝ պրոլետարիատի առաջավոր խավի միջոցով, բայց ոչ աշխատավորական մասսաների միջոցով (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 214)։

Կուլտուրական շինարարության, հասարակության կրթական մակարդակի բարձրացման շնորհիվ ընդլայնվեց աշխատավորական խավերին պետության կառավարմանը մասնակից դարձնելը։ Պետությունը, նկատել է Լենինը, ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։

Սովետական ազգային պետականության պայմաններում հասարակության կառավարմանը մասսաների ընդգրկման գործում կարևոր դեր խաղացին պետական ապարատի տեղայնացումը, ազգային հանրապետությունների ու մարզերի հիմնական բնակչությունից կադրերի պատրաստումը։ Վ. Ի. Լենինը հսկայական ուշադրություն էր նվիրում պետական ապարատի տեղայնացման նախադրյալների ստեղծմանը։ Նրա նախաձեռնությամբ բոլոր ազգային հանրապետություններում ու մարզերում բացվեցին քաղաքային և գյուղական սովետների աշխատողների պատրաստման կուրսեր, որտեղ ընդգրկված էին սովետական իշխանությանը սոցիալապես մոտ կանգնած տարբեր ազգություններից սովորող մարդիկ։ Հանրապետական և միջին օղակների ազգային կադրերի պատրաստմանը մեծ օգնություն ցույց տվեցին ՀամԿԳԿ-ին կից սովետական շինարարության բարձրագույն կուրսերը և ՌՍՖՍՀ իրավաբանական բուհերը։ Ազգային կադրերի ստեղծման, գործավարությունը ազգային լեզվով տանելու

շնորհիվ, պետական ապարատը տեղական բնակչության համար ավելի մոտ ու մատչելի դարձավ։ Հնարավորություն ստեղծվեց նրանց մասնակից դարձնելու պետության գործերի կառավարմանը։

Նման կուրսն ամենևին չէր նշանակում տեղերում բնակվող այլազգիների իրավունքների և շահերի անտեսում, ինչպես և ազգային կադրերի պատրաստումը չէր բացառում պետական ապարատում մյուս ազգերի ներգրավումը։ Հանդիսանալով ազգային և, միևնույն ժամանակ, ինտերնացիոնալ, ազգային հանրապետությունների և մարզերի պետական ապարատ, այն ինչպես հիմնական, այնպես էլ ազգային բնակչությանը սպասարկում էր իրենց մայրենի լեզուներով՝ իր կազմի մեջ ընդգրկելով այլ ազգերի կադրերին։

Պետական ապարատի տեղայնացումը նպաստեց նախկինում հետամնաց ազգերի աշխատավորության ստեղծագործական նախաձեռնության բարձրացմանը, ազգային ինքնագիտակցության զարգացմանը։ Աճող ազգային ինքնագիտակցությունը ներառնում էր այն դրականը, ինչ նախկինում գոյություն է ունեցել աշխատավորների առաջադիմական ավանդույթներում։ Դրսևորվեց հանրապետության, մարզի տերը լինելու նոր զգացում, ամբողջ ժողովրդի ազգային և սոցիալական բախտի, նրա տնտեսական ու կուլտուրական վերածննդի նկատմամբ պատասխանատվության գիտակցում։ Այն անհարիր է բուրժուական նացիոնալիզմին, շովինիզմին ու ռասայականությանը։ Ազգային ինքնագիտակցությունը ՍՍՀՄ ժողովուրդների կյանքում հարստացած է ինտերնացիոնալ բովանդակությամբ, նպաստում է ազգային սոցիալիստական պետականության ամրապնդմանը։

Սովետական ազգային պետականությունը կարևոր դեր է խաղում ազգերի կազմավորման, ժամանակի ընթացքում հայրենիքը հարկադրված լքած, աշխարհի տարբեր պետություններում բնակություն հաստատած առանձին ազգությունների բեկորների հավաքման գործում։ Լենինը դեռևս մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, հիմնավորել է այն դրույթը, որ ավտոնոմիան հանդիսանալով ազգի ձևավորման պայման, թույլ է տալիս տվյալ պետության սահմաններում երբեմն բռնի կերպով պահվող ազգին վերջնականապես կազմավորվելու իբրև ազգ։

ՍՍՀՄ պետական շինարարության փորձը լիովին հաստատեց սովետական ազգային պետականության ազգաստեղծման դերի և ազգահավաքման ֆունկցիայի լենինյան դրույթը։ Մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը մեր երկրում արդեն ձևավորված ազգերի կողքին գոյություն ունեին մեծ քանակությամբ ժողովուրդներ, որոնք գտնվում էին ազգային լինելության, կազմավորման պրոցեսում։ Սովետական հասարակարգը հսկայական դեր կատարեց այդ պրոցեսում։ Ձևավորվեցին ուզբեկական, տաջիկական, կիրգիզական, թուրքմենական և այլ սոցիալիստական ազգեր։ Հայրենադարձությունը սոցիալիստական պետականության բնորոշ հատկանիշն է՝ միութենական մի շարք հանրապետությունների համար։ ՍՍՀՄ-ում դրսևորվում է այն օրինաչափությունը, որ Միության պայմաններում ազգայինը միաժամանակ հանդիսանում է համամիութենական, հանրապետականը դառնում միութենական կառավարության հոգատարության հարց։

Նման հարաբերությունները բոլորովին անհնար է բուրժուական ապրելակերպի, բուրժուական բազմազգ պետության սիստեմի պայմաններում։

Սովետական ազգային պետականության զարգացման ուղիներից է մեր երկրի նախկինում հետամնաց ազգերի և ժողովուրդների կուլտուրական ու տնտեսական արագ զարգացումը, փաստական անհավասարության վերացումը։ Ելնելով լենինյան գաղափարներից, կոմունիստական կուսակցությունը մշակել և հիանալի կերպով իրականացրել է այդ ազգերի և ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական վերածննդի հոյակապ ծրագիր։

Մեծ է սովետական ազգային պետականության դերը ՍՍՀՄ ազգերի և ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական զարգացման գործում։ Սակայն դրանով չի սահմանափակվում սոցիալիստական պետականության նշանակությունը, ինչպես գրում են առանձին հեղինակներ (տե՛ս «Советское государство и право», 1963, № 4, стр. 47)։



Սահմանափակվո՞ւմ է արդյոք սովետական ազգային պետականությունը միայն տնտեսական-կուլտուրական հարցերով։ Դադարե՞լ է արդյոք այն կատարել կոմունիստական շինարարության քաղաքական, սոցիալիստական ազգերի խոր համագործակցության և մերձեցման խնդիրները։ Իհարկե, ո՛չ։

Եթե պրակտիկայում ազգային հանրապետությունները ղեկավարվեին ազգերի և ժողովուրդների միայն տնտեսական-կուլտուրական զարգացման խնդիրներով, ապա իրենց գործունեությունից դուրս կմնային կոմունիստական շինարարության շատ արմատական հարցեր։ Կուսակցությունը պայքարել և պայքարում է սովետական ազգային պետականության դերի ամեն տեսակ թերագնահատման դեմ։

Սովետական ազգային պետականությամբ ժխտվում է այն տեսակետը, թե սովետական ազգային պետականությունը դադարել է ՍՍՀՄ ազգերի և ժողովուրդների քաղաքական զարգացման գործոնը լինելուց։ Միութենական և ավտոնոմ հանրապետություններում իրենց իրավունքների ընդլայնման շնորհիվ հսկայական աշխատանք է ծավալվել ո՛չ միայն տնտեսական-կուլտուրական, այլև քաղաքական, դեմոկրատական, օրենսդրական, իրավա-կարգապահական և հասարակական կյանքի այլ բնագավառներում։ Վերջին տարիներին զգալի չափով ընդլայնվել են միութենական հանրապետությունների և ինքնավար մարզերի իրավունքներն օրենսդրության գծով, աշխուժացել է գերագույն սովետների գործունեությունը այդ ուղղությամբ։

Քաղաքականությունը միշտ եղել է դասակարգերի և ազգերի միջև եղած հարաբերությունների արտահայտություն։ Եվ քանի դեռ գոյություն ունեն ազգեր ու ազգային տարբերություններ, նրանց հարաբերություններն իրականացնող հիմնարկներ, այդ պրոցեսը կրում է քաղաքական բնույթ։ Ինեսա Արմանդին գրած նամակում Լենինը նշում է, որ քաղաքականությունը ազգերի, դասակարգերի միջև եղած հարաբերություն է։

Կապիտալիզմն իր մասնավոր սեփականությամբ ժողովուրդներին հակադրում է մեկը մյուսին, սերմանում նացիոնալիստական էգոիզմ։ Սովետական քաղաքականությունն ազգերի փոխհարաբերություններից բացառում է նացիոնալիստական հարաբերությունները, հաստատում նորը, որի պայմաններում ժողովուրդները մերձենում են, բարեկամանում։ Կուսակցությունն այդ քաղաքականության զարգացումն ու կատարելագործումը համարում է կոմունիստական հասարակության կառուցման կարևորագույն պայմաններից մեկը։

Արդի ժամանակաշրջանում սովետական ազգային պետականության զարգացման գլխավոր ուղիներից է՝ ՍՍՀՄ ազգերի և ժողովուրդների համագործակցության, փոխօգնության, համախմբման ուժեղացումը, ազգերի համակողմանի, այդ թվում պետական-իրավական մերձեցումը։ Վերջինիս զարգացումը օրինաչափություն է, օբյեկտիվ անհրաժեշտություն։ Սակայն չնայած ազգերի պետական-իրավական մերձեցումը օբյեկտիվ օրինաչափություն է, բայց այն տեղի է ունենում ոչ տարերայնորեն. խոսքը ոչ թե անկազմակերպ պրոցեսի մասին է, այլ դրա գիտակցման, կառավարման։

Սովետական ազգային պետականությունը նպաստում է ո՛չ միայն մեր երկրի ազգերի և ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական զարգացմանը, այլ կոչված է նաև սոցիալիստական դեմոկրատիայի հարաճուն զարգացման հիման վրա՝ աշխատավորներին ընդգրկել պետության կառավարման ոլորտը։

Վ. Ի. Լենինը բնութագրելով կոմունիզմի կառուցման հիմնական պայմանները, նկատել է, որ յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է կատարել անվճար պետական հանձնարարություն։ Նա գտնում էր, որ պետության գործերում քաղաքացիների մասնակցությունը քաղաքական չափանիշ է։

Պատմական փորձը ցույց է տալիս, որ սովետական ազգային պետականությունը մեծ հնարավորություններ ստեղծեց նախկինում հետամնաց ազգերին ու ժողովուրդներին դառնալ ինքնավար։ Պետության կառավարման ոլորտն աշխատավորների ներգրավումը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման գլխավոր ուղին է, ազգերի և ժողովուրդների սոցիալիստական հարաբերությունների, նրանց տնտեսական և կուլտուրական զարգացման երաշխիքը։

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Հ. Վ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առանձնահատկություններից մեկն այն է, որ լայն ճանապարհ է տրվում գիտատեխնիկական առաջադիմությանը, մասսաների ստեղծագործական նախաձեռնությանը, գիտության նվաճումների և առաջավոր փորձի ներդրմանը, որոնք ապահովում են աշխատանքի արտադրողականության, հետևապես նաև արտադրության արդյունավետության բարձրացումը։ Արտադրության արդյունավետության բարձրացումը, որ եղել և մնում է կուսակցության տնտեսական քաղաքականության հիմնասյունը, այժմ դրված է նոր տնտեսական ռեֆորմի հիմքում։

Ահա թե ինչու ձեռնարկություններում տարվող կուսակցական և տնտեսական աշխատանքը նույնպես պետք է կառուցվի գիտական բազայի վրա, տնտեսական օրենքների պահանջներին համապատասխան։ Պրոպագանդայի և ագիտացիայի միջոցով պետք է մասսայականացվեն տնտեսական շինարարության արդյունքները, անընդհատ ուսումնասիրվի և ընդհանրացվի առաջավոր փորձը։ Կուսակցական կազմակերպություններն այժմ ավելի, քան երբևէ, իրենց ուշադրությունը պետք է բևեռեն աշխատանքի ճիշտ կազմակերպման, աշխատուժի ռացիոնալ օգտագործման հարցերի վրա։

Վերջին ժամանակներս կուսակցական-սովետական մամուլը իր էջերում լայն տեղ է հատկացնում աշխատանքի գիտական կազմակերպմանը (ԱԳԿ). այդ մասին հաճախակի է խոսվում նաև կուսակցական, արհմիութենական և կոմերիտական ժողովներում, արտադրական խորհրդակցություններում։ ԱԳԿ-ի հարցերը իրենց արժանի արտացոլումն են գտել կուսակցության և կառավարության՝ վերջին տարիների մի շարք որոշումներում։

Սակայն այս ամենից չպետք է եզրակացնել, թե ԱԳԿ նոր է ծնունդ առել, նոր երևույթ է մեզ մոտ։ Ամենևին էլ ոչ։ Աշխատանքի գիտական կազմակերպումը ներհատուկ է սովետական սոցիալիստական իրավակարգին, զարգանում ու լայնորեն տարածվում է մեր երկրում տեղի ունեցող տեխնիկական-տնտեսական վիթխարի առաջադիմությանը, աշխատավորների քաղաքական ու գիտատեխնիկական մակարդակի անընդհատ բարձրացմանը զուգընթաց։

Աշխատանքի գիտական հիմունքներով կազմակերպումը դա աշխատանքի գոյություն ունեցող ձևերի անընդհատ կատարելագործումն է՝ գիտության և



առաջավոր փորձի նվաճումների հիման վրա։ Ներկայումս ՍՍՀՄ-ում աշխատանքի գիտական կազմակերպումը թևակոխում է նոր փուլ, որը պայմանավորվում է ժամանակակից նորագույն տեխնիկայի, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման մակարդակով։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ արտադրության գիտական կազմակերպումը կախված է ոչ միայն առաջադրանքների կազմումից, այլև բանվորի ամենօրյա ստեղծագործական աշխատանքից ու մտքից, նրա ձեռք բերած գիտելիքների մակարդակից, հմտությունից և կուլտուրայից։

Աշխատանքի գիտական կազմակերպման ուղղությամբ լավագույն օրինակ են ցույց տալիս Սվերդլովի մարզի արդյունաբերական ձեռնարկությունները, որոնք կուսակցական և տնտեսական կազմակերպությունների ու օրգանների աջակցությամբ մշակել են ԱԳԿ պլաններ և ձեռնամուխ եղել դրանց իրագործմանը։ Այս ուղղությամբ հետաքրքրական է Ն. Տագիլի մետալուրգիական կոմբինատի աշխատանքի ուսանելի փորձը։ Այստեղ 1968 թ. առաջին կիսամյակում ներդրվել են ավելի քան 100 միջոցառում, որ նախատեսված են աշխատանքի գիտական կազմակերպման պլաններում։ Տարիների ընթացքում կուտակած փորձի հիման վրա կոմբինատում պլան-միջոցառումների կազմման և իրականացման ուղղությամբ մշակվել է համապատասխան մեթոդիկա, որն իր մեջ ընդգրկում է հետևյալ հարցերը՝

1. Աշխատանքի գիտական կազմակերպման տեղամասային պլանների կազմումը և ներդրումը։ 2. Տիպարային բանվորական տեղերի կազմակերպումը։ 3. Աշխատանքի նորմավորման կատարելագործումը։ 4. Աշխատանքի և հանգստի ռեժիմի կազմակերպման ուսումնասիրումը և լավագույն ռեժիմի ներդրումը։ 5. Աշխատանքի պայմանների բարելավումը։ 6. Առաջավոր փորձի ուսումնասիրումը և տարածումը։ 7. Ներգործարանային փոխադրումների ուսումնասիրումը և բարելավումը։ 8. Աշխատանքային ժամի նկատմամբ վերահսկումը։ 9. Արտադրության կուլտուրայի բարձրացումը։ 10. Արտադրական էսթետիկայի կիրառումը։ 11. Կադրերի վերապատրաստումը և տեղաբաշխումը։ 12. Աշխատանքային կարգապահության ամրապնդումը։ 13. Նյութա-տեխնիկական մատակարարման բարելավումը։ 14. Ներգործարանային պլանավորման և նյութական շահագրգռվածության հետագա կատարելագործումը։ 15. Արտադրության ղեկավարման կատարելագործումը։ 16. Աշխատանքի գիտական կազմակերպման պրոպագանդումը։ 17. Բանվորների ստեղծագործական նախաձեռնության բարձրացումը։

Նկատի ունենալով, որ աշխատանքի գիտական կազմակերպումը և արտադրության բարձր կուլտուրան կարևոր գործոններ են արտադրության զարգացման ու նրա արդյունավետության բարձրացման համար, ՍՄԿԿ Կենտկոմը հավանություն տվեց սվերդլովցիների լավագույն աշխատանքին և անհրաժեշտ համարեց նրանց արժեքավոր փորձը տարածել բոլոր հանրապետություններում ու մարզերում։

Հաշվի առնելով երկրի առաջավոր ձեռնարկությունների և նախորդ տարիների սեփական փորձը, 1968 թ. սկզբից ՀԿԿ Կիրովականի քաղաքային կոմիտեի և սկզբնական կազմակերպությունների օգնությամբ քաղաքի բոլոր արտադրական ձեռնարկություններում վերլուծվել են գործերի վիճակը և համապատասխան միջոցառումներ մշակվել նրա բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Ձեռնարկություններում ԱԳԿ ուղղությամբ տարվող աշխատանքն աշխա-

ժացավ հատկապես կուսակցության քաղաքային կոմիտեի պլենումից (1968 թ. մարտ) հետո, որը քննարկեց արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության կուլտուրայի և աշխատանքի պայմանների բարելավման հարցը։

Այդ կարևոր հարցի խոր և բազմակողմանիորեն քննարկումը նախապատրաստելու նպատակով քաղկոմը մոբիլիզացրեց մեծ թվով կուսակցական և արտադրության առաջավորներ։ Քաղկոմում մենք հանգամանորեն հրահանգավորեցինք այդ ընկերներին, նրանց ուշադրությունը սևեռելով աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատատար պրոցեսների մեքենայացման և բանվորների ու բանվորուհիների համար աշխատանքի նորմալ պայմաններ ստեղծելու հարցերի վրա։

Այդ ամենի շնորհիվ պարզվեց գործերի իրական վիճակը և պլենումը ընդունեց համապատասխան որոշում, որի մեջ նշվեցին քաղկոմի բաժինների և կուսակցական կազմակերպությունների կոնկրետ անելիքները ԱԳԿ բնագավառում։

Քաղկոմի պլենումից հետո կուսակցական կազմակերպությունները ավելի մոտիկից են զբաղվում տնտեսական կադրերի, արտադրության հրամանատարների ուսուցման, նրանց նկատմամբ պահանջկոտությունը բարձրացնելու հարցերով։

Աշխատանքի գիտական կազմակերպման շահերը պահանջում են, որպեսզի ձեռնարկությունների ղեկավարները, արտադրամասերի պետերը, բրիգադիրները, վարպետները, ինժեներա-տեխնիկական անձնակազմը տիրապետեն աշխատանքի լենինյան ոճին, լավ հասկանան սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողության մեխանիզմը, խելացի օգտագործեն այնպիսի տնտեսական լծակներ, ինչպիսիք են գինը, վարկը, շահույթը և այլն։

Արտադրության արդյունավետության բարձրացումը մեծապես կախված է նաև այն բանից, թե յուրաքանչյուր բանվոր ինչպես է հասկանում և կատարում իր պարտականությունները՝ կոլեկտիվի առջև ծառացած ընդհանուր խնդիրների լուծման գործում։ Ելնելով դրանից, քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունը զգալի աշխատանք են կատարում բանվորների արտադրական և տնտեսագիտական ուսուցման կազմակերպման ուղղությամբ։ Անցած ուսումնական տարում բուհերում և տեխնիկումներում սովորում էին 1.456 մարդ, իսկ այս տարի ավելի շատ։ Բանվորների ուսուցման ու նրանց որակավորման հարցերով լավ է զբաղվում, օրինակ, քիմիական մանրաթելերի գործարանի կուսկազմակերպությունը (կոմիտեի քարտուղար՝ Ս. Ավետյան)։ Այստեղ տնտեսական գիտելիքների համալսարանին կից գործել են 60-ժամյա ծրագրով դասընթացներ, որտեղ հարյուրավոր բանվորներ գործնականորեն սովորել են, թե ինչպես պետք է խնայել նյութն ու էներգիան, խելացիորեն օգտագործել ձեռնարկության նյութա-տեխնիկական ռեսուրսները, ավելացնել ֆոնդերը և այլն։

Աշխատանքի գիտական կազմակերպման հարցերը գտնվում են գործարանի կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում, դրանք պարբերաբար քննարկվում են կուսկոմիտեի նիստերում, արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում։ Ինչպես ամեն մի գործում, ԱԳԿ ասպարեզում ևս, կոմունիստները հանդես են գալիս որպես նորի ու առաջավորի համար ակտիվ մարտնչողներ։ ԱԳԿ համագործարանային խորհուրդը գլխավորում է կոմունիստ Գ. Մանթաշյանը (գործարանի գլխավոր ինժեներ)։ Էներգետիկայի գծով հանձնաժողովը՝ Ե. Հյուսյանը (դիրեկտորի տեղակալ՝ տեխնիկայի ան-



վտանգության գծով), ԱԳԿ-ի ուղղությամբ ադմինիստրացիայի գործունեության վերահսկող կուսակցական հանձնաժողովը (նախագահ՝ Ա. Հայրապետյան), ԱԳԿ-ի լաբորատորիան (ղեկավար՝ Ռ. Միրզոյան)։ Երախտելի աշխատանք են տանում նաև կոմունիստներ՝ Ռ. Գրիգորյանը (էլեկտրական արտադրամասի պետ), Հ. Քոթանչյանը (քիմիական արտադրամասի փականագործ), Վ. Մելիքսեթյանը (փորձնական տեղամասի վարպետ) և ուրիշներ։

ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրությունը, նավթային և քիմիական արդյունաբերության բանվորների արհմիության կենտկոմը, Հայաստանի արհմիությունների հանրապետական խորհուրդը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմը, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին կից քիմիական արդյունաբերության վարչությունը և արհմիութենական հանրապետական կոմիտեն վերջերս «Տրուդ» թերթի խմբագրության հետ միասին տեղում անցկացրին թերթի համամիութենական հերթական երեքշաբթի-սեմինարը՝ նվիրված արտադրության կուլտուրայի բարձրացման ուղղությամբ Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի աշխատանքի փորձի փոխանակմանը։ Սեմինարին մասնակցեցին Մոսկվայից, Լենինգրադից, Կաունասից, Դոնի-Ռոստովից և Միության այլ մարզերից և երկրամասերից ժամանած բազմաթիվ հյուրեր։ Միայն վերջին տարիներին քիմիական մանրաթելի գործարանում իրականացվել են 150 խոշոր միջոցառում՝ ուղղված արտադրության կուլտուրայի բարձրացմանը և աշխատանքի պայմանների թեթևացմանը։ Լուծվել է ացետիլցելյուլոզի բեռնաթափման պրոբլեմը. առաջ այն կատարվում էր ձեռքով, իսկ այժմ վագոններից ավտոմատիկ կերպով բեռնաթափվում է աշտարակները և այնտեղից էլ համապատասխան մեխանիզմների միջոցով ուղղվում արտադրամաս՝ վերամշակման համար։ Նախկինում երկաթուղու բանվորները վագոնները հրում էին ձեռքով, այժմ դրանց տեղաշարժումներն ապահովվում է զույգ կռունկների օգնությամբ։ Ռեգեներացիայի արտադրամասում մեքենայացվել է ածուխի լցնումը ադսորբերների մեջ և այլն։

Վերջին տարիներին գործարանում ստացվել է 1.047 ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից մոտ 700-ն արդեն արմատավորվել են։ Ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում նաև մասնագիտությունների համատեղումները։ Այդ միջոցառումների վրա կատարված ծախսերը վաղուց հատուցվել են և այժմ գործարանը դրանցից օգուտ է ստանում։

Փաստերը ցույց են տալիս, որ ԱԳԿ-ը, արտադրության կուլտուրայի բարձրացումը մեծապես օգնում են շահութաբերության ավելացմանը։ Հենց դրանով է բացատրվում այն, որ այս տարվա առաջին եռամսյակում Կիրովականի մանրաթելի գործարանի մեկ բանվորը տվել է 4.442 ռուբլու արտադրանք, Սերպուխովի համանման գործարանի բանվորը՝ 2.792։ Կիրովականի գործարանը մեկ տոննա արտադրանքի վրա ծախսում է 407 մարդ-ժամ, Սերպուխովինը՝ 637։

Գործարանի կուսակցական, տնտեսական և արհմիութենական ղեկավարության ընդհանուր ջանքերով կոլեկտիվը լիովին ապահովվել է սանիտարական կենցաղային շենքերով, կառուցվել են նոր և վերանորոգվել հին ջրացնցուղի և հանդերձարանի սենյակները։ Առանձնացվել և կահավորվել են հինգ ընդարձակ սենյակ, ուր կարելի է տաքացնել կերակուր, պատրաստել թեյ։ Բոլոր արտադրամասերում սարքավորվել են հանգստի սենյակներ, որոնք հարմարավետ են ու գեղեցիկ։ Ամենուրեք ծաղիկներ են, իսկ սեղանների վրա և պատերին՝ ինքնուս նկարիչների նկարները։ Արտադրական տեղամասերում

կան ցայտաղբյուրներ ու լվացարաններ։ Կոլեկտիվի կենցաղի մեջ է մտել արտադրական մարմնամարզությունը։

Գործարանի տերիտորիայում պատրաստված են փարթամ ծաղկանոցներ, կառուցվում է ջրավազան և ջրաբուժարան՝ բոլոր հարմարանքներով։ Գործարանային բուժկետը պրոֆիլակտիկ աշխատանքներ է տանում կոլեկտիվի առողջության պահպանման համար։ Բանվորներին ձրիաբար սպասարկում են վարսավիրանոցը, կոշիկների նորոգման արհեստանոցը և այլն։

Այս կամ այն պրոբլեմի լուծման համար գործարանում և նրա առանձին արտադրամասերում կազմվում են ստեղծագործական բրիգադներ, որոնք ԱԳԿ խորհրդին և լաբորատորիային օգնում են թերությունները վերացնելու, աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու։ Այդպիսի բրիգադ է ստեղծվել, օրինակ, տեսակավորման-փաթեթման արտադրամասի գործունեության ստուգման համար։ Մանրակրկիտ կերպով ուսումնասիրելով աշխատանքի կազմակերպման վիճակը, բրիգադան եկել է այն եզրակացության, որ թույլ տրվող խոտանի մեծ մասը բաժին է ընկնում գիշերային հերթափոխին։ Խոտանը կանխելու համար բրիգադան և ԱԳԿ լաբորատորիան առաջարկել են արտադրամասը փոխադրել երկհերթ աշխատանքի և հինգ աշխատանքային օրվա շաբաթի, ինչպես նաև տեղադրել լրացուցիչ սարքավորումներ ու բանվորական տեղի լուսավորումն 250-ից հասցնել 470 լյուքսի։

Այդ միջոցառումներն օգնեցին։ Արտադրամասում նվազեց խոտանը, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 9,4 տոկոսով, աշխատողների հաստիքը կրճատվեց 6 միավորով, էլեկտրաէներգիայի տարեկան տնտեսումը կազմեց ավելի քան 114 հազար կիլովատ-ժամ, պակասեցին տրանսպորտային ծախսերը։

Գործարանը շահագործման հանձնելու ժամանակներից մինչև հիմա այստեղ ներդրվել են 965 նորարարական առաջարկություն, որոնք տվել են 1 միլիոն 210 հազար ռուբլի տնտեսական օգուտ։ Որպես լավագույն առաջարկություններ կարելի է հիշատակել աղտեղությունների կոյուղու ավտոմատ պոմպակայանի վերացումը, որի հեղինակն է ջրի-գոլորշու արտադրամասի պետ Վ. Փոթինյանը։ Այդ միջոցառման իրականացման շնորհիվ գործարանն ստացել է 12.859 ռուբլու խնայողության հնարավորություն։ Նույնը կարելի է ասել «Ճեռքի սայլակների անիվների ձևափոխությունը» առաջարկի մասին, որի հեղինակներն են Ռ. Գրիգորյանը և Հ. Շահբազյանը։ Իրենց ստեղծագործական աշխատանքի համար ջրի-գոլորշու և էլեկտրական արտադրամասերի պետեր Վ. Փոթինյանին և Ռ. Գրիգորյանին շնորհվել է հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատորի պատվավոր կոչում։

Բանվորների ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի քաղաքական և արտադրական ակտիվությունը բարձրացնելու, արտադրության ղեկավարմանը նրանց ներգրավելու գործին մեծապես նպաստում են տեխնիկա-էկոնոմիկական կոնֆերանսները, որոնք անց են կացվում առանձին ձեռնարկություններում և համաքաղաքային մասշտաբով։ Նման կոնֆերանսների նախապատրաստման նպատակով անց են կացվում արտադրական ռեզերվների հայտնաբերման և օգտագործման ստուգատեսներ, որոնց մասնակից են դարձվում մեծ թվով մասնագետներ։ Քաղաքում անցկացված տեխնիկա-էկոնոմիկական կոնֆերանսներում քննարկվել են յուրաքանչյուր տեղամասում ու հերթափոխում տնտհաշվարկի կիրառման, տնտեսական ռեֆորմի հաջող իրագործման,



սոցիալիստական տնտեսավարության ու կոնկրետ էկոնոմիկային վերաբերվող հանգուցային հարցեր։

«Ավտոմատիկա» գործարանի դիրեկցիան, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները այդպիսի միջոցառումների շնորհիվ մեծ հաջողությունների են հասել ԱԳԿ արմատավորման գործում։ Ընդամենը երկու տարի է, ինչ գործարանում ստեղծվել է ԱԳԿ-ի բյուրո, բայց այդ կարճ ժամանակում այն շատ բան է արել։ Այսպես. մի ժամանակ մեծ չափերի էր հասնում կադրերի հոսունությունը։ ԱԳԿ բյուրոն անկետային հարցման միջոցով պարզեց դրա հիմնական պատճառները. դժգոհությունը մասնագիտությունից (27,6 տոկոս), ցածր աշխատավարձը (14,2 տոկոս), երեխաների նկատմամբ խնամքի անտեսումը (8,4 տոկոս), հերթափոխային աշխատանքը (7,3 տոկոս), աշխատանքի ծանր պայմանները (2,2 տոկոս), արտադրամասերում վատ փոխհարաբերությունները (2,5 տոկոս)։ Ձեռնարկված միջոցները հնարավորություն տվին զգալի չափով կրճատելու հոսունությունը, իսկ դա, իր հերթին, ապահովեց արտադրության համաչափությունը, նվազեցրեց սարքավորումների պարապուրդը, բարձրացրեց դրանց օգտագործման գործակիցը։

Գործարանում կիրառվում են աշխատանքի կազմակերպման ու վարձատրության բրիգադային-անհատական ձևեր, որոնք բարձրացնում են յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը կոլեկտիվի առջև, միս ու արյուն դարձնում մեկը բոլորի, բոլորը մեկի համար նշանաբանը։ Գործարանի առանձին տեղամասերում, մասնավորապես փաթաթման արտադրամասում, ամեն մի բանվոր ունի հանձնվող արտադրանքի արտադրության քարտ։ Եթե ամսվա ընթացքում քարտի վրա երևում է անգամ 2—3 նշում անորակ արտադրանքի մասին, բանվորը զրկվում է պարգև-հավելումի որոշ մասից։ Այսպիսի մեթոդը արդարացրել է իրեն։ Բավական է ասել, որ այս տեղամասի արտադրանքի վերաբերյալ 1968 թ. ընթացքում ոչ մի հայցապահանջ չի ստացվել։

Գործարանում մեծ ուշադրություն է նվիրվում բանվորական տեղի և սարքավորումների վիճակի բարելավմանը։ Բոլոր արտադրամասերում տեղադրված են ցերեկային լույսի լամպեր, բարելավված է օդափոխության սիստեմը, մեքենայացված է արտադրական թափոնի և մետաղի տաշեղների հավաքումն ու փոխադրումը։ Այս տեսակետից հատկապես օրինակելի է գալվանապատման արտադրամասը։ Սարքավորումն այստեղ տեղադրված է տեխնոլոգիայի պահանջներին համապատասխան, առավելագույն չափով մեքենայացված են աշխատանքային պրոցեսները։ Բոլոր շենքերը, սարքավորումները և հաստոցները ներկված են գրավիչ տարբեր գույներով։

Աշխատանքի գիտական կազմակերպումը կիրառվում է նաև «Ավտոմատիկա» գործարանի վարչությունում։ Հաշվապահական և ինժեներական աշխատանքները թեթևացնելու և աշխատաժամանակը ավելի ռացիոնալ օգտագործելու նպատակով ձեռք են բերվել հաշվողական մեքենաներ, ժամանակակից գծագրական գործիքներ, փոքր տեխնիկայի այլ միջոցներ։ «Ավտոմատիկա» գործարանն ունի 3.000-ից ավելի պատվիրատուներ, որոնց հետ տարվող գրագրությունների մշակումը մեծ ջանքեր էր պահանջում և միշտ չէ, որ անհրաժեշտ արդյունք էր տալիս։ Այստեղ օգնության եկավ պերֆոքարտային սիստեմը, որը հնարավորություն տվեց մի քանի անգամ արագացնելու այդ աշխատանքը և հեշտացնելու այն։

Նկատելիորեն բարելավվել է «Ավտոմատիկա» գործարանի արտադրանքի որակը։ Հատկապես պետք է նշել այդ ձեռնարկության այնպիսի արտադրանքները, ինչպիսիք են ППР—4 պոտենցիոմետրերը և տարբեր մոդիֆիկացիաների СП—4 կամրջակները. դրանք նախատեսված են տարբեր միջավայրերում ջերմաստիճանի ստուգման և կարգավորման համար։ Այստեղ էլ ամբողջ սարքավորումը այժմ պատրաստվում է կիսահաղորդիչային ուժեղացուցիչներով, որոնք նվազեցնում են էլեկտրաէներգիայի սպառումը։

«Ավտոմատիկա» գործարանի կուսկազմակերպությունը չի սահմանափակվում ԱԳԿ-ի արմատավորման ասպարեզում ձեռք բերած հաջողություններով, շարունակում է իր բեղմնավոր աշխատանքը։ Հունվարին գործարանի կուսբյուրոն ստեղծել է ԱԳԿ-ի գծով կուսակցական հանձնաժողով՝ բաղկացած 9 հոգուց։ Վեց ամիս անց կուսբյուրոն լսել է այդ հանձնաժողովի նախագահ, կուսթեկնածու Ն. Վահանյանի (կենտրոնական լաբորատորիայի վարիչ) զեկուցումը։ Պարզվեց, որ կարճ ժամանակում զգալի աշխատանք է կատարված. ավարտվել է արտադրամասերի էսթետիկական ձևավորումը. գործարանի բակում պատրաստված է հրապարակ՝ իր էստրադային բեմահարթակով (ինքնագործ խմբերի ելույթների համար), կոնկրետ առաջարկություններ են մշակված աշխատանքի ցուցանիշների հաշվարկի բարելավման և կարգապահության ամրապնդման համար, գործարանի 7 արտադրամասում և 4 բաժնում կազմակերպվել են մշտական գործող խմբակներ (տեխնիկական փաստաթղթերի, էլեկտրոնիկայի, սարքերի հավաքման, ուժեղացուցիչների, փաթաթման, խառատների, ավտոմատ հաստոցների սպասարկման և այլն), որտեղ աշխատողներն ըստ մասնագիտությունների ուսումնասիրում են ԱԳԿ-ի սկզբունքները։

Գործարանի դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները յուրաքանչյուր ամսվա վերջում անց են կացնում ԱԳԿ-ի վիճակի մասսայական ստուգատես, որը շատ օգտակար է։ Գրեթե բոլոր կոմունիստներն ու կոմերիտականներն արտադրության առաջավորներ են, պայքարում են ԱԳԿ արմատավորման համար։ Այդ առումով հատկապես արժե նշել կոմունիստներ Ե. Ղազարյանի (դիրեկտորի տնտեսական գծով տեղակալ), Հրաչիկ Գրիգորյանի (հավաքման արտադրամասի տեխնոլոգ), Կարլեն Հովակիմյանի (գործիքային արտադրամասի պետ) և շատ ուրիշների գովելի գործունեությունը։

Այո, ուսանելի շատ բան կա «Ավտոմատիկա» գործարանում։ Դրա համար էլ կուսակցության քաղաքային կոմիտեն այդ գործարանում անցկացրեց աշխատանքի գիտական կազմակերպմանը նվիրված համաքաղաքային խորհրդակցություն, որին մասնակցեցին մյուս ձեռնարկությունների կուսակցական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական աշխատողները։

Աշխատանքի գիտական կազմակերպման ուղղությամբ մեծ գործեր են կատարվում նաև Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում, որը հիմնադրվել է 1947 թ.։ Անցած քսաներկու տարվա ընթացքում ֆաբրիկայի աշխատողների թիվը 50 հոգուց հասել է 4.200-ի, համախառն արտադրանքը՝ 120 հազար ռուբլուց (նոր գներով) շուրջ 30 միլիոն ռուբլու։

Ֆաբրիկայի ադմինիստրացիան և կուսկազմակերպությունը ամենօրյա ուշադրություն են դարձնում աշխատանքի գիտական կազմակերպման հարցերին։ Բավական է ասել, որ արտադրամասերի ստեղծագործական բրիգադները 1968—1969 թվականների համար նախատեսել են շուրջ 36 պլանային



առաջադրանք։ Յուրաքանչյուր պլանի իրականացման համար մշակված են համապատասխան միջոցառումներ, որոնք հետևողականորեն իրականացվում են։ Մինչև ԱԳԿ-ի պլան-միջոցառումների կազմումը ֆաբրիկայի մի խումբ աշխատողներ գործուղվել են մեր երկրի և ԳԴՀ համանման առաջավոր ֆաբրիկաները՝ նրանց աշխատանքի փորձի ուսումնասիրման նպատակով։

Ելնելով բարեկամների հարուստ փորձից և իրենց ռեալ հնարավորություններից, մեր տրիկոտաժագործները կազմել են երկու տարվա պլան-միջոցառումներ, որոնք իրենց մեջ ընդգրկում են այն կոմպլեքս հարցերը, որոնց իրականացումով պայմաններ են ստեղծվում աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման և շահութաբերության ավելացման համար։ Ուրախալի է նշել, որ նոր միջոցառումների իրագործման շնորհիվ ֆաբրիկայի առանձին հոսքային գծերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 11—12 և արտադրանքի որակը՝ 4 տոկոսով։ Եթե նախկինում լայն հոսքային գծում կարվում էին տարբեր տեսակի տրիկոտաժեղեն, ապա ներկայումս այն բաժանված է ըստ առանձին հոսքային գծերի։ Դա պայմաններ ստեղծեց բանվորական տեղերում և ընդհանուր հոսքային գծում խոր մասնագիտացնելու բանվորներին, որը թողարկվող արտադրանքի բարձր որակի ապահովման կարևոր նախադրյալներից մեկն է։

Տրիկոտաժի ֆաբրիկայում այժմ հատուկ ուշադրություն է դարձվում արտադրության էսթետիկային։ Պլան-միջոցառումների կազմման ժամանակ հաշվի են առնված այն բոլոր պահանջները, որոնք ուղղված են աշխատանքի պայմանների բարելավմանը։ Մեկ տարվա ընթացքում անճանաչելի են դարձել ֆաբրիկայի արտադրամասերն ու նրա ընդհանուր տեսքը։ Միայն 1968 թվականին բարեկարգվել ու ասֆալտապատվել է 7.000, կանաչապատվել ու ծառատնկվել է 10 հազար քմ. տարածություն։

Աշխատանքի նորմալ պայմաններ ստեղծելու համար բոլոր տեղամասերն ապահովված են անհրաժեշտ լուսավորությամբ, սպիտակեցված ու համապատասխան գույներով ներկված են տեղամասերի շենքերի պատերն ու սարքավորումները, ամենուրեք տիրում է իդեալական մաքրություն։ Հաշվի առնելով, որ կոմբինատում բանվորական ուժի մեծ մասը կանայք են, ստեղծագործական բրիգադների առաջարկությամբ ֆաբրիկայում ստեղծված են կանանց հիգիենիկ ու բուժսպասարկման սենյակներ։

ԱԳԿ պլաններում լայն տեղ են գրավում բանուժի հոսունության վերացման միջոցառումները։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ այստեղ բանուժի հոսունության հիմնական պատճառը աշխատանքային և կենցաղային անբավարար պայմաններն են։ Ֆաբրիկայում վատ էր կազմակերպված սնունդը։ Մեկ ճաշարանը չէր ապահովում բազմամարդ կոլեկտիվին, սնունդ ընդունելու համար բանվորը հարկադրված ծախսում էր մի ամբողջ ժամ։ Պլան-միջոցառումներում խնդիր դրվեց լուծել այդ հարցը։

Ներկայումս յուրաքանչյուր արտադրամաս ունի իր առանձին ճաշասենյակը։ Համարյա բոլոր աշխատամասերում ճաշելու համար բանվորը ծախսում է 15—20 րոպե, իսկ ընդմիջման մնացած րոպեները նվիրում է հանգստին, որն, ի դեպ, կազմակերպվում է հետաքրքիր ձևերով։ Շնորհիվ այս ամենի, ներկայումս ֆաբրիկայում համարյա վերացել է բանուժի հոսունությունը։

Ուշադրության է արժանի նաև ճշգրիտ հաստոցաշինական գործարանի (դիրեկտոր՝ Գ. Պ. Ֆեոֆանով, կուսբյուրոյի քարտուղար՝ Հ. Հ. Քառյան) աշ-

խատանքի փորձը ևս։ Այստեղ առանձնացվեց հանձնաժողով՝ գործարանի դիրեկտորի տեղակալի գլխավորությամբ, որը հանգամանորեն ուսումնասիրեց աշխատանքի ու արտադրության կուլտուրայի վիճակը և 1968—1969 թթ. համար մշակեց 38 կետից բաղկացած միջոցառումների պլան։ Այդ միջոցառումների նախագիծը քննարկվեց կուսկազմակերպության դռնբաց ժողովում, արժանացավ ամբողջ կոլեկտիվի հավանությանը։

Աշխատանքի գիտական կազմակերպման ուղղությամբ լավագույն օրինակներ կարելի է տեսնել նաև քաղաքի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում, էլեկտրալամպերի, էլեկտրաջերմապարագաների, ավտոգենային մեքենաշինության, ավտոնորոգման գործարաններում և շատ ուրիշ արտադրական ձեռնարկություններում։ Աշխատանքի գիտական կազմակերպման խորհուրդներին և ստեղծագործական բրիգադներին օգնելու նպատակով ՀԿԿ Կիրովականի քաղաքային կոմիտեն մի շարք ձեռնարկություններում կազմակերպել է արտադրության հասարակական ստուգատեսներ։

Նման միջոցառումների իրականացման շնորհիվ 1968 թ. քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 8,6 տոկոսով, միջին աշխատավարձն աճեց 8,3 և օգուտների պլանը կատարվեց 111,5 տոկոսով, ստացվեց 1 միլիոն 671,2 հազար ռուբլու օգուտ։ Ավելի բարձր արդյունքների են հասել ջերմապարագաների գործարանը, տեղական շինանյութերի տրեստը, կահույքի ֆաբրիկան, ջերմաէլեկտրակենտրոնը և այլ ձեռնարկություններ։

ԱԳԿ-ի կատարելագործումը մշտական պրոցես է։ Քաղաքի աշխատավորները ամենօրյա պրպտումներով գտնում են արտադրության աճի նորանոր խթանիչներ։ Այդ գործում նրանց օգնելու են կոչված տեխնիկայի քաղաքային տունը, «Կայծ» թերթը, «Գիտելիք» ընկերության տնտեսագիտության սեկցիան։ Նրանք պետք է ավելի լայնորեն պրոպագանդեն նվաճումները, լուսաբանեն աշխատանքի գիտական կազմակերպման տեսական և գործնական հարցերը։ Դժվար է գերագնահատել նաև առաջավոր փորձի դպրոցների նշանակությունը։

Աշխատանքի գիտական կազմակերպումը հաստատորեն արմատավորվել է Կիրովականի արտադրական ձեռնարկությունների առօրյա կյանքում։ ԱԳԿ-ի ամեն մի քայլը նշանակալից ավանդ է քաղաքի, հանրապետության, երկրի հասարակական հարստության ավելացման գործում։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ


Հ. Ա. ԱՎԱԳՅԱՆ

ՀԿԿ Շամշադինի շրջկոմի առաջին քարտուղար


Հետևողականորեն կենսագործելով գյուղատնտեսության ինտենսիվ վարման վերաբերյալ կուսակցության ու կառավարության քաղաքականությունը, ՀԿԿ Շամշադինի շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպություններն անցած մեկ տարում հասել են էական հաջողությունների։ Երբ մենք 1968 թ. արդյունքները ուշադրությամբ համեմատում ենք նախորդ տարվա ցուցանիշների հետ, պարզորոշ նկատվում է, որ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները լարված ու հետևողական աշխատանքի գնով հնգամյակի երրորդ տարին դարձրին արգասաբեր տարի՝ հաղթահարելով կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ստեղծված դժվարությունները։ Անցյալ տարի, 1967 թ. համեմատությամբ, գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքն աճեց և հասավ 10 միլիոն 341 հազար ռուբլու։ Կատարվեցին պետությանը բոլոր տեսակի մթերքների վաճառքի պլանները։

Ծխախոտագործները պլանային 27,7 ցենտների դիմաց պլանտացիաների ամեն մի հեկտարից ստացան և պետությանը վաճառեցին 35 ցենտներ միջին բերք։ Առանձնապես խրախուսելի ցուցանիշների հասան Մովսեսի, Ջորաթանի, Ջինարխի, Ղրղիի ծխախոտագործները։

Հանրահայտ է, որ Շամշադինը վաղուց ի վեր հանրապետության մեջ նշանավոր է իր ծխախոտով։ Այն եղել և մնում է շրջանի տնտեսությունների ամենաեկամտաբեր ճյուղը։ Մենք այլևս չենք հրապուրվում պլանտացիաների ընդարձակմամբ, մեզ ավելի շատ զբաղեցնում է միևնույն տարածությունից ավելի շատ, բայց անպայման բարձր որակի հումք ստանալու հարցը։ Դա ինքնանպատակ ձգտում չէ. պետությանը հանձնած բարձր տեսակի ծխախոտի դիմաց կոլտնտեսականներն ավելի շատ դրամական եկամուտ են ստանում։ Ծխախոտի պլանտացիաների ինտենսիվ մշակության միջոցով 1968 թ. մեր տնտեսությունները ստացան մինչ այդ չտեսնված եկամուտ. մթերված մեկ կիլոգրամ ծխախոտի դիմաց ստացվեց 1 ռ. 68 կոպ., իսկ Մովսեսի կոլտնտեսությունում այն կազմեց 2 ռ. 05 կոպեկ։

Բարձր ցուցանիշներ ձեռք բերվեցին բերքատվության բարձրացման գործում։ Օրինակ, Ջորաթանի կոլտնտեսությունը 35 հեկտար ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 54,3 ցենտներ բերք։ Այսպիսով, շնորհիվ կուսկազմակերպությունների ձեռնարկած կազմակերպական միջոցառումների և ծխախոտագործների հերոսական աշխատանքի, շրջանը

անցյալ տարի պլանով նախատեսված 1.850 տոննայի փոխարեն պետությանը վաճառեց 2.350 տոննա ծխախոտի բարձրորակ հումք։

Շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները շրջանի էկոնոմիկայի հետագա զարգացման հեռանկարները տեսնում են այգեգործության, մասնավորապես խաղողագործության մեջ։ Բավական է նշել, որ վերջին երեք տարում խաղողի համախառն բերքն աճել է 6.487 ցենտներով։ Այս գյուղատնտեսական տարում ծխախոտի մշակության մասնակի կրճատման և նոր հողերի յուրացման (դարավանդներ) հաշվին խաղողի այգետարածությունները ընդարձակեցին ևս 200 հեկտարով։

«Այգեգործությանը լայն ճանապարհ»— կուսշրջկոմի առաջ քաշած այս լոզունգը աշխատավորները պաշտպանեցին խոսքով և գործով։ Անցած գյուղատնտեսական տարում շրջանը գերակատարեց խաղողի արտադրության և վաճառքի պլանները։ Խաղողի համախառն արտադրությունը կազմեց 3.426 տոննա։ Պլանային 2.500-ի դիմաց պետությանը վաճառվեց 2.867 տոննա խաղող։ Առանձնապես փայլուն ցուցանիշների հասան Մովսեսի, Ջորաթանի, Ն. Կ. Աղբյուրի խաղողագործները, հեկտարից ապահովելով 160—170 ցենտներ միջին բերք։ Մովսեսի կոլտնտեսության խաղողագործ Նորիկ Առաքելյանը իր մշակած այգիների ամեն մի հեկտարից ստացավ 230 ցենտներ միջին բերք։ Այդպիսի բարձր ցուցանիշների հասան նաև Ռոզա Մարտիրոսյանը (Ջորաթան), Ծատուր Միրզոյանը (Չինարի) և շատ ուրիշներ։

Գործնական քայլեր արվեցին նաև անասնաբուծության զարգացման, կաթի, ձվի, մսի արտադրության ավելացման ուղղությամբ։ Շրջկոմը ամենօրյա օգնություն է ցույց տալիս սկզբնական կուսկազմակերպություններին, տնտեսությունների ղեկավարներին՝ անասնաբուծության զարգացմանը խոչընդոտող պատճառները վերացնելու համար։ Շնորհիվ դրան, հնգամյակի տարիներին զգալի չափով աճել է անասունների գլխաքանակը, բարձրացել նրանց մթերատվությունը։ Շրջանի կոլտնտեսությունները 1966—67 թթ. միայն խոզի մսի վաճառքից ստացել են 727 հազար ռուբլի լրացուցիչ եկամուտ։ Վ. Կ. Աղբյուրի, Ղրղիի, Բերդի, Նորաշենի, Մովսեսի տնտեսությունների խոզաբուծական ֆերմաների տարեկան դրամական եկամուտները հասնում են 100—120 հազար ռուբլու։ Մենք բացառիկ ուշադրություն ենք նվիրում խոզաբուծությանը որպես բարձր եկամտաբեր ճյուղ, համաչափորեն զարգացնելով նաև անասնաբուծական մյուս ճյուղերը։ Շրջանային մարմինները գործնական միջոցներ են ձեռնարկել կերի կայուն բազայի ստեղծման համար. ընդլայնվել է հիմնական կերային կուլտուրաների արտադրությունը, բարձրացել դրանց բերքատվությունը։

Այգեգործության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը մեր շրջանին պարգևատրեցին առաջին և ծխախոտագործության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար՝ երկրորդ կարգի մրցանակով։ Այս պարգևները կոլտնտեսականների և սովխոզների բանվորների շրջանում առաջ բերեց աշխատանքային նոր ոգևորություն։ Նրանք կուսակցության ու կառավարության ջերմ հոգատարությանը ամենուրեք պատասխանեցին հայրենանվեր նոր գործերով։

Ըստ արժանվույն գնահատելով հնգամյակի երրորդ տարում ձեռք բերած հաջողությունները, շրջանի կուսկազմակերպությունը աշխատավորության ուշադրությունը սևեռեց չլուծված պրոբլեմների և նոր տարվա խնդիրների վրա։ 1968 թ. վերջերին շրջկոմի հերթական պլենումը քննության առնելով ՍՄԿԿ



Կենտկոմի դեկտեմբերյան և ՀԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումների արդյունքները և շրջանի կուսկազմակերպությունների խնդիրները հարցը, նշեց որ շրջանի կուսկազմակերպությունները և բոլոր կոմունիստները մեծ անելիքներ ունեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացման, հողերի, տեխնիկայի, պարարտանյութերի խելացի օգտագործման, գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման, գյուղում քաղաքական կազմակերպական աշխատանքի ուժեղացման ասպարեզում։ Պլենումը կոմունիստների և բոլոր աշխատավորների ուշադրությունը բևեռեց եղած ռեզերվների և հնարավորությունների օգտագործման, թերությունների բացահայտման և դրանց վերացման հարցերի վրա։

Պլենումի որոշման հիման վրա մշակվեցին շրջանի տնտեսություններում իրականացվելիք տնտեսական և քաղաքական-կազմակերպական աշխատանքների ուժեղացման միջոցառումների պլան։ Այդ միջոցառումների իրականացումը մեծապես նպաստեց նոր տարվա խնդիրների հաջող կատարմանը։

Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի այն ցուցումով, որ չի կարելի տարվել հաջողություններով, պարադայնությամբ և աղմկարարությամբ, միշտ պետք է ռեալիստորեն գնահատել սեփական ուժերն ու հնարավորությունները, շրջկոմն սկսեց ավելի մոտիկից զբաղվել կոլտնտեսային և սովխոզային կուսկազմակերպությունների գործունեության բարելավման, նրանց մարտունակության բարձրացման հարցերով։ Շրջկոմի աշխատողներն սկսեցին հաճախակի լինել տնտեսություններում, զբաղվել կուսակցական կազմակերպական աշխատանքի բարելավման, արտադրության մեջ կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման, նրանց ազդեցության ուժեղացման և առաջատար դերի ապահովման հարցերով։ Սկզբնական կուսկազմակերպություններն այցելելիս շրջկոմի աշխատողներն սիստեմատիկաբար մասնակցում են կուսբյուրոների նիստերին ու կոմունիստների ժողովներին, օգնում դրանց նախապատրաստմանը ու հարցերի ընտրությանը, որոշումների կատարման ստուգման կազմակերպմանը։

Երիտասարդ կոմունիստ Վալոդյա Ոսկանյանը Չինարի գյուղի կոլտնտեսությունում բրիգադավար է։ Նա աշխատում է բարեխղճությամբ, իր բարի խորհուրդներով օգնում ծխախոտագործներին՝ բարձր ցուցանիշների հասնելու։ Վ. Ոսկանյանի ղեկավարած բրիգադի ծխախոտագործները 1968 թ. իրենց մշակած 10,7 հեկտար պլանտացիաների ամեն մի հեկտարից ստացան 56 ցենտներ միջին բերք, տնտեսությանը բերին 111,722 ռ. դրամական եկամուտ։ Իսկ Ն. Կ. Աղբյուրի ծխախոտագործուհի Նիվիկ Զոբանյանը 0,5 հեկտարից ստացավ 67,8 ցենտներ բերք։ Նման փաստերը եզակի չեն։ Շրջանում տարեցտարի խտանում են ծխախոտի բարձր բերքի համար պայքարողների շարքերը, որոնց առջևից են քայլում կոմունիստները։

Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի կուսակցական կադրերի ճիշտ ընտրությունը, տեղաբաշխումը։ Կուսակցական կազմակերպությունները հիմնականում գլխավորում են իրենց գործը սիրող ու հասկացող, գրագետ ու գործունյա քարտուղարներ, որոնք մշտապես զբաղվում են կոմունիստների գաղափարական դաստիարակության հարցերով, աշխատում են անկուսակցական մասսաների շրջանում, գործնականորեն կապված են նրանց հետ։ Կուսակցական ջանասեր աշխատողներ են Վազգեն Մուսինյանը (Վ. Կ. Աղբյուր), Վա-

ղոդյա Գրիգորյանը (Այգեձոր), Գերասիմ Մաճկալյանը (Ջինջին), Գուրգեն Օհանյանը (Թովուզ) և շատ ուրիշներ։

Մենք շերտավորված աշխատանք ենք տանում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ։ Շրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում հաճախակի լսվում են կուսակցական կազմակերպությունների հաշվետվություններ։ Շրջկոմին կից ստեղծված է կուսկազմակերպությունների քարտուղարների մշտական գործող սեմինար։ Իր ժամանակին սեմինարներից մեկը նվիրվել է Սկզբնական կուսակցական կազմակերպությունների խնդիրները նոյեմբերյան պլենումի որոշումը կենսագործելու ուղղությամբ թեմայի ուսումնասիրմանը։ Հաճախակի կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինարները հրավիրվում են շրջանի այս կամ այն առաջավոր տնտեսությունում, որտեղ ուսանելի է կուսակցական աշխատանքի փորձը։ Առաջավոր փորձի ուսումնասիրությունն ու արմատավորումը, սեփական սխալների վրա մարդկանց սովորեցնելը կուսկազմակերպությունների քարտուղարների ուսուցման և կոփման լավագույն մեթոդներից մեկն է։

Գյուղատնտեսության արտադրության զարգացման գործում տեղի ունեցած առաջընթացը, միաժամանակ, արդյունք է այն բանի, որ կուսշրջկոմը և սկզբնական կուսակցական կազմակերպությունները զգալի ուշադրություն են նվիրում տնտեսական ղեկավար կադրերի ընտրությանը և դաստիարակությանը։ Ներկայումս կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների ճնշող մեծամասնությունն ունեն բարձրագույն կրթություն, բոլոր տնտեսություններն էլ ապահովված են բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ որակյալ մասնագետներով։ Եթե 1965 թ. շրջանի տնտեսություններում աշխատում էին ընդամենը 40 մասնագետ, ապա այսօր դրանց թիվը հասնում է 75-ի, որոնցից 55-ն ունեն բարձրագույն կրթություն։ Արտադրության հմուտ ղեկավարի համբավ են ձեռք բերել և աշխատավորության շրջանում վստահություն ու հարգանք են վայելում Սեդրակ Պապյանը, Աղատ Ծարբինյանը, Արմենակ Ուզունյանը, Ռուբեն Ոսկանյանը և ուրիշները։

Շրջանային կոմիտեն կադրերի հետ տարվող աշխատանքում կարևոր տեղ է հատկացնում նրանց ուսուցմանը։ Շրջկոմին կից ստեղծված է հասարակական հիմունքներով գործող գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող համալսարան։ Սիստեմատիկ աշխատանք է կատարվում նաև բրիգադավարների և ֆերմաների վարիչների ագրո-զոոուսուցման ուղղությամբ։

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները պայմանավորված են նաև այն բանով, որ շրջկոմն ու կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում սոցիալիստական մրցության կազմակերպման ու ղեկավարման վրա։ Մեր այգեգործները, ծխախոտագործները, անասնապահները պարտավորվել են 1969 թ. արտադրել 4.632 տոննա խաղող, 2.100 տոննա ծխախոտ, 1.180 տոննա միս և այլն։

Շրջանի տնտեսություններում շարունակվում է համաժողովրդական լայն շարժում հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։ Սոցիալիստական մրցության կազմակերպման հիմքում դրված են Վ. Ի. Լենինի մշակած սկզբունքները. մրցման հրապարակայնությունը, արդյունքների համեմատումը, դրական փորձի կրկնությունը և ընկերական փոխօգնությունը, արտադրության առաջավորների և նորարարների փորձի լայն մասսայականացումը, նրանց բարոյական ու նյութական խրախուսումը։ Հետևողականորեն կիրառելով լենինյան սկզբունքները, համոզման



մեթոդը դարձնելով կուսակցական աշխատանքի հիմնական ձևը, շրջկոմը և կուսկազմակերպությունները ապահովում են կոմունիստների ավանգարդային դերը մրցության ամբողջ ընթացքում։

Յուրաքանչյուր կոմունիստ, սովետական քաղաքացի իր աչքի առջև ունենալով Վ. Ի. Լենինի աշխատանքի ու ապրելակերպի անձնական օրինակը, պայքարում է նախորդ տարվա իր ցուցանիշները գերազանցելու համար։ Ուստի, մեզ մոտ բոլոր նախադրյալները կան հոբելյանական տարվա մրցությունը լավագույն արդյունքներով ավարտելու համար։ Լևոն Զարգարյանի, Ռուբեն Բաղալյանի (Մովսես) ղեկավարած բրիգադները պարտավորվել են այս տարի յուրաքանչյուր հեկտարի խաղողի միջին բերքը հասցնել 180—190 ցենտների։ Նրանց այգիներում աճեցրած առատ բերքը ավելի բարձր ցուցանիշներ է խոստանում։ Պառավաքարի խաղողագործները պայքարում են 1.200 տոննա խաղողի համար։

Հոբելյանական տարվա պարտավորությունները կատարելու ձգտումով են աշխատում մեր ծխախոտագործները։ Համբարձում Բաբայանի (Այգեձոր), Իսակ Ուզումյանի (Զորաթան), Իվան Բաղալյանի (Մովսես) բրիգադներն ու օղակները խոստացել են հեկտարից ստանալ 50—55 ցենտներ ծխախոտի միջին բերք։

Կոմունիստները գտնվում են գյուղատնտեսության հետագա զարգացման համար պայքարի ավանգարդում։ Շրջանի կուսանդամ-թեկնածուների 83 տոկոսն աշխատում է անմիջապես արտադրության մեջ։ Մեկ հոդվածում հնարավոր չէ թվարկել արտադրության մեջ աչքի ընկնող բոլոր մարդկանց անունները, սակայն անհրաժեշտ է նշել Ս. Քալանթարյանի, Մ. Բաբայանի (Զորաթան), Ն. Միրզոյանի (Պառավաքար), Ս. Աբգարյանի (Բերդ), Ա. Մեսրոպյանի, Մ. Ավագյանի (Վ. Կ. Աղբյուր) և շատ ուրիշների լավագույն աշխատանքը։

Կուսակցության շրջանային կոմիտեն և կուսակցական կազմակերպությունները իրենց աշխատանքի հիմքում դնելով Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ կազմակերպական աշխատանքում գլխավորը մարդկանց ճիշտ ընտրության ու կատարման ստուգումն է, ձգտում են բարձրացնել կոմունիստների պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, ստեղծել կուսակցական ու պետական ամուր կարգապահություն, լուրջ ուշադրություն դարձնում որոշումների կատարմանը։ Մենք ջանում ենք յուրաքանչյուր որոշում ամրապնդել կազմակերպական աշխատանքով, այն դարձնել շարքային կոմունիստի, արտադրության ղեկավարի պրակտիկ գործունեության ծրագիրը։

Նավուրի սովխոզում անցյալ տարի կուսկազմակերպության անբավարար աշխատանքի պատճառով ընկել էր կարգապահությունը, թույլ էին տրվել կերի շռայլումներ, ոչ արտադրական ծախսեր։ Այս ամենի հետևանքով տնտեսական տարին փակվել էր ցածր ցուցանիշներով։ Կուսշրջկոմը անդրադառնալով այդ հարցին, կոնկրետ միջոցներ ձեռնարկեց սովխոզի կադրերի պատասխանատվության բարձրացման, արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովման համար։

Այժմ Նավուրի սովխոզում զգալիորեն ամրապնդվել է կուսակցական և աշխատանքային կարգապահությունը, բարձրացել է կադրերի պատասխանատվությունը, բարելավվել են արտադրության ընդհանուր ցուցանիշները։

Ղեկավարման լենինյան արվեստի բնորոշ գծերից մեկը հեռանկարով աշխատելն է։ Առանց լավ մտածված, գիտականորեն հիմնավորված հեռա-

նկարային պլանի դժվար է իրականացնել ճիշտ կուսակցական ղեկավարություն։ Խորհելով այսպես, մենք գալիս ենք այն համոզման, որ մեր շրջանի այսօրվա ցուցանիշները հեռու են վաղվա աճող պահանջները բավարարելուց, որ մեզ մոտ գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացումը կապված է առաջիկա տարիներին ջրաշինարարական լայն աշխատանքների ծավալման հետ։

Ներկայումս շրջանում ոռոգելի հողատարածությունները կազմում են 3.177 հեկտար։ Շատ տնտեսություններ սեփական միջոցների հաշվին կառուցում են փոքր հզորության ջրհան կայաններ, Մովսեսի կոլտնտեսությունը 40 հեկտար խաղողի այգիները ոռոգում է այսպես կոչված փակ սիստեմի միջոցով։ Այս ամենը օգտակար է, բայց հարցի արմատական լուծում չէ։ Շրջանի ջրային ռեսուրսների լիարժեք օգտագործման միակ ուղին մենք տեսնում ենք երկաստիճան և եռաստիճան հզոր ջրհան կայանների կառուցման մեջ։ Գալիք գյուղատնտեսական տարում Խնձորուտ գետի ջրային պաշարները երկաստիճան կայանով կհասնեն Նորաշենի, Ջորաթանի, Մովսեսի, Ղրղիի, Բերդի դաշտերը, հիմնականում կբավարարվի այդ տնտեսությունների՝ ջրի նկատմամբ ունեցած պահանջները։ Նախապատրաստական աշխատանքներ են տարվում Տաուշ և Հախում գետերի բազայի հիման վրա սկսելու ջրամբարների կառուցումը։ Հեռու չէ այն օրը, երբ գյուղի աշխատավորները կազատվեն բնության ողորմությունից և իրենց աշխատանքի վերջնական արդյունքը տեսնելու հաստատուն վճռականությամբ շունչ ու կյանք կտան հողին՝ մեր հարստության աղբյուրին։

Վերջին տարիներին մեր կոլտնտեսությունների և սովխոզների ձեռք բերած արտադրական հաջողությունները նյութական բազա ստեղծեցին կուլտուր-լուսավորական օբյեկտների շինարարության ծավալման համար։ Ղրղիի, Մովսեսի կուլտուրայի պալատները վաղուց ի վեր դարձել են աշխատավորների հանգստի սիրելի վայրը։ Կուլտուրայի պալատներ են կառուցվում Ծաղկավան և Թովուզ գյուղերում։

Կուսշրջկոմն առանձնահատուկ ուշադրություն է դարձնում նաև դպրոցական շինարարությանը։ Մենք ձգտում ենք նրան, որ յուրաքանչյուր գյուղ ունենա իր դպրոցական տիպային շենքը։ Շուտով շրջանի Չինար, Ջորաթան, Վ. Կ. Աղբյուր գյուղերում և Այգեպար ավանում կավարտվի դպրոցական նոր շենքերի կառուցումը։ Սկսված են Ծաղկավանի և Նավուրի դպրոցական նոր շենքերի շինարարությունը։

Հոդվածն սկսելով գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերից, ես պատմեցի կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական հաջողությունների մասին, շոշափեցի կուլտուրական շինարարության ընդհանուր հարցերը։ Այդպես է նաև կյանքում։ Տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերը միահյուսվում են։ Էկոնոմիկայի զարգացումը միշտ պայմաններ է ստեղծում կուլտուրական շինարարության ճակատի ընդլայնման, աշխատավորների կյանքի պայմանների էլ ավելի բարելավման համար։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին սկսված սոցիալիստական մրցությունը ամենուրեք լայն տարածում է ստանում. մասնակցելով այդ համաժողովրդական մրցությանը, Շամշադինի շրջանի աշխատավորները գործադրում են իրենց բոլոր ջանքերը, որպեսզի աշխատանքային նոր հաջողություններով նշանավորեն պատմական տարելիցը։

# ԱՎԱԳՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

Ս. Ե. ԳԻՆՈՍՅԱՆ

Արթիկտուֆի կուսկոմիտեի քարտուղար

Արագածի ստորոտում փռվել է տուֆաշխարհը։ Այստեղ համաչափ խփում է լիարյուն կյանքի զարկերակը, զգացվում մեծ կոլեկտիվին հատուկ մարտական թափն ու ոգին։ Այսօր, երբ պայքար է մղվում մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանը արժանավայել կերպով դիմավորելու համար, շատ հանքերում մրցության կրակն ավելի է թեժացել, մի հաջողությունը ձեռք է բերվում մյուսի հետևից։ Առանձնապես բարձր ցուցանիշների են հասել մեքենայացված հանքերի կոլեկտիվները։ Ուրախալի է, որ հաջողության մեջ իրենց արժանի բաժինն ունեն կոմերիտականներն ու երիտասարդները։ Նրանցից շատերը հայրենանվեր գործերի, արժեքավոր նախաձեռնությունների հեղինակներ են, նորի, առաջավորի իսկական ջատագովներ։

№ 8 հանքի կոլեկտիվը բարի համբավ է վայելում ամբողջ ձեռնարկությունում։ Կոլեկտիվի անդամները հիմնականում երիտասարդներ են։ Այս հանքում է ծնվել կոմունիստական աշխատանքի շարժումը։ Նախաձեռնությունը պատկանում է մի խումբ կոմերիտական մեխանիզատորների, որոնք պայծառ լավատեսությամբ նայում են հեռուն, իրենց կյանքի իմաստը տեսնում թեժ պայքարում։ Երիտասարդների նախաձեռնությունն արժանացավ ձեռնարկության կուսակցական և կոմերիտական կոմիտեների աջակցությանը։ Կոմունիստները ոչ միայն խրախուսեցին կոմերիտականների առաջադիմական քայլը, այլև դժվարին պահին նեցուկ դարձան, անձնական օրինակով թևավորեցին նրանց։

Նույն հանքում է աշխատում փառաբանված մեխանիզատոր Պողոս Նահապետյանը, որը ՍՄԿԿ XXIII համագումարի պատգամավոր էր։ Բարի ու սրտաբաց մարդ է Պողոսը։ Նա անսահմանորեն սիրում է կյանքը, աշխատանքի մեջ դնում իր խիղճը, ուժն ու եռանդը։ Գաղափարական համոզվածություն և հավատ կուսակցության գործի հաղթանակի նկատմամբ. ահա թե Պ. Նահապետյանը ինչ է դաստիարակում երիտասարդների մեջ։

Հավատ... այդ այն է, ինչ կենսականորեն անհրաժեշտ է կոմունիզմի երիտասարդ կառուցողին։ Այդ հավատով են պայքարի ելել հանքի կոմերիտականները։ Այստեղ ակնածանքով ու հպարտությամբ են հիշատակվում տուֆահատ ագրեգատի մեքենավարներ Միսաք Բաղդասարյանը, Լենվել Աբրահամյանը, Վանուշ Աջամօղլյանը և շատ ուրիշները։ Պայքարի ամեն մի օր նոր հաղթանակ է բերում, բերկրանքով լցնում ջահել սրտերը։

Լավ օրինակները երիտասարդության վրա ավելի ուժեղ են ներգործում, քան ընդհանուր բարոյական խրատները։ Դա լավ են հասկանում հանքաշխարհի կոմունիստները։

...Վիլիկ Պապոյանն անհոգ, անփորձ պատանի էր, երբ առաջին անգամ ոտք դրեց հանք։ Արտադրության վետերաններ Պավլական Ջանոյանը, Սենեքերիմ Բիշախչյանը, վաստակավոր շինարար Գուրգեն Համբարձումյանը, ՀԿԿ Կենտկոմի անդամ Վարդգես Վարդանյանը և շատ ուրիշներ հոգատարությամբ շրջապատեցին անփորձ պատանուն, օգնեցին նրան, ուղղեցին սխալները, սովորեցրին, թե ինչպես պետք է հաղթահարել դժվարությունները, հա-

վատալ սեփական ուժերին։ Նաև ուրախացան նրա անդրանիկ հաջողություններով, ոգևորեցին, թևավորեցին նրան։ Իսկ այդ ամենը չէր կարող չունենալ իր դաստիարակչական նշանակությունը։

Աշխատանքի նկատմամբ ավագների կոմունիստական վերաբերմունքն էր, որ նպաստեց երիտասարդական նախաձեռնությունների զարգացմանը, նորի երևան գալուն։ Ներկայումս Արթիկտուֆում կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ներգրավված են 51 կոլեկտիվ, բրիգադա ու արտադրամաս։

№ 8 հանքը, հիրավի դարձել է հիշարժան գործերի ու նախաձեռնությունների օջախ։ Կուսակցական և կոմերիտական ժողովները քիչ չէին անդրադարձել մեքենայացված հանքերում տուֆահատ ագրեգատների արտադրողականությունը բարձրացնելու, հանույթն ավելացնելու հարցերին։ Թեև այդ ուղղությամբ նկատելի առաջխաղացում էր կատարվել, բայց ձեռք բերված արդյունքները դեռևս գոհացուցիչ չէին. մի՞թե հնարավոր չէ հասնել ցանկալի արդյունքի, ի՞նչ կարելի է անել դրա համար։ Այս հարցերը հանգիստ չէին տալիս երիտասարդ մեխանիզատորներ Բաղդասարյանին, Ղազարյանին, Կարապետյանին։ Նրանք առաջարկեցին անցնել երկհերթ աշխատանքի։

Կուսակցական կոմիտեն քննարկեց նրանց առաջարկությունը ու իրագործեց կոնկրետ միջոցառումներ։

№ № 6, 8, 10 հանքերում տեղադրվեցին էլեկտրային լուսարձակներ, քարհատ ագրեգատներն ապահովվեցին լրացուցիչ պահեստամասերով, լրացվեց մեխանիզատորների պակասը։ Կոմերիտականներն ու երիտասարդները կանգնեցին հերթափոխի և համատեղ ջանքերով ապահովեցին մեքենաների անխափան, արդյունավետ աշխատանքը։ Դրա շնորհիվ էլ մեքենայացված հանքերի մեխանիզատորներն անցած վեց ամսում տվել են 58.510 խորանարդ մետր պատրաստի շինաքար։ Դա 1.321 խորանարդ մետրով ավել է պլանով նախատեսվածից։

Կառամատույցից դուրս է գալիս բեռնատար գնացքը՝ փոխադրելով Արթիկի հռչակավոր տուֆը, որն իր վրա կրում է լեռնագործի կոշտացած ձեռքի հետքը։ Այն դառնում է հոյակապ պալատ ու գեղաքանդակ կամար, գործարանային կորպուս ու բնակելի շենք, դպրոց ու մանկապարտեզ։ Ցավոք, պատահում է, որ նույն գնացքում երբեմն լինում են նաև ցածրորակ քարեր, որոնք առաջացնում են շինարարների իրավացի դժգոհությունը։ Հարկավոր է թանկ գնահատել տուֆագործի աշխատանքը, ոչնչով չարատավորել նրա պատիվը։ Կոմերիտականները մտածեցին ու վճռեցին մասսայական պայքար կազմակերպել խոտանի դեմ։ Շինարարությանը տալ միայն բարձրորակ քար— այս նշանաբանով մրցություն ծավալեցին № № 1, 6, 8, 9 և 10 հանքերի բանվորները։ Ստեղծարար մրցությունը ցանկալի արդյունք տվեց։ Անցած ամիսներին այդ հանքերում առաջին տեսակի քարի արտադրանքն աճեց ու հասավ 93—98 տոկոսի։ Որակի բարձրացման գործում առավել բարձր ցուցանիշների հասան երիտասարդ տուֆագործներ Հ. Պողոսյանը, Ս. Փոթոյանը, Մ. Աղրամանյանը, Ժ. Պնդուկյանը և շատ ուրիշները։

Ձեռնարկությունում աշխատող երիտասարդ նորարարները, հետևելով կոմունիստ ռացիոնալիզատորներ Արամ Գասպարյանի, Վարոս Սիմոնյանի, Կամիսար Ղազարյանի, Երեմ Մկրտչյանի օրինակին, հանդես եկան արժեքավոր առաջարկներով։ Կոմերիտական փականագործ Արամայիս Սուջյանը ստեղծեց տուֆահատ ագրեգատի կտրող սկավառակի համեմատաբար էժան ու դիմացկուն ատամներ։ Մեկ ուրիշը՝ խառատ Ռաֆիկ Մնացականյանը պատրաստեց



շաղափող հաստոցի նոր հարմարանք, որն զգալիորեն հեշտացրեց ու արագացրեց մետաղների մշակումը։

Երիտասարդի միտքը որոնում է։ Ամեն կերպ պետք է ուղղություն տալ նրան, մղել արտադրության տեխնոլոգիան անընդհատ կատարելագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու նպատակին։ Արթիկտուֆի կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները հենց այդպես էլ վարվում են։

Վաստակած տուֆագործն աշխատանքից տուն էր դառնում ու չգիտեր ուր գնա, ինչպես անցկացնի իր ազատ ժամանակը։ Ակումբը չէր գրավում նրան, որովհետև այնտեղ հետաքրքիր միջոցառումներ չէին կազմակերպում։ Եվ դա այն պատճառով, որ շատ երիտասարդներ խուսափում էին մասնակցելու ակումբի աշխատանքներին։ Կոմունիստները այդ գործում ևս օրինակ տվեցին։ Պետք էր տեսնել, թե կոմունիստ, արտադրության վետերան Գևորգ Եղիազարյանը ինչպիսի սիրով ու եռանդով էր աջակցում երիտասարդներին, մասնակցում թատերական, երգի-պարի խմբերի ստեղծմանը։ Եվ ավագի օրինակը հուշեց, ոգևորեց ջահելներին։ Կուսակցական ու կոմերիտական կոմիտեներն սկսեցին պարբերաբար կազմակերպել բովանդակալից զրույցներ ու զեկուցումներ։ Լեռնագործը լսեց ագիտատորի, քաղինֆորմատորի նոր, սրամիտ խոսքը, գտավ իրեն հուզող հարցերի պատասխանը։ Եվ կուլտուրայի օջախի առօրյան դարձավ բեղուն, հետաքրքիր։ Հիմա արդեն տուֆագործը գնալու, հաճելի երեկո անցկացնելու տեղ ունի։

Արթիկտուֆում աշխատում են 300-ից ավելի կոմերիտականներ ու արտամիութենական երիտասարդներ։ Դա մի խոշոր ջոկատ է, որն իր հետ բերել է թարմություն, կենսունակություն, նոր հույսեր ու երազներ։ Ջահելները կոփվում են պայքարի քուրայում, հարստանում հոգով, փորձով, դառնում ավագների արժանավոր փոխարինողներ։

Տուֆագործների համերաշխ, աշխատասեր կոլեկտիվը ուսանելի շատ բան տվեց երիտասարդներին. տվեց համագործակցության ու փոխադարձ օգնության, դժվարությունը հաղթահարելու, նպատակին հասնելու իսկական օրինակ։ Աշխատանքը ոչ միայն ամենայն բարիքի մայրն է, այլև երջանկության աղբյուրը։ Կուսակցական կոմիտեն այս ճշմարտությունը հասցրեց յուրաքանչյուրին և հենց դրանից էլ սկսեց երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը, ջահելների մեջ վառ պահելով աշխատասիրության ու պատվասիրության ոգին։ Սակայն ամեն ինչ հեշտ ու սահուն չընթացավ։ Երիտասարդներից մեկը աչքը դրել էր հեշտ գործի, խուսափում էր ֆիզիկական ծանր աշխատանքից։ Կոմունիստ Սուրեն Հովհաննիսյանը մտերիմ, սրտաբաց զրույց ունեցավ նրա հետ, խորհուրդներ տվեց և օգնեց արտադրության մեջ գտնելու իր տեղը։ Այդպես էլ եղավ։

Կուսակցական կոմիտեն երիտասարդության դաստիարակության շատ նուրբ հարցերը լուծում է ոչ թե բարոյական քարոզներով, այլ համառ, համբերատար աշխատանքով և նրա այդ ջանքերն իզուր չեն անցնում, պտուղներ են տալիս։ Անշուշտ դեռ ամեն ինչ չի արված երիտասարդության հոգևոր ու ֆիզիկական դաստիարակության գործը հիմնովին բարելավելու համար։ Բայց սկիզբը լավ է դրված. ավագների պայծառ օրինակով Արթիկտուֆում ապրում ու աշխատում է մի հիանալի սերունդ, որը անդադրում կերպով պայքարում է արժանավայել կերպով դիմավորել մեծ Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանը։

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԳՈՐԾԸ

Ա. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

ՀԼԿԵՄ Կենտկոմի՝ երիտասարդ գիտնականների խորհրդի նախագահ

Շատ ժամանակ չի անցել երիտասարդ գիտնականների հետ տարվող աշխատանքի մասին ՀամԼԿԵՄ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի գիտության և տեխնիկայի պետական կոմիտեի, ՍՍՀՄ ԳԱ նախագահության և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության ընդունած որոշումից։ Այդ որոշման անհրաժեշտությունը թելադրված է գիտության բնագավառում երիտասարդության տեսակարար կշռի աճումով, ինչպես նաև գիտական կադրերի պատրաստման գործի անչափ կարևորությունով։

Այժմ մեր երկրում աշխատում են 800 հազար գիտնական, ավելի քան մեկ ու կես միլիոն ինժեներ, տեխնիկ և լաբորանտ։ Գիտությունը, որպես զբաղվածության ոլորտ, իր մասշտաբներն ընդլայնում է 2—3 անգամ ավելի արագ, քան մյուս բնագավառները։ Սովետական Միությունում գործում են ավելի քան 767 բարձրագույն ուսումնական հաստատություն, մոտ 4.700 գիտական հիմնարկություն։ Գիտությունը, հիրավի, դարձել է ժողովրդի սեփականությունը։ Բացի պրոֆեսիոնալ գիտնականներից, գիտական աշխատանքի տարրերը դարձել են ինժեներների, գյուղատնտեսների, մանկավարժների, բժիշկների, բանվորների ու կոլտնտեսականների բազմամիլիոն բանակի աշխատանքի անհրաժեշտ մասը։ Գիտական կադրերի բուռն աճի հետ համընթաց տեղի է ունենում գիտության երիտասարդացման պրոցես։ Այժմ մեր երկրի գիտնականների կեսից ավելին երիտասարդությունն է (մինչև 33 տարեկան)։

Մեր հանրապետության գիտահետազոտական հիմնարկություններում ավագ սերնդի գիտնականների հետ ուս-ուսի աշխատում են նաև երիտասարդները, որոնք աճել, դաստիարակվել ու հասակ են առել Լենինյան կոմերիտմիության շարքերում։ Նոր նվաճումներ են ձեռք բերել Բյուրականի աստղադիտարանի երիտասարդ գիտնականները։ Ֆիզիկայի ինստիտուտում տեղադրված հզոր էլեկտրոնային արագացուցիչի ստեղծման և գործարկման աշխատանքներում մասնակցած գիտնականների ու ինժեներների մեծ մասը երիտասարդներ էին, որոնք միջուկային ֆիզիկայի բնագավառում հաջողությամբ շարունակում են իրենց հետազոտությունները։ Այդ ինստիտուտի մի խումբ գիտական աշխատողներ և ինժեներներ անցյալ տարի արժանացան Հայաստանի լենինյան կոմերիտմիության անվան մրցանակին։ Նշանակալի հաջողություններ են ձեռք բերել նաև նուրբ օրգանական, օրգանական քիմիայի, ֆիզիոլոգիայի, բիոքիմիայի, երկրաբանության, ինչպես նաև հումանիտար գիտությունների ինստիտուտների երիտասարդ գիտնականները։

Երիտասարդ գիտական ինտելիգենցիայի անընդհատ աճը, նրա ազդեցությունը երիտասարդության լայն խավերի վրա, նրա աշխատանքի յուրահատուկ բնույթը կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցնում են լրջորեն հոգալ երիտասարդ գիտաշխատողների ինչպես ստեղծագործական, պրոֆեսիոնալ աճի, այնպես էլ նրանց աշխարհայացքի ձևավորման համար։



Նշված խնդիրների լուծման վրա էլ կողմնորոշվում են գիտահետազոտական հիմնարկությունները և բուհական կոմերիտական կազմակերպությունները, երիտասարդ գիտնականների խորհուրդները՝ ելնելով երիտասարդ գիտնականների հետ տարվող աշխատանքի մասին վերը նշված որոշումից։

Երիտասարդ գիտնականների հետ տարվող աշխատանքում բազմաթիվ հարցերից կարելի է առանձնացնել չորսը, որոնք, մեր կարծիքով, ավելի հրատապ ու կարևոր են։ Առաջինը երիտասարդ գիտնականի ձևավորման ու աճի, գիտության մեջ խորանալու, արտադրության մեջ նրա արժեքավոր առաջարկությունների ու փորձերի ներդրման կազմակերպումն է։ Երկրորդը՝ երիտասարդ գիտնականի աշխարհայացքի, նրա քաղաքացիական հատկանիշների ձևավորման և մարքս-լենինյան դաստիարակության միջոցառումների մշակումն է։ Երրորդը՝ գիտական կադրերի պատրաստման գործում կոմերիտմիության, և ամենից առաջ, երիտասարդ գիտնականների մասնակցության ապահովումն է, ասպիրանտների՝ գիտական կադրերի ռեզերվի հետ տարվող աշխատանքի կազմակերպումը։ Չորրորդ՝ հասարակական և բնական գիտությունների բնագավառներում աշխատող երիտասարդ գիտնականների ներգրավումն է գիտության կարևոր պրոբլեմների ուսումնասիրության և մշակման գործում։

Հայաստանի կոմերիտմիության Կենտկոմի՝ երիտասարդ գիտնականների խորհուրդն իր գործունեության նպատակն է համարում նշված խնդիրների իրագործումը։ Խորհրդի անդամներն են գիտության երիտասարդ դոկտորներ, թեկնածուներ և ասպիրանտներ։ Խորհուրդը կազմված է 8 տարբեր սեկցիաներից, որոնք ներկայացնում են գիտության տարբեր բնագավառներ։ Խորհուրդներ են ստեղծվել նաև հանրապետության գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի մեծ մասում։ Գիտության կազմակերպման գործում երիտասարդ գիտնականների խորհուրդների դերն ընդգծելու համար նշենք, որ ՀամԼԿԵՄ Կենտկոմի, ՍՍՀՄ ԳԱ նախագահության և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության համատեղ որոշմամբ այդ խորհուրդների նախագահները պետք է լինեն տվյալ գիտական հիմնարկության գիտական խորհրդի անդամը։

Մեր հանրապետությունում գիտական կադրերի պատրաստումը հիմնականում կատարվում է ասպիրանտուրայի միջոցով։ Վերջին տարիներին գիտության տարբեր բնագավառներում և, հատկապես, նորագույն ուղղությունների գծով աճել են բազմաթիվ բարձր որակավորում ունեցող աշխատողներ, որոնց աշխատությունները լայն ճանաչում են գտել մեր երկրում, և նրա սահմաններից դուրս։ Սակայն որոշ մասնագիտություններից, ցավոք, գիտության անդաստան են մտնում սահմանափակ գիտելիքների տեր և գիտական աշխատանքի հմտություն չունեցող շրջանավարտներ։ Դրան նպաստում է ասպիրանտի նյութական անապահով վիճակը և բնակարանային հարցի աղոտ հեռանկարը։ Բանն այն է, որ արտադրության մեջ մասնագետը մի քանի անգամ ավելի է վարձատրվում, քան ասպիրանտի թոշակն է։ Այդ պատճառով բուհերի լավագույն շրջանավարտների մի մասը գերադասում է աշխատել արտադրության ոլորտում, քան՝ գիտության։

Յուրաքանչյուր ինստիտուտի կոմերիտական կազմակերպությունը և երիտասարդ գիտնականների խորհուրդը պետք է ակտիվորեն օգնեն դիրեկցիային և կուսակցական կազմակերպությանը՝ ասպիրանտների ընտրության, կադրերի որակավորման բարձրացման գործում։ Դրա հետ միասին ինստի-

տուտների ղեկավարները երիտասարդ գիտնականների և մասնագետների հետ կապված հարցերը լուծելիս անպայման պետք է հաշվի առնեն վերոհիշյալ կազմակերպությունների կարծիքը։ Այդ տեսակետից մեր երկրի մի շարք կենտրոնական ինստիտուտներ կուտակել են ուսանելի փորձ, որին մենք պետք է հետևենք։ Օրինակ. պրոֆ. Ն. Ե. Ժուկովսկու անվան աէրոդինամիկայի ինստիտուտում դիրեկտորի հրամանով երիտասարդ գիտական աշխատակիցների և մասնագետների ընդունման ու ազատման, հերթական կարգի շնորհման, աշխատավարձի և պաշտոնի բարձրացման, գիտական ղեկավարության և առեստացիայի, բնակելի տարածության և հանրակացարանում տեղերի բաշխման, սանատորիաների և հանգստյան տների ուղեգրերի բաժանման հարցերը լուծվում են միայն կոմերիտական կազմակերպության և երիտասարդ գիտնականների ու մասնագետների խորհրդի անմիջական մասնակցությամբ։ Այդ ուղղությամբ որոշակի քայլեր են արվում նաև Երևանի մաթեմատիկական մեքենաների ինստիտուտում։

Որոշ գիտահետազոտական ինստիտուտներում կիրառվում է հատուկ ասպիրանտական դպրոցների պրակտիկան։ Դրա էությունն այն է, որ գիտության տվյալ բնագավառի խոշոր մասնագետներն ասպիրանտների համար կարդում են դասախոսություններ, կազմակերպում զրույցներ ու հանդիպումներ նշանավոր գիտնականների հետ։ Դա խիստ անհրաժեշտ է։ Երիտասարդ գիտնականների աճը պետք է ընթանա նաև նույն մասնագիտության գծով տարբեր ինստիտուտների և լաբորատորիաների աշխատակիցների հետ մերձեցման ճանապարհով։ Այդպիսի մերձեցումը կատարվում է գիտական գործուղումներին, սեմինարներին, սիմպոզիումներին և կոնֆերանսներին մասնակցելու միջոցով։ Մինչդեռ որոշ դեպքերում գիտական երիտասարդությունը լայնորեն չի ընդգրկվում այդ աշխատանքներում։

Գիտական կադրերի պատրաստման գործի բարելավումը կախված է նաև գիտական կրտսեր աշխատակիցների ճիշտ ընդունելության և նրանց ներկայացվող պահանջների բարձրացման հետ։ Չէ որ պրակտիկ աշխատանքում աճելով, նրանք դառնում են մեր ապագայի ասպիրանտները, գիտությունների թեկնածուները և դոկտորները։ Այդ տեսակետից ուսանելի են ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի բիոքիմիայի ինստիտուտի փորձը։ Այստեղ նոր լաբորանտների ընդունելությունը կատարվում է միայն նախնական համակողմանի զրույցից հետո։ Իսկ լաբորանտությունից գիտական աշխատակցի պաշտոնին անցնելու դեպքում պարտադիր կարգով պահանջվում է քննություն՝ մասնագիտությունից և որևէ օտար լեզվից։

Մեր խորհրդի գործունեության կարևոր բնագավառներից մեկն էլ գիտական կոնֆերանսների կազմակերպումն է։ ՀամԼԿԵՄ 50-ամյակին նվիրված հանրապետական գիտական կոնֆերանսին մասնակցեցին տարբեր մասնագիտության ավելի քան 600 գիտական աշխատողներ և ասպիրանտներ, նրանցից մոտ 100 մարդ հանդես եկան զեկուցումներով ու հաղորդումներով։ Կոնֆերանսի նյութերը տպագրվել են, որը անշուշտ, կարևոր օգնություն է երիտասարդ գիտական աշխատողներին։ Նախատեսված է 1970 թ. հունվարին հրավիրել երիտասարդ գիտական աշխատողների հանրապետական երրորդ կոնֆերանսը՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին։ Այդ կոնֆերանսի նյութերն արդեն հավաքվում են, մշակվում և կտպագրվեն մինչև կոնֆերանսը։ Երիտասարդ գիտական աշխատողների և մասնագետների կոնֆերանս-



ներ անց են կացվելու նաև առանձին ինստիտուտներում ու բուհերում։

ՀԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ, 1967 թվականից գիտության ու տեխնիկայի բնագավառում սահմանվել է Հայաստանի Լենինյան կոմերիտմիության անվան մրցանակ։ Այդ մրցանակը շնորհվում է մինչև 33 տարեկան առավել աչքի ընկնող այն գիտական աշխատողներին, որոնց կատարած աշխատանքը կարևոր տեսական ավանդ է հայրենական գիտության զարգացման գործում կամ ունի լուրջ գործնական նշանակություն ժողովրդական տնտեսության համար։

ՀԼԿԵՄ Կենտկոմի՝ երիտասարդ գիտնականների խորհուրդը, «Գիտելիք» ընկերության հանրապետական վարչության հետ միասին, գիտության նորագույն նվաճումներն աշխատավորության շրջանում պրոպագանդելու և այդ գործում երիտասարդ գիտական աշխատողներին լայնորեն ներգրավելու համար այս տարի հայտարարել են ֆիզիկայի, մաթեմատիկայի, քիմիայի, կենսաբանության և երկրաբանության նորագույն նվաճումների վերաբերյալ հանրամատչելի աշխատությունների մրցանակաբաշխություն։ Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 35 տարեկան անձինք։ Ներկայացված աշխատությունները գնահատելիս, անշուշտ, հաշվի կառնվի նաև գիտության նվաճումների պրոպագանդման ուղղությամբ հեղինակների կողմից կատարված աշխատանքը։ Լավագույն աշխատանքները կտպագրվեն առանձին գրքույկներով։

Լուրջ ուշադրություն պետք է դարձնել երիտասարդ գիտնականների բազմակողմանի զարգացման վրա։ Այդ խնդրի լուծման գործում կարևոր է գիտական և ստեղծագործական կոլեկտիվների կապի ամրապնդումը։ Հաճախակի պետք է կազմակերպել բանավեճեր, դասախոսություններ գիտության և արվեստի այս կամ այն հարցի վերաբերյալ, գրքերի և ներկայացումների քննարկումներ, կոլեկտիվ այցելություններ՝ ցուցահանդեսները և արվեստանոցները։ Հույժ օգտակար են երիտասարդ գիտնականների համար հասարակության զարգացման պրոբլեմներին, ՍՄԿԿ և սովետական պետության պատմությանը նվիրված դասախոսությունների ցիկլերը, կուսակցական, պետական ապարատի ղեկավար աշխատողների, գիտության, գրականության և արվեստի գործիչների հետ հանդիպումները։

Կոմերիտական կազմակերպությունները և երիտասարդ գիտնականների խորհուրդները դեռևս վատ են զբաղվում գիտական աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերով։ Միության մաշտաբով կատարված այն հարցմանը, թե ձեր կազմակերպությունը որքանով է զբաղվում աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցով, երիտասարդ գիտական աշխատողների 42 տոկոսը պատասխանել է բացասական և միայն 13 տոկոսը՝ դրական։ Գիտնականը, առավելապես երիտասարդ գիտնականը, որպես հիմնական գիտական պոտենցիալ տարր, դուրս է մնացել գիտության կազմակերպման հարցով զբաղվող հետազոտողների ուշադրությունից։ Երիտասարդ գիտնականի համար կարևոր նշանակություն ունեն նրա աշխատանքի արտադրողականության ու արդյունավետության, ստեղծագործական ակտիվության բարձրացման, աշխատանքի հիգիենայի պահպանման, ժամանակի բյուջեի ճիշտ օգտագործման հարցերը։

Այդ հարցերի շուրջ խոսակցություն բացվեց ՀԼԿԵՄ Կենտկոմի, գիտությունների ակադեմիայի և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության նախաձեռնությամբ վերջերս Սևանում կազմակերպ-

ված երիտասարդ գիտական աշխատողների և կոմերիտական կազմակերպու-
թյունների քարտուղարների սեմինար-խորհրդակցությունում։ Ի դեպ, այնտեղ
մատնանշվեց, որ գիտության արդյունավետության բարձրացմանը մեծապես
կնպաստի գիտնականների վարձատրման գոյություն ունեցող սիստեմի վե-
րանայումը, եթե վարձատրությունը սահմանվի ոչ թե ըստ գիտական աստի-
ճանի, այլ ըստ կատարած աշխատանքի արդյունավետության և օգտակա-
րության։

Շոշափվեց նաև այն հարցը, որ պաշտպանվող դիսերտացիաների մի
մասը ինքնանպատակ է և գրեթե ոչ մի օգուտ չի բերում ինչպես գիտությանը,
այնպես էլ տվյալ դիսերտանտի հետագա գիտական գործունեության ծավալ-
մանը, որ որոշ գիտական աշխատողների գիտական կարիերան ավարտվում է
դիսերտացիայով։ Դեռ ավելին, որոշ դեպքերում դիսերտացիան չի նպաս-
տում լուրջ, ծանրակշիռ գիտական գործերի ստեղծմանը. դիսերտացիայի հետ
կապված բոլորովին ձևական կողմի ապահովումը ահագին ժամանակ և ջան-
քեր է խլում, որ կարող էր օգտագործվել գիտական փաստերի կուտակման և
նրանց հիմնավորման վրա։

Նույն խորհրդակցությունում խոսվեց նաև ազգային լեզվով մասնագիտա-
կան գրականության և դասագրքերի ստեղծման մասին։ Վերջին տարիների
ընթացքում գիտության նորագույն ուղղությունների գծով ինչպես մեր երկրում,
այնպես էլ արտասահմանում լույս են տեսել բազմաթիվ խիստ անհրաժեշտ
մասնագիտական գրքեր։ Սակայն հայերեն գրեթե ոչինչ չի թարգմանվել։

Երիտասարդ գիտնականների խորհուրդների առջև դրված է նաև մի այլ
կարևոր խնդիր. դա նրանց աշխատանքն է աշակերտների և ուսուցչության
հետ։ Վերջին տարիների ընթացքում մեր հանրապետությունում լայն տարա-
ծում է գտել երիտասարդ գիտնականների և մասնագետների մասնակցությու-
նը դպրոցական օլիմպիադաների, կոնկուրսների և ուսուցչության հետ հանդի-
պումների կազմակերպմանը։ Այն լոզունգը, թե չկա գիտնական առանց աշա-
կերտի, պետք է առարկայական դառնա նաև երիտասարդ գիտնականի հա-
մար։ Երիտասարդ գիտական աշխատողի աշակերտն այսօրվա դպրոցականն
է, ուսանողը, որը վաղը համալրելու է գիտնականների շարքերը և նրա տա-
ղանդի ժամանակին հայտնաբերումն ու զարգացումը մեծ չափով կնպաստի գի-
տության զարգացմանը։

Արդի գիտատեխնիկական հեղափոխության էպոխայում գիտությունը ամ-
բողջությամբ վերածվում է հասարակական անմիջական արտադրաուժի։ Հա-
սարակության զարգացումը և այդ առաջընթացում գիտության աճող նշանա-
կությունը երիտասարդ գիտական աշխատողներից պահանջում են գիտության
և իր սոցիալական դերի ըմբռնման անհրաժեշտությունը։ Երիտասարդ գիտա-
կան աշխատողը չի ստեղծագործում ինչ որ սոցիալական վակուումի մեջ։ Նրա
աշխատանքը պայմանավորվում է հասարակական անհրաժեշտությամբ և նոր-
մերով։ Գիտությունը միայն որոշակի գիտելիքների սիստեմ չէ։ Դա նաև մարդ-
կային գործունեության ձև է, մարդկային աշխատանքի յուրահատուկ ասպա-
րեզ։ Իսկ ամեն մի աշխատանք, ուզած մարդկային գործունեություն ունի
որոշակի սոցիալական նպատակներ, ինչպես նաև միջոցներ՝ դրանց իրակա-
նացման համար։



# ՍՊԱՌՄԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ ԵՎ ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ հնգամյակում
նախատեսվում է բավարարել բնակչության պահանջարկը պարենային ու ար-
դյունաբերական ապրանքների նկատմամբ, ավելացնելով դրանց արտադրու-
թյան և իրացման ծավալները։ Ընդ որում, առավել ուշադրություն է նվիրվում
կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների սպառման մակարդակի
բարձրացմանը։ Խնդիր է դրվում նաև բարելավել սպառման կառուցվածքը,
այն հաշվով, որ ընդլայնվի պարենային և արդյունաբերական ապրանքների
տեսակաշարը, բարձրացվի որակը և բարելավվի արտաքին ձևավորումը։ Պա-
հանջարկի ու սպառման աճի քանակական և որակական փոփոխությունները
պայմանավորված են բնակչության դրամական եկամուտների և, հատկապես,
ցածր վարձատրվող աշխատավորների աշխատավարձի բարձրացմամբ։ Ընթա-
ցիկ հնգամյակի տարիներին ռեալ եկամուտների և ժողովրդական սպառման
մակարդակի աճը վկայում են, որ սպառման զարգացման ընդհանուր տեն-
դենցներն ու օրինաչափությունները կգործեն նաև առաջիկայում։

Նախորդ տարիների ապրանքաշրջանառության և սպառման տեղաշար-
ժերի օրինաչափությունների, ինչպես նաև սպառման ձևավորված կազմու-
թյան և զարգացման հնարավոր տենդենցների ուսումնասիրության հիման
վրա, կարելի է կանխորոշել հանրապետության մանրածախ առևտրի ու սպառ-
ման ընդհանուր մակարդակը և դրանց զարգացման հեռանկարները։

Անհրաժեշտ է նշել, որ վերջին տարիներին բնակչության կենսամակար-
դակի բարձրացման նպատակով իրագործվել են մի շարք սոցիալ-տնտեսա-
կան միջոցառումներ։ Դրանք են՝ բանվոր-ծառայողների աշխատավարձի բարձ-
րացումն ու մինիմալ չափերի ավելացումը, հարկերի իջեցումը, կոլտնտեսա-
յին գյուղացիության եկամուտների բարձրացումը՝ նրանց թոշակավորման
կարգավորումը և այլն։ Այս միջոցառումների շնորհիվ երկրի բնակչության
տարեկան եկամուտներն աճեցին մոտ 6 մլրդ ռուբլով, իսկ Հայկական
ՍՍՀ-ում՝ 50 միլիոն ռուբլով։ Այդ միջոցների շարժման ու դրանց կազմության
տնտեսական վերլուծությունը թույլ է տալիս հիմնավորել հանրա-
պետության բնակչության սպառման (հաշվարկային) կազմությունը 1971—
1975 թթ. համար։

Հայկական ՍՍՀ-ում սիստեմատիկորեն աճում է ժողովրդական սպառ-
ման մակարդակը, բարելավվում է կազմությունը։ Այս ոլորտի տեղաշարժերն
անմիջապես կապված են սպառման ֆոնդի բացարձակ չափերի ավելացման
հետ, իսկ վերջինս պայմանավորված է ազգային եկամտի ծավալով, դրա աճի
տեմպերով և բնաիրային կազմով։ Հետևաբար, ազգային եկամտի աճը

կանխորոշում է սպառման ֆոնդի բացարձակ մեծությունը։ Վերջին 9 տարիների ընթացքում (1958—1967 թթ.) հանրապետության ազգային եկամուտն աճել է 119,5 տոկոսով (տե՛ս «Экономика и культура Армении к 50-летию Великого Октября», Ереван, 1967, стр. 47 и «Народное хозяйство Арм. ССР в 1967 г.», Ереван, 1968, стр. 19), այսինքն՝ ավելացել է ավելի քան երկու անգամ։ Դա հանգեցրեց անձնական սպառման ֆոնդի ավելացմանը։ Միայն 1967 թ. տվյալներով Հայկական ՍՍՀ ազգային եկամուտը բաշխվել էր սպառման և կուտակման ֆոնդերի հետևյալ համամասնությամբ՝ ոչ արտադրական սպառման բաժինը կազմել է 65,4 տոկոս (այդ թվում բնակչության անձնական սպառմանը կազմել է 58,3 տոկոս), իսկ կուտակմանը՝ 34,6 տոկոս («Народное хозяйство Армении в 1967 г.», Ереван, 1968, стр. 19)։

Բանվոր ծառայողների, ինչպես նաև կոլտնտեսային գյուղացիության եկամուտների սիստեմատիկ ավելացումն իր հերթին, պայմանավորում է ժողովրդական սպառման առարկաների անընդհատ աճը։ Այսպես՝ 1960—1967 թթ. աշխատավորության դրամական եկամուտներն աճել են 106 տոկոսով։ Նման աճը օրինաչափորեն հանգեցրեց պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի, ապրանքաշրջանառության (ներառյալ, հասարակական սնունդը) ֆիզիկական ծավալի ավելացմանը (82,1 տոկոսի չափով)[1]։

Այսպիսով, հանրապետության ազգային եկամտի անընդհատ աճը բնակչության գնողունակ պահանջարկի ավելացման օբյեկտիվ հիմքն է։

ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ մի շարք տարիների մանրածախ ապրանքաշրջանառության դինամիկայի վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության համար բնորոշ են մանրածախ ապրանքաշրջանառության աճի ավելի բարձր տեմպեր, քան միջին միութենականն է։ Այսպես, պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալը, ներառյալ հասարակական սնունդը, 1940—1960 թթ. (տոկոսներով 1940 թ. նկատմամբ) ավելացել է միջին հաշվով, ՍՍՀՄ-ում՝ 226, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 270 տոկոսով («Народное хозяйство СССР в 1964 г.», М., 1965, стр. 623)։ Նման աճը, ըստ մեր հաշվարկների, կպահպանվի նաև հետագա տարիներում։

**Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության միջին տարեկան տեմպերը ՍՍՀՄ-ում և ՀՍՍՀ-ում (տոկոսներով)**

| | 1961—1965 թթ. | 1966—1970 թթ. | 1971—1975 թթ. |
|---|---|---|---|
| | | Հաշվարկային կանխորոշում | |
| ՍՍՀՄ[2] | 6,0 | 8,0 | 7,7 |
| Հայկական ՍՍՀ-ում[3] | 8,0 | 9,6 | 8,9 |

Ընդ սմին, պետք է նկատի ունենալ, որ զգալիորեն կավելանա շրջանառության աճի յուրաքանչյուր տոկոսի բովանդակությունը։ Այսպես, եթե 1961—1965 թթ. հանրապետության ապրանքաշրջանառության յուրաքանչյուր տոկոս աճը գումարային արտահայտությամբ կազմում էր 5,2 մլն, ապա 1966—1970 թթ. այն հավասար կլինի 7,6 մլն ռուբլու, իսկ 1971—1975 թթ. 12 մլն-ի։

1. «Народное хозяйство Армянской ССР в 1967 г.», Ереван, 1968, стр. 20 и 167։

2. Առևտրի կոնյունկտուրայի և պահանջարկի ուսումնասիրության ՀԳՀԻ հաշվարկներով։

3. Հեղինակների հաշվարկներով։



Հետևաբար, համեմատաբար ավելի մեծ չափերով կավելանա նաև երկրի ապրանքաշրջանառության աճի յուրաքանչյուր տոկոսի բացարձակ գումարը, չնայած տոկոսային աճի հարաբերական նվազեցմանը։

Հայկական ՍՍՀ ապրանքաշրջանառության աճի համեմատաբար բարձր տեմպերը պայմանավորվում են, մի կողմից՝ բնակչության գնողունակ ֆոնդի աճով և հանրապետության բնակչության աճի տեմպերով[1], մյուս կողմից՝ չբավարարված պահանջարկով, մի շարք ապրանքային շուկաների ոչ-լրիվ հագեցվածությամբ։ Բնակչության գնողունակ պահանջարկի աճն ավելի լրիվ ու ռեալ է արտահայտվում մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության ցուցանիշում։ Այդ մասին պատկերացում է տալիս ստորև բերված աղյուսակը։

**Մեկ շնչին ընկնող պետական և կոոպերատիվ առևտրական մանրածախ ապրանքաշրջանառությունը մի քանի հանրապետություններում 1967 թ.[2]**

| | Բնակչության մեկ շնչի ապրանքաշրջանառությունը փաստացի գներով (ռուբլիներով) | 1967 թ. մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության աճը տոկոսներով 1940 թ. համեմատությամբ (համադրելի գներով) |
|---|---|---|
| ՍՍՀՄ | 525 | 416 |
| ՌՍՖՍՀ | 576 | 399 |
| Ուկրաինական ՍՍՀ | 476 | 456 |
| Վրացական ՍՍՀ | 389 | 328 |
| Ադրբեջանական ՍՍՀ | 330 | 279 |
| Լիտվական ՍՍՀ | 542 | 692 |
| Հայկական ՍՍՀ | 413 | 395 |
| Էստոնական ՍՍՀ | 768 | 478 |

Բերված տվյալները ցույց են տալիս, որ հանրապետությունը մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառությամբ ետ է մնում ինչպես ՍՍՀՄ, այնպես էլ մի շարք միութենական հանրապետություններից։ Սպառման տարբեր կազմության, ազգային առանձնահատկությունների, պատմական ու այլ սոցիալ-տնտեսական պայմանների շնորհիվ, տարբեր հանրապետություններում և տնտեսական շրջաններում մեկ շնչին ընկնող սպառման մակարդակը կարող է միատարր չլինել, բայց խոշոր տարբերություններ էլ չպետք է ունենան։ Աղյուսակում բերված համեմատությունից երևում է, որ 1940—1967 թթ. բնակչության մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության աճը Հայկական ՍՍՀ-ում անբավարար է։ Դեռ ավելին, վերջին տարիներին իջել են տվյալ ցուցանիշի տեմպերը, որի հետևանքով ավելացել է միջին միութենական ցուցանիշից ետ մնալու ճեղքվածքը։ Բավական է նշել, որ մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության միջին տարեկան աճի տեմպերը 1940—1960 թթ. ՍՍՀՄ-ում կազմել են 5,4, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 5 տոկոս, 1960—1965 թթ. համապատասխանաբար՝ 4,5 և 3,25 տոկոս։ Ապրանքաշրջանառությունը պլանավորելիս, անհրաժեշտ է հաշվի առնել հանրապետության բնակչության բնական ու մեխանիկական աճի տեմպերը, ինչպես նաև սպառման «այլ» աղբյուրների ցածր մակարդակը, որպեսզի նվազեցվի առաջացած ճեղքվածքը։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մանրածախ ապրանքա-

1. Բնակչության 1000 հոգու հաշվով բնական աճը 1940 թ. ՍՍՀՄ-ում կազմել է 13,2 մարդ, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 27 մարդ, 1967 թ. համապատասխանաբար 9,8 և 19,5 մարդ։

2. «Народное хозяство СССР в 1967 г.», М., 1968, стр. 717։

շրջանառության ծավալի աճի բարձր տեմպերը, որոնք գերազանցում են մի-
ջին միութենական ցուցանիշը, ամենևին էլ չեն վկայում հանրապետության
ժողովրդական սպառման մակարդակի հավասարաչափ բարձրացման մասին։
Վերջին տարիներին ապրանքային ծախսերի ավելացմանը զուգահեռ, որոնք
կազմում են աշխատավորության եկամուտների զգալի մասը, իջել են անհա-
տին ընկնող գոյամիջոցների մասսայի աճի տեմպերը։ Այդ հանգամանքը բա-
ցասաբար է անդրադառնում հանրապետության բանվորական ուժի վերար-
տադրության բնույթի վրա։

Պետք է նկատել, որ մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառության մակար-
դակի և տեմպերի աճի վրա էական ազդեցություն են թողնում շուկայական
ֆոնդերի գոյացման աղբյուրների պլանավորման վրիպումները (քանի որ
հանրապետության բնակչության գնողունակ պահանջարկի կառուցվածքը, որ-
պես կանոն, որոշվում է ամբողջ երկրի համար մշակված, սպառման ապրանք-
ների արտադրության պլանային կառուցվածքով), ինչպես նաև ապրանքաշըր-
ջանառության կազմության ոչ ճիշտ զուգակցումը բնակչության գնողական
պահանջարկի հետ։ Մինչդեռ յուրաքանչյուր տնտեսական շրջան, հանրապե-
տություն, ունի իր առանձնահատկությունները, ձևավորված ավանդույթներն ու
ազգային սովորությունները, որոնք մասամբ էլ բխում են բնակլիմայական
պայմաններից։ Սպառման ռացիոնալ շերտավորված նորմաների մշակումը,
կարող է մեծապես օժանդակել պլանավորող օրգաններին ավելի ռեալ բաշ-
խելու հատկապես խիստ ֆոնդավորվող պարենային և արդյունաբերական
ապրանքները։ Պլանավորման սխալները մասամբ հետևանք են պահանջարկի
պրոբլեմի թերի ուսումնասիրության, առանձին ապրանքային տեսակների
կոնյունկտուրային ոչ խոր իմացության, ինչպես նաև բնակչության գնողու-
նակ ֆոնդի ոչ լրիվ հաշվառման և այլն։ Չբավարարվող պահանջարկի առկա-
յության դեպքում ավելանում են անձնական խնայողությունները, որով և ան-
խուսափելի է դառնում դրամահոսքը հանրապետության սահմաններից դուրս։

Այժմ բնակչության անձնական խնայողությունները բացարձակ գումարով
գերազանցում են եռամսյակային ապրանքաշրջանառության ծավալը։ Ահա թե
ինչու գնողունակ ֆոնդերի առկայությունը շարժառիթ է մտահոգվելու ո՛չ միայն
ապրանքային ֆոնդերի ավելացման, այլև բնակչության պահանջարկին հա-
մապատասխան ապրանքաշրջանառության կազմության պլանավորման կա-
տարելագործման մասին։ Մասամբ չբավարարվող պահանջարկը փոխարին-
վում է փոխադարձ փոխարինվող և ոչ սակավ նաև այլ ապրանքներով։ Դրա
համար մի շարք դեպքերում բնակչության իրացված եկամուտը իրականում չի
արտացոլում բավարարված պահանջարկի ռեալ հարաբերակցությունը, քանի
որ մանրածախ ապրանքաշրջանառությունը ձևավորվում է չբավարարվող պա-
հանջարկի պայմաններում։ Այստեղից, գնողունակ պահանջարկի հեռանկա-
րային կանխորոշման դեպքում ապրանքաշրջանառության փաստացի կազմու-
թյունը պետք է մանրազնին վերլուծել և քննադատորեն գնահատել այն, չբա-
վարարվող պահանջարկի առումով։

Պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառությունը, ներ-
առյալ հասարակական սնունդը, 1961—1968 թթ. (համադրելի գներով) աճել
է 38, իսկ բնակչության անձնական սպառումը 30 տոկոսով։ Տվյալների հա-
մաձայն նշված տարիներին ապրանքային սպառման ինտենսիվ աճի շնորհիվ
բնակչությունը հնարավորություն է ունեցել բավարարել իր պահանջմունք-
ները՝ ավելի մեծ չափերով սննդամթերքներ ձեռք բերել պետական և կոո-



պերատիվ առևտրից։ Իրոք, պարենային ապրանքների սպառման բաժինը պե-
տական և կոոպերատիվ առևտրի հաշվին 1958 թ. կազմել էր 82,7, իսկ 1964 թ.
88,3 տոկոս («Народное хозяйство СССР в 1965 г.», М., 1966, стр.
631)։ Բերված տվյալների համաձայն, հանրապետությունում պետական առև-
տրի միջոցով սպառման աճը հանգեցրել է սպառման մյուս աղբյուրների
բաժնի իջեցմանը (անձնական օժանդակ տնտեսություն, կոլտնտեսային շուկա
և այլն)։ Թեև այդ իջեցումն ընդհանուր առմամբ օրինաչափ է, այնուհանդերձ
այդպիսի կարճ ժամանակամիջոցում «այլ» աղբյուրների նման կրճատումը և
տեղաշարժը հիմնավորված չէ և այն չի կարելի որակել որպես օբյեկտիվ
տնտեսական երևույթ։ Բոլոր դեպքերում այդ աղբյուրների տեսակարար կշռի
իջեցումը այն սահմանափակումների հետևանքներն են, որոնք նախկինում
գոյություն ունեին անձնական օժանդակ տնտեսության նկատմամբ։ Ի դեպ,
հիշյալ աղբյուրների բաժնի նվազեցման տնտեսական հիմք կարող է լինել
միայն հասարակական արտադրության զարգացումը, սպառման առարկաների
ավելացումը և նրանց իրացումը պետական և կոոպերատիվ առևտրի միջոցով։

Անձնական սպառման ֆոնդի զարգացման հիմնական տենդենցն արտա-
հայտվում է ապրանքային սպառման բաժնի անընդհատ աճով՝ «այլ» աղբյուր-
ների հարաբերական նվազմամբ։ Նշանակում է, որ ապագայում բանվորների,
ծառայողների և կոլտնտեսականների ապրանքային պահանջի մեծ մասն ար-
տացոլվելու է գնողունակ պահանջարկում։ Դա ոչ միայն բանվոր ծառայող-
ների դրամական եկամուտների ավելացման, այլև գյուղում ապրանքադրամա-
կան հարաբերությունների հետագա զարգացման և կոլտնտեսականների ընդ-
հանուր եկամուտների մեջ դրամավճարի բաժնի ավելացման արդյունք է։ Ար-
ժեքի օրենքի գործողության ոլորտի ընդլայնումը, կապված տնտեսության
ապաբնեղայնացման պրոցեսի և սպառման փոփոխության հետ (կոլտնտեսու-
թյուններում երաշխավորվող աշխատավճարի ծավալման և անձնական օժան-
դակ տնտեսությունից ստացվող արդյունքի հարաբերական կրճատման շնոր-
հիվ), կարող է հանգեցնել գնողունակ պահանջարկի կազմության որոշակի
փոփոխությունների՝ սպառման կազմության հարաբերական կարգավորմանը։
Միաժամանակ ակնհայտ է, որ այդ օրինաչափ երևույթն աստիճանաբար կհան-
գեցնի պահանջարկի և սպառման կառուցվածքների մոտեցմանը և ապա՝ մեր-
ձեցմանը։ Դրա համար ձևավորվող պահանջարկի կազմության վերլուծությու-
նը և դրա ապագայի կանխորոշումը պետք է ավելի սերտորեն կապակցվի
սպառման փաստացի կառուցվածքի և օրինաչափորեն իրագործվող տեղաշար-
ժերի վերլուծության հետ։

Անձնական սպառման ֆոնդի կազմության վերլուծությունը ցույց է տա-
լիս, որ չնայած 1960—1967 թթ. պետական և կոոպերատիվ առևտրի միջոցով
իրացվող հիմնական սննդամթերքների ապրանքային սպառման ծավալի
անընդհատ աճին, այնուամենայնիվ, «այլ» աղբյուրների (անձնական օժանդակ
տնտեսություն, կոլտնտեսային շուկա, կոլտնտեսություններից ստացվող բնա-
վճար և այլն) բաժինը մեծ է և կարևոր դեր է խաղում բնակչության սննդա-
մթերային ապրանքների նկատմամբ պահանջմունքները բավարարելու գոր-
ծում։ Հանրապետությունում հատկապես մեծ է սպառման բաժինը այնպիսի
սննդամթերքների, ինչպիսիք են՝ ձուն, կարտոֆիլը, բանջարեղենը, միրգը,
խաղողը։ Դրանց բաժինը, 1967 թ. տվյալներով, նշված պարենային ապրանք-
ների ընդհանուր սպառման մեջ տատանվել է 42,2—84,1 տոկոսի։ Բնակչու-
թյան անձնական սպառման մեջ մեծացել է պետական և կոոպերատիվ առևտրի
միջոցով ձեռք բերվող մսի և կաթի բաժինը, կազմելով սպառման մոտ $^3/_4$-ը։

Ապրանքային սպառման անընդհատ աճի տենդենցն արտահայտված է մսի, կաթի, ձվի և բանջարեղենի իրացման մեջ։ Այսպես, 1960—1967 թթ. բնակչությանը վաճառվող միսը 57,2-ից հասավ 72,5, կաթը՝ 61,2—72,9, ձուն՝ 24,1—38,3 և բանջարեղենը՝ 19,4—54,8 տոկոսի։ Սակայն նման օրինաչափություն և հավասարաչափ սպառում չի նկատվում կարտոֆիլի, մրգի և խաղողի գծով։ Օրինակ, կարտոֆիլի սպառման մեջ պետական և կոոպերատիվ առևտրի տեսակարար կշիռը 1960 թ. կազմել է 13,8, 1964 թ.՝ 27,2 տոկոս։ 1967 թ. բավարարվել է կարտոֆիլի սպառման ընդհանուր ծավալի միայն 15,9 տոկոսը, իսկ մնացած 84,1-ը բնակչությունն ստիպված ձեռք է բերել կոլտնտեսային շուկայից, բարձր արժեքով։

Եղած տվյալների համաձայն հանրապետությունում բնակչության պահանջմունքների բավարարումը պարենային ապրանքներով ի հաշիվ «այլ» աղբյուրների, աստիճանաբար նվազել է։ Այսպես, 1967 թ., 1960 թ. համեմատությամբ, մսի և մսամթերքի սպառման ընդհանուր ֆոնդն ավելացել է 30,9 տոկոսով, որի շնորհիվ մինչև 65,9 տոկոսով բարձրացել է կոոպերատիվ առևտրի սպառումը. մինչդեռ ի հաշիվ «այլ» աղբյուրների այն նվազել է 15,9, կաթինը և կաթնամթերքինը, համապատասխանաբար՝ 33,5, 59,1 և 6,8 տոկոսով։ Ձվի և կարտոֆիլի սպառման ֆոնդն աճել է համապատասխանաբար՝ 32,6 և 23,9 տոկոսով, այդ թվում՝ պետական և կոոպերատիվ առևտրի հաշվին՝ 111,1 և 42,7, «այլ» աղբյուրների՝ 7,9 և 10,8 տոկոսով։ Սպառման բացարձակ աճն «այլ» աղբյուրների հաշվին պայմանավորված է առևտրի համար շուկայական ֆոնդին ուղղվող պետական ռեսուրսների ծայրաստիճան սահմանափակվածությամբ (ոչ միայն քանակով, այլև որակով)։ «Այլ» աղբյուրների բաժնի իջեցման տենդենցը մի անգամ ևս հաստատում է պահանջարկի և սպառման կազմության մոտեցման ու մերձեցման անհրաժեշտությունը։ Բացի այս, արտադրաուժերի զարգացման այժմյան ժամանակաշրջանում միայն հասարակական տնտեսությունն ի վիճակի չէ լիովին բավարարելու աշխատավորության պահանջմունքները պարենային մի շարք ապրանքների նկատմամբ. դրա համար առաջիկա հնգամյակում (1971—1975 թթ.) կպահպանվի անձնական օժանդակ տնտեսության և կոլտնտեսային շուկայի տնտեսական դերը, որպես անձնական սպառման ֆոնդի կարևոր լրացուցիչ աղբյուր, մյուս կողմից՝ տնտեսական ռեֆորմը հնարավորություն կընձեռի հարաբերականորեն իջեցնել դրանց բաժինն ընդհանուր սպառման ոլորտում, որը հասարակական տնտեսության զարգացման ու կատարելագործման խթան կհանդիսանա։

Առաջիկա հնգամյակում զգալիորեն կբարելավվի բնակչության կենսամակարդակը (ինչպես ցույց են տալիս մեր կողմից կանխորոշված սպառման ու գնողունակ պահանջարկի ծավալային ու կազմային տվյալները), վճռական քայլ կարվի սպառման ռացիոնալ նորմաններին հասնելու ճանապարհին։

Ա. Ս. ԹՈՒՄԱՆՅԱՆ
Ս. Հ. ԲԱԲԱՅԱՆ
Տնտեսագիտության թեկնածուներ

# ԱՌԱՎԵԼ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՀՈՂԸ

Հողը սոցիալիստական հասարակության համաժողովրդական ունեցվածքն է, գյուղատնտեսական արտադրության գլխավոր և անփոխարինելի արտադրամիջոցը։ Հետևապես, միանգամայն օրինաչափ է, որ մեր երկրում հողային ռեսուրսների օգտագործմանն ու բարելավմանը կարևոր նշանակություն է տրվում։ Մեր պայմաններում հողօգտագործման հիմքում միշտ պետք է դրվի Կ. Մարքսի այն թեզը, որ հողի, որպես արտադրամիջոցի, կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ ճիշտ օգտագործման պայմաններում այն ունակ է անընդհատ բարձրացնելու իր պտղաբերությունը։ Այս գործում կարևոր է նաև գյուղատնտեսական կուլտուրաների ընտրությունը, ցանքատարածությունների ճիշտ կառուցվածքը։

Հողի ռացիոնալ օգտագործումը հատկապես կարևոր նշանակություն ունի մեր հանրապետության սակավահողության պայմաններում։ Հայտնի է, որ բնակչության մեկ շնչին այստեղ ընկնում է ընդամենը 0,2 հեկտար վարելահող։

Հանրապետության գյուղատնտեսության էկոնոմիկայում առաջատար դերը, անկասկած, պատկանում է Արարատյան դաշտավայրին։ «Լենինյան ուղիով» ամսագրի 1968 թ. № 3-ում մտքերի փոխանակման կարգով այս խնդրին է անդրադարձել ընկ. Ս. Կարագյոզյանը։ Հոդվածագիրը վիճարկում է գոտու գյուղատնտեսության մասնագիտացման հարցը և մի շարք արժեքավոր առաջարկություններ անում։

Սույն հոդվածում խնդիր ենք դրել լուսաբանելու Արարատյան դաշտավայրի տնտեսությունների ցանքատարածությունների կառուցվածքի փոփոխությունների նախնական արդյունքները։ Այստեղ 1960 թվականից աստիճանաբար կրճատվել են բամբակենու ցանքատարածությունները և հիմնականում փոխարինվել բանջարա-բոստանային, կերային կուլտուրաներով։

Անհրաժեշտ է նկատել, որ 1968 թ. առաջին տարին էր, երբ բամբակենու մշակումը լիովին դադարեցվեց և ցանքատարածությունների նոր կառուցվածքը գտնվում է տակավին կազմավորման փուլում։ Ուստի, այժմ կարելի է խոսել միայն այդ պրոցեսի նախնական արդյունքների մասին։ Բացի սրանից, հիշյալ փոփոխությունների հետևանքները վերին աստիճանի բազմազան են ու բարդ և դրանց սպառիչ վերլուծությունը մեկ հոդվածի շրջանակներում անհնար է։

Արարատյան դաշտավայրը զբաղեցնելով հանրապետության գյուղատնտեսության օգտագործվող հողատարածությունների 11 տոկոսը, բնատնտեսական նպաստավոր պայմանների և արտադրության ինտենսիվացման բարձր մակարդակի շնորհիվ, ապահովում է գյուղատնտեսության համախառն արտադրանքի (արժեքային արտահայտությամբ) մոտ 35 տոկոսը։

1959—60 թթ. միջին տվյալներով Արարատյան դաշտավայրի տնտեսու-

թյուններն ունեին 40,6 հազար հեկտար ցանքատարածություն, որից հացահատիկային կուլտուրաները՝ 14,6 (36,1 տոկոս), բամբակենին՝ 13,6 (33,6 տոկոս), բանջարա-բոստանային կուլտուրաները՝ 3,9 (9,6 տոկոս) և կերայինը՝ 8,3 հազար հեկտար (20,5 տոկոս)։ Անցած ժամանակաշրջանում պատկերն արմատապես փոխվել է։ Այսպես, 1968 թ. տվյալներով, բամբակենու ցանքերը լրիվին հանվել են. դրա փոխարեն բանջարա-բոստանային կուլտուրաներինն ավելացել է 7,6, կերայինը՝ 5,3 հազար հեկտարով, իսկ հացահատիկայինը՝ 660 հեկտարով։ Որոշ չափով ավելացել են նաև խաղողի և պտղատու այգիների տարածությունները։

Ջնայած ցանքատարածությունների վերոհիշյալ փոփոխությունների ընդհանուր տենդենցը հատուկ է գոտու բոլոր շրջաններին, սակայն դրանցից յուրաքանչյուրում այն արտահայտվում է տարբեր չափերով։ Այսպես, էջմիածնի շրջանում ընդհանուր ցանքատարածությունների աճին զուգընթաց բամբակենու տարածությունները կրճատվել են 4,1 հազար հեկտարով, բանջարա-բոստանային կուլտուրաներն ավելացել են 3,5 հազար, կերայինը՝ 1.540, իսկ հացահատիկայինը՝ միայն 453 հեկտարով։ Ինչպես երևում է բերված տվյալներից, այստեղ բամբակենին հիմնականում փոխարինվել է բանջարանոցային և բոստանային կուլտուրաներով, որը մեկ միավոր տարածությունից, միջին հաշվով, 2—3 անգամ ավելի արտադրանք է տալիս (արժեքային արտահայտությամբ), քան բամբակենին։

Համանման փոփոխություն է կատարվել Արտաշատի և Աբ:արատի շրջաններում։ 1968 թ., 1959—60 թթ. համեմատությամբ, 3—6 անգամ ավելացել են բանջարանոցային ու բոստանային և 1,9—2,1 անգամ՝ կերային կուլտուրաների ցանքատարածությունները. հացահատիկային կուլտուրաների ցանքատարածություններն Արտաշատում գրեթե չեն փոխվել, իսկ Արարատում՝ զգալիորեն կրճատվել են։

Հոկտեմբերյանի շրջանում բամբակենու ցանքատարածությունները կրճատվել են 4.545 հեկտարով. դրա փոխարեն բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարածություններն ավելացել են 1.944, կերայինը՝ 1.160, իսկ հացահատիկայինը՝ 1.200 հեկտարով (50 տոկոսով)։

Ցանքատարածությունների կառուցվածքում կատարված փոփոխությունները, ինչ խոսք, համապատասխան չափով անդրադարձել են տնտեսությունների էկոնոմիկայի վրա։ Այսպես, էջմիածնի շրջանի բնակլիմայական նպաստավոր պայմանները թույլ են տալիս համեմատաբար լրիվ օգտագործելու վարելահողերը։ Երկարատև վեգետացիոն շրջանի, տաք ամառվա և ոռոգման ցանցի առկայությունը հնարավորություն են ստեղծում ո՛չ միայն հրաժարվելու ցելերից, այլև կատարելու խտացրած ցանքեր և խողանացան։

Վարելահողերի օգտագործումը էջմիածնի շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում

| Տարեթվեր | Ընդամենը վարելահող (հեկտար) | Ընդամենը ցանք. (հեկտար) | Ցանքերը վարելահողերի նկատմամբ (տոկոսներով) |
|---|---|---|---|
| 1963 | 11431 | 13077 | 114 |
| 1966 | 11820 | 13125 | 111 |
| 1968 | 11506 | 11858 | 103 |

Ինչպես երևում է աղյուսակի տվյալներից, կրկնացանի կամ խողանացանի շնորհիվ շրջանում ցանքերը գերազանցում են վարելահողերին (միջին հաշվով 3—14 տոկոսով)։ Սակայն տարեցտարի այն պակասում է։



Տվյալներից միաժամանակ երևում է, որ վերջին 7—8 տարում շրջանի տնտեսությունների ցանքերի կառուցվածքում արմատական փոփոխություններ են կատարվել, որոնք հիմնականում բամբակենու փոխարեն բանջարաբոստանային և կերային կուլտուրաների մշակման հետևանք են, որի տնտեսական արդյունքը մեծ է։ Այսպես. եթե բամբակենու ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից, միջին հաշվով, ստացվում էր 800—850 ռուբլու արտադրանք, ապա բանջարանոցային տարբեր կուլտուրաների հեկտարը տալիս է մոտ 2.000—4.500 ռուբլու։ Այսպիսով, բամբակենին բանջարանոցային կուլտուրաներով փոխարինելու դեպքում մեկ հեկտարից ստացվող արտադրանքի արժեքն ավելանում է մոտ 4 անգամ։ էջմիածնի շրջանում, փաստացի տվյալներով, մյուս կուլտուրաների ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից, միջին հաշվով, ստացվել է՝ հացահատիկի գծով 180, խոտաբույսերի՝ 270, կերի արմատապտղի՝ 480, բոստանային կուլտուրաների՝ 1.347 ռուբլու արտադրանք։

Ցանքերի կառուցվածքում տեղի ունեցած փոփոխությունների տնտեսական արդյունավետությունը գնահատելու համար հաշվարկվել է նաև համախառն արտադրանքի հնարավոր ելքը միևնույն բերքատվության, բայց ցանքատարածությունների տարբեր կառուցվածքի պայմաններում։

էջմիածնի շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում համախառն արտադրանքի հաշվարկը ցանքատարածությունների տարբեր կառուցվածքի պայմաններում
(100 հեկտարի հաշվով)

| Կուլտուրաներ | 1958 թ. տեսակարար կշիռը ցանքատ. մեջ (տոկոս.) | 1958 թ. համախառն արտադրանքը (ցենտ.) | 1958 թ. համախառն արտադր. արժեքը (ռուբ.) | 1968 թ. տեսակարար կշիռը ցանքատ. մեջ (տոկոս.) | 1968 թ. համախառն արտադրանքը (ցենտ.) | 1968 թ. համախառն արտադրանքի արժեքը* (ռուբ.) | 1968 թ., 1958 թ. համեմատությամբ (տոկոսներով) |
|---|---|---|---|---|---|---|---|
| Հացահատիկային | 33,3 | 729 | 5713 | 32,0 | 700 | 5500 | 96,0 |
| Բամբակենի | 36,8 | 810 | 29918 | — | — | — | — |
| Բանջարանոցային | 6,3 | 1408 | 19943 | 28,7 | 6400 | 89500 | 450,0 |
| Բոստանային | 3,0 | 282 | 1920 | 9,3 | 874 | 5940 | 310,0 |
| Կերային | 20,6 | 2368 | 5267 | 30,0 | 3450 | 7680 | 145,5 |
| Ընդամենը | 100,0 | × | 62761 | 100,0 | × | 108620 | 172,0 |

Այսպիսով, 1968 թ. ցանքատարածությունների կառուցվածքը, 1958 թ. համեմատությամբ, ավելի արդյունավետ է։ Այն հնարավորություն է ստեղծում բերքատվության նույն մակարդակի պայմաններում արտադրանքի ծավալն ավելացնելու մոտ 72 տոկոսով։ Դա հիմնականում բացատրվում է բարձրարժեք բանջարանոցային կուլտուրաների տեսակարար կշռի ավելացմամբ։ Սակայն իրականում 1958, 1959, 1960 թթ. միջինի համեմատությամբ, 1965—1966, 1967 թթ. մեկ հեկտարի արտադրանքն աճել է ընդամենը 13,0 տոկոսով։ Ջնայած տեխնիկական պրոգրեսին, պարարտանյութերի ավելացմանը, սելեկցիայի ու ագրոտեխնիկական գիտության նվաճումների կիրառմանը, այնուամենայնիվ, հիմնական կուլտուրաների բերքատվությունը շրջանի տնտեսություններում վերջին տարիներին 7—35 տոկոսով իջել է։

Այս հարցը լրիվ պարզաբանելու նպատակով ուսումնասիրված են նաև

*) Հաշվարկված է 1965 թ. համեմատելի գներով։

նախկին բամբակագործական մի շարք կոլտնտեսությունների (Ներքին և Վերին Խաթունարխներ, Արագած, Գրամփա, Արևշատ, Հայթաղ, Ջրառատ, Սամաղար, Ն. Ջեյվա, Արբաթ և Ապագա) նյութերը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ այս տնտեսություններում ևս ցանքատարածությունների կառուցվածքում բանջարա-բոստանային կուլտուրաների տեսակարար կշռի ավելացումը բերքատվության նույն մակարդակի պայմաններում ավելացնում է արտադրանքի ծավալը մոտ 20 տոկոսի չափով։ Մինչդեռ այս տնտեսություններում համախառն արտադրանքի ծավալը, մեկ հեկտարի հաշվով, 1958 թ. համեմատությամբ, պակասել է 6 տոկոսով։

Այսպիսով, Արարատյան դաշտավայրի պայմաններում բամբակենու վերացումը և դրա փոխարինումը հիմնականում բանջարա-բոստանային կուլտուրաներով, արտադրանքի ծավալի, եկամուտների ավելացման ռեալ հնարավորություններ են ստեղծում։ Սակայն, այս բանը տեղի չի ունեցել հիմնական կուլտուրաների բերքատվությունը պակասելու հետևանքով։ Եվ սա այն դեպքում, երբ հանրապետությունում այդ նույն ժամանակաշրջանում զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես, Հայաստանի կոլտնտեսություններում 1966—1967 թթ., միջին տվյալներով, 1959—60 թթ. համեմատությամբ, գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների բերքատվությունը բարձրացել է՝ հացահատիկինը՝ 29, ծխախոտինը՝ 17, կարտոֆիլինը՝ 18, բանջարեղենինը՝ 46, միամյա և բազմամյա խոտերինը՝ համապատասխանաբար՝ 23, 12 տոկոսով և այլն։

Ո՞րն է Էջմիածնի շրջանի (վերջին տարիներին) գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության իջեցման պատճառը։ Այն կապված չէ՞, արդյոք, բամբակենու մշակության դադարեցման հետ։

Մեր կարծիքով, այս երկու երևույթների մեջ որոշակի կապ կա։ Փորձենք բացահայտել։ Բամբակենու մշակույթն այստեղ տարիների ընթացքում դրված էր ամուր և բարձր հիմքերի վրա։ Բամբակի արտադրությունը խրախուսվում էր նյութական և բարոյական խթանումների մի ամբողջ սիստեմով։ Այլ կուլտուրայի մշակման վրա այնքան աշխատանք ու միջոցներ չէին ծախսվում, որքան բամբակենու։ Դժվար էր շրջանի որևէ տնտեսությունում գտնել մոլախոտերով ծածկված բամբակենու դաշտ։ Հետևապես, բամբակենին զբաղեցնելով ցանքատարածությունների մոտ 35—40 տոկոսը, էական ազդեցություն էր թողնում տվյալ դաշտում մշակվող մյուս կուլտուրաների բերքատվության վրա։ Այսպիսով, բամբակենին շրջանում երկրագործության ընդհանուր կուլտուրայի բարձր մակարդակի պահպանման մի լուրջ գործոն էր։ Բամբակենու մշակության կրճատմանը զուգընթաց շրջանի կոլտնտեսություններում տարեցտարի նշանակալի չափով կրճատվել են աշխատանքային ծախսումները (մեկ հեկտարի ցանքատարածության հաշվով այն 1966—67 թթ. կազմել է ընդամենը 69 մարդ-օր, 1959—1960 թթ. 93-ի դիմաց)։ Գուցե աշխատանքային ծախսումները փոխարինվել են մեքենաների աշխատանքո՞վ։ Ո՛չ։ Սա ցույց տանք շարահերկ կուլտուրաների միջշարային մշակության օրինակով։ 1960 թ. մեկ հեկտար շարահերկ կուլտուրաների հաշվով կատարվել է 2,2 հեկտար միջշարային մշակություն, այդ թվում ձեռքով՝ 1,0, իսկ մեքենաներով՝ 1,2 հեկտար։ 1967 թ. այս ցուցանիշները համապատասխանաբար կազմել են 1,8, 0,4 և 1,4 հեկտար։ Չնայած որոշ չափով (16 տոկոսով) ավելացել են մեքենաներով կատարվող աշխատանքները, սակայն հեկտարի վրա կատարվող ամբողջ աշխատանքի ծավալը զգալիորեն (18 տոկոսով) պակասել է։ Դա տեղի է ունեցել



ձեռքի աշխատանքի կրճատման (մոտ 60 տոկոս) պատճառով, որը, սակայն, չի փոխարինվել մեքենայական աշխատանքով։

Այսպիսով, դադարեցնելով բամբակենու մշակումը, շրջանի տնտեսությունները գործն այնպես չկազմակերպեցին, որ բամբակենուն փոխարինած գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածություններում ներդրվի պահանջվող չափով աշխատանք, որը և ցածր բերքի ստացման հիմնական պատճառներից մեկն է։ Անշուշտ, այստեղ հավանական է նաև այլ գործոնների ազդեցությունը, որոնց բացահայտումը պահանջում է առանձին և բազմակողմանի ուսումնասիրություն՝ ագրոտեխնիկների, սելեկցիոներների և այլ մասնագետների մասնակցությամբ։

Արարատյան դաշտավայրի պայմաններում բամբակենու փոխարինումը բանջարա-բոստանային և մասամբ կերային կուլտուրաներով, տնտեսապես հիմնավորված միջոցառում է։ Այն լուրջ քայլ է նաև Արարատյան դաշտավայրը բանջարաբուծության առավել խոշոր շտեմարան դարձնելու գործում։

Սակայն հարկ է նշել, որ այդ կարևոր միջոցառման կիրառման գործում ցուցաբերվել է ակնհայտ շտապողականություն։ Այն լրիվ չի զուգակցվել այլ կոմպլեքս միջոցառումների մշակման և պլանաչափ կիրառման հետ։ Խոսքը վերաբերում է բանջարեղենի արտադրության և իրացման կազմակերպման բազմաթիվ չլուծված հարցերին։ Բանջարեղենի արտադրությունը գոտում դեռևս կրում է խիստ սեզոնային բնույթ, իսկ վերջին տարիներին դրա ավելացմանը (2,5—3 անգամ) չի զուգակցվել վերամշակող ձեռնարկությունների և պահեստային տնտեսության տարողությունների համապատասխան ավելացմամբ, որը հանգեցրել է բանջարեղենի անհանդուրժելի չափերի հասնող փչացման և կորուստների։ Հետաքրքրական է նշել, որ գոտում սպասարկող բանջարեղենի պահածոների արդյունաբերության ձեռնարկությունների (ինչպես սննդարդյունաբերության մինիստրության, այնպես էլ Հայկոոպի) համախառն թողարկումը 1960—1967 թթ. ավելացել է միայն 27,4 տոկոսով։

Բանջարեղենի արտադրության սեզոնայնության մեղմացումը, վերամշակող և առևտրական ձեռնարկությունների ու պահեստային տնտեսության տարողությունների համապատասխանեցումն արտադրության ծավալներին, կոլտնտեսություններում և սովխոզներում բանջարեղենի արտադրության ըստ ամենայնի խթանումը և երկրագործության ընդհանուր կուլտուրայի բարձրացումն այն անհրաժեշտ (բայց դեռևս ոչ լրիվ) միջոցառումների կոմպլեքսն է, որոնց իրագործումը հնարավորություններ կընձեռեն լրիվ իրացնելու այն տնտեսական պոտենցիալը, որը առաջացել է Արարատյան դաշտավայրի տնտեսություններում՝ ցանքատարածությունների առավել արդյունավետ կառուցվածքի շնորհիվ։

Հ. Վ. ՄԿՐՏՉՅԱՆ
Ս. Բ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ԱՎԵԼԱՑՆԵԼ ՀԱՆՐԱՅԻՆ ՍՊԱՌՄԱՆ ՖՈՆԴԵՐԸ

Կոմունիզմի կառուցման առաջին էտապում բարիքները բաշխվում են
ըստ աշխատանքի։ Քանի դեռ չի ստեղծված նյութական բարիքների առատու-
թյուն և աշխատանքը չի դարձել առաջնահերթ կենսական պահանջմունք, մո-
լորություն կլիներ բաշխման սոցիալիստական սկզբունքից հրաժարվելը։ Զուր
չէ, որ կուսակցությունը հետևողականորեն անց է կացնում նյութական շա-
հագրգռվածությունն ամեն կերպ ուժեղացնելու քաղաքականություն։

Սակայն ըստ աշխատանքի բաշխումը չի կարող ապահովել սոցիալիստա-
կան բաշխման բոլոր ֆունկցիաները։ Նման բաշխումն արտադրողներին խթա-
նում է աշխատանքի նկատմամբ զարգացնելու իրենց ունակությունները, սա-
կայն չի կարող պայմաններ ստեղծել սոցիալ-տնտեսական հավասարության,
հասարակության բոլոր անդամների ունակությունների հավասար զարգաց-
ման համար։ Այդ ֆունկցիան կոչված են կատարելու սպառման հասարակա-
կան ֆոնդերը։ Ըստ աշխատանքի բաշխման հետ մեկտեղ սպառման հասարա-
կական ֆոնդերը՝ որպես զարգացող օբյեկտիվ տնտեսական կատեգորիա, կո-
մունիզմի կառուցման ժամանակաշրջանում հարաճուն դեր են խաղում ար-
տադրության զարգացման մեջ։

Ազգային եկամտի աճի և ռեսուրսների ավելացման հետ մեկտեղ, հասա-
րակությունն ամբողջությամբ վերցրած աստիճանաբար մեծացնում է հասա-
րակական սպառման ֆոնդերի ծավալը և դրանց բաժինը բնակչության կողմից
նյութական ու կուլտուրական բարիքների հասարակական սպառման մեջ։ Սո-
ցիալիստական հասարակության զարգացման այդ օրինաչափությունը բացա-
հայտել էին դեռևս մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները։ Կ. Մարքսը գրում
էր, որ արդյունքի՝ հասարակական կարիքների բավարարման համար նախա-
տեսված մասը «անմիջապես նշանակալիորեն աճում է այն բանի համեմա-
տությամբ, ինչպիսին որ նա կա ժամանակակից հասարակության մեջ և է՛լ
ավելի կաճի նոր հասարակության զարգացմանը զուգընթաց» (Կ. Մարքս,
Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 19, էջ 17)։

Սոցիալիստական հեղափոխության առաջին իսկ տարիներին պետությունն
իր վրա վերցրեց կրթության, սոցիալական ապահովության և այլ բնույթի
այնպիսի հիմնական ծախսեր, որոնք կապված են հասարակական սպառման
ֆոնդերի միջոցով կատարվող բաշխման հետ։ Արտադրության զարգացման
հետ մեկտեղ այդ ծախսերը աստիճանաբար ավելանում էին, հատկապես վեր-
ջին տարիներին։



ՍՍՀՄ-ում հասարակական սպառման ֆոնդերը 1940 թվականին եղած
4,6 մլրդ ռուբլուց աճեցին մինչև 18,4 մլրդ ռուբլի 1966 թվականին։ Բանվոր-
ների, ծառայողների և կոլտնտեսականների մեկ ընտանիքին ընկնող հասա-
րակական սպառման ֆոնդերը ներկայումս տարեկան կազմում են 700 ռուբլի
(տե՛ս «СССР в цифрах в 1966 году», հրատ. «Статистика», 1967 թ.
էջ 168)։

Սոցիալիստական հասարակության սպառման հասարակական ֆոնդերի
բաղադրիչ մասն են հանդիսանում կոլտնտեսությունների հանրային սպառ-
ման ֆոնդերը, որոնք գոյացվում են կոլտնտեսականների այն սոցիալ-կուլ-
տուրական պահանջմունքների բավարարման համար, որպիսիք մեզ մոտ
դեռևս լրիվ չեն բավարարվում համաժողովրդական հասարակական սպառման
ֆոնդերի հաշվին (արձակուրդները և նպաստների որոշ տեսակներ, մանկա-
կան հիմնարկություններ պահելու ծախսերը, կադրերի պատրաստումը, կուլ-
տուր-լուսավորչական հիմնարկություններ պահելու և կուլտուր-մասսայական
աշխատանքների վրա կատարվող ծախսերը և այլն)։ Համաժողովրդական հա-
սարակական սպառման ֆոնդերի տարբերությունը կոլտնտեսային հանրային
սպառման ֆոնդերից այն է, որ առաջինները հիմնվում են համաժողովրդա-
կան սեփականության վրա և անմիջականորեն արտահայտում են յուրաքան-
չյուր աշխատավորի հարաբերությունը հասարակության հետ, իսկ կոլտնտե-
սային հանրային սպառման ֆոնդերը հիմնվում են կոլտնտեսային-կոոպերա-
տիվ սեփականության վրա և արտահայտում են արտելի ու նրա անդամների
փոխհարաբերությունները։ Դրա հետ մեկտեղ, կոլտնտեսությունների հանրա-
յին ֆոնդերն իրենց բաշխման ձևերով շատ ընդհանուր բան ունեն համաժո-
ղովրդական սպառման ֆոնդերի հետ։

Կոլտնտեսություններում հանրային սպառման ֆոնդերը նշանակալի դեր
են խաղում քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-
կենցաղային տարբերությունները վերացնելու, մտավոր և ֆիզիկական աշ-
խատանքի միջև եղած զանազանությունները հաղթահարելու, գյուղում քաղա-
քային մակարդակի կուլտուր-կենցաղային կենսապայմաններ ստեղծելու, սո-
ցիալիստական արտադրահարաբերությունները կատարելագործելու և դրանք
կոմունիստականի վերաճելու գործում։ Լինելով սոցիալիստական բաշխման
ձևերից մեկը, հանրային սպառման ֆոնդերը նույնպես արտացոլում են այդ
առանձնահատկությունը։ Դրանց գոյացումն ու օգտագործումը, ինչպես նաև
կատարելագործումը կոլտնտեսային սեկտորում տեղի է ունենում փոքր-ինչ
այլ ձևերով, քան պետական սեկտորում։

Սովետական իշխանության առաջին տարիներին, երբ երկրի միջոցները
համեմատաբար քիչ էին, հասարակական սպառման ֆոնդերն այնպիսի նկա-
տելի դեր չէին խաղում, ինչպես հիմա։ Բայց արդեն այդ ժամանակ հասարա-
կական ֆոնդերի օգնությամբ ապահովվեց կուլտուրական հեղափոխության
ծավալումը, կազմակերպվեց առողջապահության պետական սիստեմը, մայ-
րության և մանկության պաշտպանությունը, բնակչության հանգիստը։ Հասա-
րակական սպառման ֆոնդերից վերցվող միջոցների զգալի մասը օգտագործ-
վում էր անգրագիտության վերացման համար։

Ներկայումս կոլտնտեսությունները մեծ հնարավորություններ ունեն հան-
րային սպառման ֆոնդերն ամեն կերպ ավելացնելու համար։ Բուսաբուծական
և անասնապահական մթերքների պետական գնման գների բարձրացման, հար-
կերի իջեցման և հասարակական արտադրության արդյունավետության բարձ-

րացումն ապահովող այլ միջոցների կիրառման շնորհիվ կոլտնտեսություն-
ները առաջիկայում կկարողանան ավելի շատ եկամուտներ ստանալ: Հենց դա
էլ նպաստավոր պայմաններ է ստեղծելու կոլտնտեսություններում հասարա-
կական սպառման ֆոնդերի և ոչ արտադրական նշանակություն ունեցող հիմ-
նական ֆոնդերի ավելացման համար:

Այդ բնագավառում արդեն ձեռք են բերված որոշակի հաջողություններ,
որոնք երևում են հետևյալ տվյալներից.

Աղյուսակ № 1

Հանրային սպառման ֆոնդերի աճը կոլտնտեսային միջոցների հաշվին[1]

| Ցուցանիշներ | Չափի միավոր | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. | 1968 թ. տոկոսներով, 1967 թ. նկատմամբ |
|---|---|---|---|---|---|---|
| Ընդամենը Հանրային սպառման ֆոնդեր, | Հազ. ռուբ. | 4458 | 6467 | 6435 | 6508 | 101,1 |
| որից տարեկան բաժին է հասնում՝ կոլտնտեսային բնակչության մեկ շնչին | ռուբ. | 7,33 | 10,70 | 10,53 | 11,51 | 109,3 |
| Մեկ կոլտնտեսային ծխին | ռուբ. | 20,5 | 30,3 | 29,7 | 32,2 | 108,3 |
| Մեկ աշխատունակին | ռուբ. | 37,72 | 55,75 | 55,43 | 60,88 | 109,8 |

Կոլտնտեսային հանրային սպառման ֆոնդերը ներկայումս կազմվում են
երկու աղբյուրներից՝ համախառն եկամտից (կոլտնտեսականների սոցիա-
լական ապահովության համամիութենական ֆոնդին հատկացվող անդամա-
վճարները) և զուտ եկամտից (մանկական ու կուլտուրական հիմնարկու-
թյուններ պահելու, կուլտուր-մասսայական աշխատանքի անցկացման վրա
ծախսվող միջոցները, կադրերի պատրաստման ու օգնության ֆոնդը, պետու-
թյունից ստացվող կոլտնտեսականների թոշակներին ավելացվող լրացուցիչ
վճարները, զառամյալների տներ պահելը և այլն):

Կոլտնտեսությունների հանրային սպառման ֆոնդերը նախատեսված են,
որպես կանոն, միայն տվյալ կոլտնտեսության անդամների պահանջմունքնե-
րը բավարարելու համար: Կոլտնտեսություններում հանրային սպառման ֆոն-
դերից աշխատողներին բնամթերքների ձևով վճարումներ են տրամադրում
ավելի մեծ չափով, քան արդյունաբերության մեջ: Օրինակ, սնունդը, վառելի-
քը մանկական նախադպրոցական հիմնարկություններում և հանրակրթական
դպրոցներում, կոլտնտեսականներին մթերքներով նյութական օգնություն ցույց
տալը և այլն:

Ի տարբերություն ձեռնարկությունների հասարակական ֆոնդերի՝ կոլ-
տնտեսային հանրային սպառման ֆոնդերի օգտագործման ծավալը չի սահ-
մանվում հանրապետական մասշտաբով, այլ որոշվում է տվյալ կոլտնտեսու-
թյան ընդհանուր ժողովի կողմից:

Կոլտնտեսային հանրային սպառման ֆոնդեր ստեղծվում են գյուղատն-
տեսական արտելի կանոնադրության դրույթներին համապատասխան, որոնց
համաձայն բնամթերային և դրամական եկամուտների մի մասը օգտագործ-

[1]) Աղյուսակում և հետագա շարադրանքում բերվում են Հայկական ՍՍՀ կոլտնտեսություն-
ների տարեկան ամփոփիչ հաշվետվությունների հիման վրա հաշվարկված տվյալները:



վում է օգնության ու կենսաթոշակային ապահովության ֆոնդ և կոլտնտեսա-
կանների կուլտուր-կենցաղային կարիքների բավարարման ֆոնդ ստեղծելու
համար: Յուրաքանչյուր կոլտնտեսությունում ֆոնդերի չափը սահմանում է
կոլտնտեսականների ընդհանուր ժողովը՝ ելնելով արտելի տնտեսական վի-
ճակից:

Ինչի՞ց են կազմված կոլտնտեսությունների հանրային սպառման ֆոնդե-
րը: Դրանք կազմված են կուլտուրական կարիքների, արտելի անդամներին և
նրանց ընտանիքներին ցույց տրվող նյութական օգնության, կոլտնտեսական-
ների սոցիալական ապահովության, կադրերի պատրաստման, մանկական
հիմնարկություններ պահելու ֆոնդերին կատարվող դրամական ու բնամթե-
րային մասհանումներից:

Այն մասին, թե ամբողջությամբ վերցրած հանրապետությունում ինչպես
է կազմավորվել կոլտնտեսային հանրային սպառման ֆոնդերի գծով կատար-
վող ծախսերի ստրուկտուրան, բերենք որոշ վիճակագրական տվյալներ:

Հաշվարկումները ցույց են տալիս, որ կոլտնտեսային հանրային սպառ-
ման ֆոնդերի ընդհանուր ծավալը (առանց հաշվի առնելու ոչ արտադրական
հիմնական ֆոնդերի մաշումը) 1965-ից մինչև 1967 թվականը ավելացել է
51,9 տոկոսով: Հատկապես աճել են կուլտուր-կենցաղային կարիքների (77,1
տոկոս), մանկական հիմնարկություններ պահելու (49,3 տոկոս), կուլտուր-
մասսայական աշխատանքի անցկացման (89,9 տոկոս) վրա կատարված ծախ-
սերը:

Սովետական Հայաստանում կոլտնտեսային հանրային սպառման ֆոն-
դերի ստրուկտուրայի մասին տվյալների վերլուծությունից պարզվում է, որ
կուլտուր-կենցաղային կարիքների ծախսերը 1967 թվականին ավելացել են
ավելի քան երեք քառորդով, այդ թվում՝ կուլտուրական հիմնարկությունների
և մասսայական աշխատանքի վրա կատարված ծախսերը՝ 64,5 տոկոսով:

Կուլտուր-կենցաղային կարիքների ֆոնդը 1965 թվականից մինչև 1967
թվականն աճել է 62,9-ից մինչև 80,6 տոկոսով, իսկ օգնության և կենսաթո-
շակային ապահովության ֆոնդը պակասել է 11,4 տոկոսով:

Եթե վերցնենք հանրապետության երեք շրջաններ (Ախուրյան, Արտաշատ
և Սիսիան), որոնք գտնվում են տարբեր հողակլիմայական պայմաններում,
ապա հաշվարկումները ցույց կտան, որ այդ երեք շրջաններում հանրային
սպառման ֆոնդերը միատեսակ չեն (տե՛ս աղյուսակ 2): Արտաշատի շրջանի
կոլտնտեսություններում մեկ տնտեսությանը ընկնող սպառման ֆոնդերը մոտ
5 անգամ, իսկ մեկ աշխատունակին ընկնող սպառման ֆոնդերը 5 անգամ
ավելի բարձր են, քան Սիսիանի շրջանի կոլտնտեսություններում: Դա բա-
ցատրվում է այն բանով, որ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունները ավե-
լի մեծ քանակությամբ համախառն արտադրանք և համախառն եկամուտ
ստանալով, նշանակալի միջոցներ են հատկացնում հանրային սպառման ֆոն-
դերին, որոնք համախառն արտադրանքի համեմատությամբ կազմում են 10,8,
համախառն եկամտի համեմատությամբ՝ 2,5 և զուտ եկամտի համեմատու-
թյամբ՝ 30,4 տոկոս:

Բերված տվյալները, որ վերաբերում են Սիսիանի շրջանին, ինչպես նաև
հանրապետության այլ շրջանների կոլտնտեսություններին, վկայում են, որ
մի շարք կոլտնտեսություններում հանրային սպառման ֆոնդերը փոքր են,
չնայած նրան, որ դրանց միջոցով պետք է կատարվեն այնպիսի կարևոր ծախ-
սեր, ինչպիսիք են կուլտուր-տնտեսական կարիքների վրա կատարվող ծախ-

ները, նախադպրոցական տարիքի երեխաներին մանկապարտեզներում ու մսուրներում պահելու և կադրերի պատրաստման ծախսերը, հիվանդության թերթիկների ու արձակուրդների վճարումը և այլն։

Կոլտնտեսությունների հանրային սպառման ֆոնդերի միջոցների ծախսման կարևոր հոդված են հանդիսանում կոլտնտեսային կադրեր պատրաստելու, գյուղատնտեսության մասնագետների որակավորումը բարձրացնելու ծախսերը։ Կոլտնտեսությունների հաշվետու տվյալները ցույց են տալիս, որ շատ տնտեսություններ պատշաճ ուշադրություն չեն դարձնում մասնագետ կադրերի պատրաստման վրա, աննշան միջոցներ են հատկացնում այդ նպատակների համար։

Աղյուսակ № 2

Հանրային սպառման ֆոնդերը Հայկական ՍՍՀ Ախուրյանի, Արտաշատի և Սիսիանի շրջանների կոլտնտեսություններում, 1967 թվականին

| | Ախուրյանի | Արտաշատի | Սիսիանի |
|---|---|---|---|
| Հանրային սպառման ֆոնդերի տեսակարար կշիռը տոկոսներով, համախառն արտադրանքի համեմատ | 7,7 | 10,8 | 2,2 |
| Համախառն եկամտի համեմատ | 10,6 | 2,5 | 3,5 |
| Զուտ եկամտի համեմատ | 17,6 | 30,4 | 12,8 |
| Հանրային սպառման ֆոնդեր, որից տարեկան բաժին է հասնում՝ | | | |
| մեկ կոլտնտեսային ծխին (ռուբ.) | 147 | 236 | 41,2 |
| մեկ աշխատունակին (ռուբ.) | 66,7 | 126 | 22,8 |

Կոլտնտեսությունների հանրային սպառման ֆոնդերին հատուկ տեղ է հատկացված կոլտնտեսության (գյուղատնտեսական արտելի) նոր օրինակելի կանոնադրության նախագծում։ Այնտեղ մտցված է նոր հատված՝ «Կոլտնտեսականների սոցիալական ապահովությունը»։ Այդ հատվածն ասում է, որ գործող օրենսդրությանը համապատասխան սոցիալական ապահովության կենտրոնացված միութենական ֆոնդի միջոցների հաշվին կոլտնտեսականները ստանում են ծերության, հաշմանդամության, կերակրողին կորցնելու հետևանքով կենսաթոշակներ, իսկ կանայք, բացի այդ՝ հղիության և ծննդաբերության նպաստներ։

Նախագծում նաև նախատեսված է, որ ընդհանուր ժողովի որոշմամբ կոլտնտեսությունն իր միջոցներից կոլտնտեսականներին կարող են ժամանակավոր անաշխատունակության նպաստներ տալ, նրանց համար սանատորիաների և հանգստի տների ուղեգրեր ձեռք բերել, միջոցներ առանձնացնել կոլտնտեսային, միջկոլտնտեսային սանատորիաներ, պիոներական ճամբարներ կառուցելու համար։

Կասկած չկա, որ կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրությունը, 1969 թվականի նոյեմբերին կայանալիք կոլտնտեսականների երրորդ համամիութենական համագումարում ընդունվելուց հետո, մեծ դեր կխաղա կոլտնտեսությունների տնտեսական և կազմակերպչական ամրապնդման գործում։ Կոլտնտեսային գյուղացիության ներկայացուցիչները իրենց համագումարը կանցկացնեն մեծ Լենինի՝ կոոպերատիվ պլանը ստեղծողի ծննդյան 100-ամյակի՝ այդ նշանավոր իրադարձության նախօրյակին։

Ի. Ս. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՍՐՎՈՒՄ ԵՆ ՆԱՎԹԱՅԻՆ ՄԱԳՆԱՏՆԵՐԻ ԲԱԽՈՒՄՆԵՐԸ

Ավելի քան 60 տարի է, ինչ սուր պայքար է ընթանում իմպերիալիստական տերությունների միջև նավթի աղբյուրների և իրացման շուկաների տիրապետման համար։

Հայտնի է, որ բացառությամբ ԱՄՆ-ի իմպերիալիստական մյուս տերությունները չունեն նավթի համապատասխան պաշարներ և այն ներմուծում են։ Ժամանակակից արդյունաբերության, տրանսպորտի մեջ, կենցաղում նավթը լայն կիրառում է գտել։ 1914 թ. համաշխարհային առևտրական նավատորմի միայն 4 տոկոսն էր նավթով աշխատում, իսկ այժմ՝ 80 տոկոսից ավելին։ Խիստ բարձրացել է նավթի տեսակարար կշիռը էներգետիկայի ընդհանուր բալանսում (1900 թ.՝ 3,7, 1947 թ.՝ 24, 1966 թ.՝ 45,9 տոկոս)։ Այստեղից պարզ է, թե ինչու նավթը դարձել է համաշխարհային պրոբլեմ և իմպերիալիստական տերությունների պայքարի գլխավոր օբյեկտ։

Գոյություն ունեն իմպերիալիստական բազմաթիվ նավթային ընկերություններ ու միություններ, սակայն նրանցից երկուսը՝ ԱՄՆ-ի «Ստանդարտ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի» և անգլոհոլանդական «Ռոյալ-դատչ-Շել» նավթային խոշորագույն կոնցեռնները հատուկ տեղ են գրավում։ Այդ հսկա կոնցեռնները, իրենց կապիտալի մեծությամբ, գրավում են առաջին և երկրորդ տեղերը։ Նրանք նավթի համաշխարհային կարտելի կազմակերպիչներն են, նրանց հետ է կապված նավթի պայքարի ամբողջ պատմությունը։

Ռոկֆելլերների գերդաստանին է պատկանում «Ստանդարտ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի» խոշորագույն նավթային կոնցեռնը, որը ԱՄՆ-ում և արտասահմանյան երկրներում ունի ավելի քան 200 դուստր ընկերություններ։ 1968 թ. Ռոկֆելլերների ընտանիքի անձնական կապիտալը հաշվվում էր ավելի քան 12, իսկ հսկողության ոլորտի կապիտալը՝ շուրջ 100 **մլրդ** դոլար։

Ինչպես հայտնի է, Նելսոն Ռոկֆելլերը հանդիսանում է Նյու-Յորքի նահանգապետը, պրեզիդենտ Նիքսոնի դեսպանորդը և իրենց խմբի հատուկ ներկայացուցիչը Լատինական Ամերիկայում։ Դժվար գտնվի մի արդյունաբերական կոնցեռն, որի ղեկավարները այնպես սերտաճած լինեն պետական, հատկապես պաշտպանության մինիստրության, վերնախավի հետ, ինչպես Ռոկֆելլերներն են։ Ջոն Ֆոստեր Դալլեսը, որ երկար ժամանակ ղեկավարում էր ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը, եղել է Ռոկֆելլերների իրավաբանական տան դիրեկտորը։ ԱՄՆ-ի պաշտպանության կոմիտեի 11 անդամներից 4-ը Ռոկֆելլերների դրածոներն են։ Ռոկֆելլերները ժամանակակից կապիտալիստական աշխարհի ֆինանսական օլիգարխիայի խոշորագույն մագնատներից են, որոնց գլխավոր մրցակիցը անգլոհոլանդական «Ռոյալ Դատչ Շել» նավթային կոնցեռնն է։ Վերջինիս ակտիվը 1967 թ. կազմում էր 12,87 **մլրդ** դոլար, իսկ քիմիական արտադրանքի տարեկան վաճառքի գումարը՝ շուրջ 800 **մլն** դոլար։ «Շել»-ի դուստր ընկերությունները հասնում են 500-ի։ Չկա նավթ ունեցող մի կապիտալիստական երկիր, որտեղ այդ կոնցեռնը չունենա իր մասնաճյուղը։ Ընկերությանը պատկանող նավթատար խողովակների ընդհանուր երկարությունը 61,9 հազար կիլոմետր է (տե՛ս Краткий справочник крупнейших монополий мира. М. 1968 г.)։

Իմպերիալիստական նավթային այդ կոնցեռնների միջև գոյություն ունեն սուր հակասություններ, որոնք հաճախ դառնում են մեծ քաղաքականության կռվախնձորը։ Վ. Ի. Լենինը իր **Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա** աշխատության մեջ

անդրադարձել է այդ երկու խոշորագույն նավթային կոնցեռնների պայքարին: Նա գրել է՝ «Սկսվեց մի պայքար, որը տնտեսագիտական գրականության մեջ հենց այդպես էլ անվանում են— «աշխարհի բաժանման պայքար»: Մի կողմից՝ Ռոկֆելլերի «նավթի տրեստը» ցանկանալով զավթել **ամեն ինչ՝** հիմնեց մի «դուստր-ընկերություն» բուն Հոլանդիայում, գնելով Հոլանդական Հնդկաստանի նավթային աղբյուրները և կամենալով այս կերպ հարված հասցնել իր գլխավոր թշնամուն, այն է՝ անգլո-հոլանդական «Շելլ» տրեստին: Մյուս կողմից «Գերմանական բանկն» ու Բեռլինի մյուս բանկերը ձգտում էին Ռումինիան «պաշտպանել» «իրենց համար և միացնել Ռուսաստանի հետ ընդդեմ Ռոկֆելլերի» (Երկեր, հ. 22, էջ 324):

Հետաքրքրական է, որ դեռ դարասկզբին, չնայած անգլիական և գերմանական ֆինանսական խմբավորումների միջև նավթի հարցում շատ խոր հակամարտության, այնուհանդերձ նրանք ընդհանուր դաշինք կազմեցին ընդդեմ «Ստանդարտ օյլ»-ին: Սակայն նրանց ստեղծած «Եվրոպական նավթային միությունը», որին մասնակից դարձան նաև Ռումինիայի և Բաքվի խոշորագույն նավթային ընկերությունները, չկարողացան «Ստանդարտ օյլին» պարտության մատնել: Այդ պայքարը, որը տեղի ունեցավ 1907 թ. անգլո-գերմանական նավթային խմբավորման և «Ստանդարտ օյլ»-ի միջև, ավարտվեց վերջինիս հաղթանակով: Դրան մեծ չափով նպաստեց Բաքվի Նոբել եղբայրների նավթի խոշորագույն ընկերության գաղտնի գործարքը:

1917 թ. Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից հետո զգալի չափով թուլացավ «Ռոյալ-Դատչ-Շելլ» կոնցեռնի հզորությունը, երբ, Բաքվի նավթային արդյունաբերության ազգայնացման շնորհիվ, Անգլիան զրկվեց Ռուսաստանի նավթային աղբյուրներից, որի արտադրության ավելի քան կեսը իրեն էր պատկանում:

«Ստանդարտ օյլ»-ը և «Շելլ»-ը, վարելով դեմպինգի քաղաքականություն, կրեցին մեծ կորուստներ և ստիպված եղան 1928 թ. միմյանց հետ հաշտության համաձայնագիր կնքել ու հիմնադրեցին նավթի համաշխարհային կարտել: Ստեղծված պայմաններում անգլիական նավթային ընկերությունները հարկադրված էին բացել «փակ դռները» ամերիկյան մոնոպոլիաների առջև:

Մինչև առաջին համաշխարհային պատերազմը նավթի ոլորտներում գերիշխում էր անգլիական կապիտալը: 1913 թ. Անգլիայի կապիտալ ներդրումները Լատինական Ամերիկայում կազմում էին 4.983, իսկ ԱՄՆ-ինը՝ 1.242 **մլն** դոլար, 1929 թ. համապատասխանաբար կազմեցին՝ 5.589 և 5.567 **մլն** դոլար: Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո ամերիկյան իմպերիալիզմը ներխուժեց Հարավային Ամերիկայի երկրները: Կապիտալի անհամաչափ արտահանման հետևանքով հակասությունները իմպերիալիստական տերությունների միջև ավելի սրվեցին: 1940 թ. միայն նավթային արդյունաբերության մեջ ներդրված ամերիկյան կապիտալը կազմեց 572 **մլն** դոլար, ընդ որում, նավթի աղբյուրների հիմնական տերը դարձավ Ռոկֆելլերի խումբը: Նավթի աղբյուրների և նրա արտադրանքների իրացման շուկաների զավթողական քաղաքականությունը բնորոշ է բոլոր իմպերիալիստական տերությունների համար, սակայն այն ավելի սուր ու խրոնիկական բնույթ է ընդունում ամերիկյան ու անգլիական նավթային մոնոպոլիաների միջև:

Հանուն նավթի աղբյուրների և իրացման շուկաների տիրապետման, անգլիական, հատկապես ամերիկյան ֆինանսական խմբավորումները լայնորեն գործադրում են ինտերվենցիայի, ռազմա-քաղաքական ինտրիգների, պետական հեղաշրջումների, այսպես կոչված՝ տնտեսական «օգնության» և ռազմական պակտերի կազմակերպման մեթոդները: Անգլիական և ամերիկյան նավթային մոնոպոլիաների միջև ծագած կոնֆլիկտի հետևանք էր 1932—1936 թվականների պատերազմը Պարագվայի և Բոլիվիայի սահմանամերձ նավթահորային շրջանում: Որպես կանոն, իմպերիալիստական տերությունները կապիտալ ներդրումներ են կատարում արդյունահանման ճյուղերում, անտեսելով վերամշակման ճյուղերի զարգացումը: 1940 թ. Լատինական Ամերիկայում տեղադրված ԱՄՆ-ի 2,8 **մլն** դոլար կապիտալից միայն 209 **մլն** դոլարը հատկացվել է վերամշակման արդյունաբերությանը (տե՛ս Р. Арисменди. Вторжение доллара в Латинскую Америку, М. 1948 г., стр. 129):

Այդ երկրների նավթային արդյունաբերության մեջ հիմնական դեր են խաղում օտարերկրյա երեք խոշորագույն մոնոպոլիաները՝ «Ստանդարտ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի», «Ռոյալ-Դատչ-Շելլ», «Գոլֆ օյլ», որոնք նավթի համաշխարհային կարտելի անդամներն են:

60-ական թվականներին այդ երկրներում զգալիորեն ակտիվանում է արևմտագերմանական և ճապոնական մոնոպոլիաների գործունեությունը: Հենվելով պետական մոնոպոլիստական կապիտալիզմի կառավարման սիստեմի վրա, օգտագործելով ԱՄՆ-ի թույլ ազդեցությունը վերամշակման ճյուղերում, վերջիններս թափանցելով այդ երկրների էկոնոմիկայի մեջ, դուրս են մղում ամերիկյան կապիտալը: Փաստերը ցույց են տալիս, որ ճապոնական կապիտալը լատինաամերիկյան մի շարք երկրների նավթային արդյունաբերության մեջ սկսել է ազդեցիկ դիրք գրավել («Правда», 6/II-69 г., № 37):

Կախյալ երկրներից գերշահույթ ստանալով օտարերկրյա կապիտալը այն չի ներդնում բարձրացնելու տեղի արտադրողական ուժերի մակարդակը, ապահովելու աշխատավորության զբաղվածությունը:

Իմպերիալիստները ձգտում են անսահման հսկողության հասնել հումքի աղբյուրների վրա, հետամտում են կապիտալի արտահանման ու նրա անարգելք տեղաբաշխմանն այդ երկրներում, որտեղ կարելի է վճարել ավելի ցածր աշխատավարձ և ստանալ ավելի բարձր գերհավելյալ արժեք (տե՛ս Р. Арисменди. Вторжение доллара в Латинскую Америку, М., 1948 г., стр. 192): Իմպերիալիստական երկրները, ամենից առաջ ԱՄՆ-ը «տնտեսական օգնության», «պաշտպանության ապահովման» և «ընդհանուր շուկայի» ստեղծման շղարշի տակ, փաստորեն, իրենց ազդեցության տակ են գցել Լատինական Ամերիկան: Քաղաքական ու տնտեսական իրադրությունը, որ ներկայումս տիրում է այդ երկրներում, չի կարող իր վրա չբևեռել ազգային բարձր ինքնագիտակցության հասած աշխատավորության ուշադրությունը:

Լատինական Ամերիկայի մի շարք երկրների կառավարող շրջանները հասարակայնության ճնշման ներքո, հանուն ազգային էկոնոմիկայի անկախ զարգացման, սկսեցին վարել արդյունաբերության ազգայնացման, օտարերկրյա կապիտալի սահմանափակման քաղաքականություն՝ բարձր հարկ սահմանելով օտարերկրյա ձեռնարկությունների վրա: 1968 թ. Պերուի հանրապետությունը ազգայնացրեց ամերիկյան «Ինտերնեյշնլ պետրոլեում կոմպանի»-ի ունեցվածքը:

Բնական է, որ նման գործողությունները չէին կարող չանհանգստացնել ԱՄՆ-ի օլիգարխիային՝ «Արդյունաբերողների ազգային ասոցիացիային»: Վերջինս պահանջեց ԱՄՆ-ի կառավարությունից, որպեսզի նա եռանդուն քաղաքականություն վարի Միացյալ Նահանգների դեմ օտար պետությունների թշնամական կամ խտրական միջոցառումների նկատմամբ, պայմանագրերի միջոցով ապահովի հավասար և արդարացի վերաբերմունք ամերիկյան քաղաքացիների նկատմամբ:

Հատկանշական է, որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի տիրապետության պայմաններում, մոնոպոլիաները այն աստիճան են սերտաճել կառավարող ապարատի հետ, որ Միացյալ Նահանգները չեն կարող անտարբեր լինել արտասահմանյան պետությունների գործողությունների հանդեպ, որոնք քիչ թե շատ դիպչում են խոշոր մոնոպոլիաների շահերին:

Գերհզոր մոնոպոլիաների պատմությունը հարուստ է փաստերով, երբ նրանց թելադրանքով կառավարությունները ակտիվ միջամտում են օտարերկրյա պետությունների ներքին գործերին, սպառնում գործադրել տնտեսական սանկցիա և ռազմական միջամտության դիմել:

ԱՄՆ-ի իմպերիալիստական քաղաքականության հետևանքով Լատինական Ամերիկայի երկրների էկոնոմիկան զարգանում է ո՛չ միայն դանդաղ, այլև միակողմանի: Այստեղ ակներև է, որ զարգացման կապիտալիստական ուղին նպաստավոր պայմաններ չի ստեղծում տնտեսապես թույլ երկրների էկոնոմիկայի բազմակողմանի առաջընթացի համար: Միջազգային իմպերիալիզմը հետամնաց, թույլ զարգացած երկրները դիտում է որպես հումքի բազա, էժան բանվորական ուժի աղբյուր: Պուերտո Ռիկոյի բանվորների աշխատավարձը ԱՄՆ-ի բանվորների աշխատավարձի $1/3$ է կազմում, և դա այն դեպքում, երբ ապրուստը 25 տոկոսով թանկ է: Երկրի տերիտորիայի 13 տոկոսը հատկացված է ամերիկյան ռազմական բազաներին: Ոչ պակաս ծանր վիճակ է ապրում Մեքսիկայի աշխատավորությունը: Լատինական Ամերիկայի մի շարք երկրների խոշոր բուրժուազիան սերտ համագործակցում է օտարերկրյա մոնոպոլիաների հետ, պաշտպանում խոշոր հողատերերի սեփականությունը: Նա տնտեսության պետական սեկտորը դնում է մասնավոր մոնոպոլիաների տրամադրության տակ, խրախուսում ազգային կապիտալի սերտաճումը օտարերկրյա, հատկապես ԱՄՆ-ի կապիտալի հետ, իրացնելով վերջինիս, երկրի համար միանգամայն անշահավետ, ստրկացուցիչ փոխառությունը: Հենց դրանով է բացատրվում այդ երկրներում ամերիկյան իմպերիալիզմի դեմ ծավալվող աշխատավոր զանգվածների մասսայական ցույցերը՝ հանուն տնտեսական ու քաղաքական անկախության:

Հասարակայնության հակաիմպերիալիստական շարժումը կանխելու համար ամերիկյան ֆինանսական մագնատները և պետական գործիչները հաճախ դիմում են պետական հեղաշրջումների պրակտիկային: 1954 թ. ԱՄՆ-ի անմիջական միջամտությամբ կառավարական հեղաշրջում կատարվեց Գվատեմալայում: Նախկին կառավարությունը, որը վարում էր ազգային էկոնոմիկայի զարգացման անկախ քաղաքականություն, տապալվեց, և իշխանու-

թյան գլուխ անցան ամերիկյան մոնոպոլիաների դրածոները:

Նման հեղաշրջում 1968 թ. տեղի ունեցավ Բոլիվիայում, երբ ամերիկյան գործակալները, իրենց ձեռքը վերցնելով կառավարման ղեկը, սկսեցին հակադեմոկրատական քաղաքականություն վարել, հալածել լեռնագործներին ու գործարանային բանվորներին: Ստեղծվեց անելանելի վիճակ, որը տեղի տվեց պարտիզանական պատերազմի:

Հատկապես հակաիմպերիալիստական հզոր ցույցեր տեղի ունեցան 1969 թ. հունիսին, երբ Նելսոն Ռոկֆելլերը, պետական մի շարք գործիչների ուղեկցությամբ, պաշտոնական այցով մեկնեց Լատինական Ամերիկա, որպեսզի այդ երկրների կառավարությունների ղեկավարներին անձամբ իրազեկ դարձնի նորընտիր պրեզիդենտ Նիքսոնի քաղաքական կուրսին:

1969 թ. հունիսին կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկովյան խորհրդակցությունում Վենեսուելայի կոմունիստական կուսակցության քարտուղար Ֆարիան հայտնեց, որ աշխատավորության հակաիմպերիալիստական մասսայական ցույցերի պատճառով Ն. Ռոկֆելլերին չհաջողվեց այցելել ո՛չ Լիմու և ոչ էլ Լա-պաս: Նա անգամ չկարողացավ ոտք դնել Կարակաս («Правда», 17/VI, № 168, 1969 г.): Իսկ Ն. Ռոկֆելլերն ամենից շատ ցանկանում էր այցելել Վենեսուելա, որտեղ նրա կապիտալ ներդրումներն ավելի մեծ չափերի են հասնում: Նա նույնիսկ չկարողացավ գնալ Ուրուգվայի մայրաքաղաք՝ Մոնտեվիդո, քանի որ տեղական իշխանությունները անզոր գտնվեցին ապահովելու նրա անձի անվտանգությունը: Կառավարության ղեկավարները, վախենալով աշխատավորությունից, ստիպված խորհրդակցությունը գաղտնի տեղափոխեցին Պունտա Դեր Էստրե քաղաքը:

Հակաամերիկյան ցույցերը ավելի սուր բնույթ ընդունեցին Արգենտինայում, ուր լուրջ բախումներ տեղի ունեցան աշխատավորության և «Կարգ պահպանող ուժերի» միջև. դրա հիմնական պատճառը գների պարբերական բարձրացումն ու օտարերկրյա մոնոպոլիաների շահույթի աճն էր: Աշխատավորության պահանջով երկրի աշխատանքի համընդհանուր կոնֆեդերացիան առաջարկեց հունիսի 27-ին հայտարարել համընդհանուր գործադուլ՝ ընդդեմ Ն. Ռոկֆելլերի այցի:

Նվաճելով Լատինական Ամերիկայի նավթի աղբյուրները և իրացման շուկաները, ԱՄՆ-ի նավթային «արքաները» արշավ են ձեռնարկում Միջին և Մերձավոր Արևելքի վրա, ուր նավթի պաշարները չափազանց մեծ են և հորատման ծախքերը անհամեմատ ավելի պակաս, քան երկրագնդի մյուս վայրերում:

Սակայն ամերիկյան նավթային մոնոպոլիաները Մերձավոր և Միջին Արևելքում հանդիպում են իրենց վաղեմի մրցակիցներին՝ «Ռոյալ-Դատչ-Շելլ»-ին և «Անգլո-Իրանական օյլ կոմպանի»-ին, որոնք ավելի վաղ էին թափանցել այդ շրջանը: Հայտնի է, որ անգլո-իրանական նավթային ընկերությունը հիմնադրվել է 1907 թ. և իր գործունեությունը շարունակել մինչև 1951 թ.: Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին անգլիական կառավարությունը, գնելով այդ ընկերության արտոնյալ ակցիաների 52 տոկոսը, դառնում է նրա կարգադրողը: Այդ կամպանիան 1930 թ. ստեղծելով իր դուստր ընկերությունները՝ Իրաքում, Քուվեյտում, Սաուդական Արաբիայում, Եգիպտոսում և արաբական այլ երկրներում, վերածվում է հզոր կոնցեռնի: Ընդ որում, նա սոսկ չէր զբաղվում նավթի արտադրությամբ, այլ վարկավորելով իրանական մամուլը և կաշառելով պետական ու հասարակական գործիչներին, նրանց միջոցով ակտիվ միջամտում էր Իրանի կառավարության ներքին գործերին, անգամ կարգադրություններ անում: Փաստորեն երկրում ստեղծվել էր երկիշխանություն: Միանգամայն հասկանալի է, թե ինչու 1946 թ. անգլիական կառավարության առաջադրանքով անգլո-իրանական նավթային կոնցեռնի վարչության նախագահ է նշանակվում բրիտանական կայսրության գլխավոր շտաբի նախկին պետ Ալան Բրուկը:

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիաներին չի հաջողվում ներթափանցել Իրանի նավթային շրջանները. պատերազմից հետո ամերիկյան կապիտալը լայն մասշտաբով ներխուժում է ոչ միայն Իրան, այլև արաբական նավթահարուստ երկրները: 1948—1954 թթ. քաղաքական լուրջ իրադարձություններ են տեղի ունենում Իրանում, Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում: Այդ շրջանում ազգային և ազատագրական շարժումները լայն չափերի են հասնում:

1950—1951 թթ. հակաիմպերիալիստական ցույցերն Իրանում ընդունում են համազգային բնույթ, և Մոսադիկի կառավարությունը ստիպված օրենք է հրապարակում նավթային արդյունաբերության ազգայնացման վերաբերյալ, որի հետևանքով լուծարքի է ենթարկվում անգլո-իրանական նավթային ընկերությունը:

Սակայն կառավարական լուրջ ճգնաժամը և Հաագայի միջազգային դատարանի միակողմանի, անարդարացի որոշումը, փաստորեն, տապալում են ազգայնացման ակտը: Միայն 1950—1953 թթ. ընթացքում այնտեղ չորս անգամ փոխվեց կառավարության կազմը: Երբ 1953 թ. ամերիկյան հետախուզական վարչության անմիջական ղեկավարությամբ Իրանում կատարվեց պետական հեղաշրջում և պրեմիեր-մինիստր Մոսադիկին փոխարինեց գեներալ Զահեդին, իմպերիալիստական տերությունները Իրանի հարուստ նավթահորերը շահագործելու հնարավորություն ստացան:

Այսպիսով, 1954 թ. կազմակերպվում է նավթի արդյունահանման միջպետական միություն-կոնսորցիում, որի մասնակիցները դարձան ամերիկյան «Ստանդարտ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի» և վեց այլ նավթային ընկերություններ, որոնք ստացան բաժնետոմսերի 40 տոկոսը, «Բրիտիշ պետրոլեում կոմպանի»-ին՝ 40, «Ռոյալ-Դատչ-Շելլ»-ը՝ 14 և ֆրանսիական «Ֆրանսես դե պետրոլ»-ը՝ 6 տոկոսը (Д. С. Карасик. Международные монополии, стр. 18, 1963 г):

Կոնսորցիումը՝ որպես միջազգային, միջպետական մոնոպոլիայի ձև դժվար է ազգայնացնել, քանի որ շոշափում է մի շարք պետությունների շահերը:

Մերձավոր Արևելքի նավթի խոշորագույն օջախներից է Իրաքը, որը, Վերսալյան պայմանագրի համաձայն, թուրքական տիրապետությունից անցավ Անգլիայի ենթակայությանը: Հայտնի է, որ Մոսուլի նավթով խիստ շահագրգռված էին իմպերիալիստական Ամերիկայի և Ֆրանսիայի մոնոպոլիաները: Պայքարի ու բանակցությունների միջոցով նրանց հաջողվում է Անգլիայի ու Իրաքի կառավարության հետ հիմնել «Իրաք պետրոլեում կոմպանի» կոնսորցիումը: Պատերազմի հետևանքով ֆինանսապես թուլացած և գաղութներից զրկված Անգլիան ի վիճակի չէր դիմադրել տնտեսապես հզոր Ամերիկային: Կորցնելով նախկին դիրքը, Անգլիան ստիպված սկսում է համագործակցել ամերիկյան մոնոպոլիաների հետ: Ամերիկյան նավթային գերիշխանությունը տարածվում է արաբական մյուս երկրների վրա:

Արդեն 1964 թ. Մերձավոր և Միջին Արևելքում ներդրված օտարերկրյա կապիտալի 58 տոկոսը պատկանում էր Միացյալ Նահանգներին: Նավթային մոնոպոլիաների թելադրանքով Միացյալ Նահանգները և Անգլիան միջամտում են Մերձավոր Արևելքի երկրների ներքին գործերին: Նրանք գործադրում են բոլոր միջոցները, որպեսզի իրենց ձեռքում պահեն այդ երկրների նավթի հարուստ աղբյուրները:

Կապիտալի աշխարհում նավթի պրոբլեմն այժմ ավելի է սրվել: Գաղութատիրության լուծը թոթափած ժողովուրդները մերժում են այդ երկրներում բարեփոխումներ կատարելու վերաբերյալ ժամանակակից գաղութարարների խոստումները: Նրանք բազմիցս զգացել են, որ բացի կեղեքումից ու ճնշումից, իմպերիալիզմը ոչ մի լավ բան չի տա: Զուր չէ, որ նրանցից շատերը աներեր ընտրել են զարգացման ոչ-կապիտալիստական ուղին:

**Մ. Հ. ԶԱՔԱՐՅԱՆ**

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# ԲԱՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ՀԱՆՈՒՆ ԿՅԱՆՔԻ ՀԱՎԵՐԺՈՒԹՅԱՆ

Բերկրանքն է համակում մարդու սիրտը, երբ բացահայտվում է նրան հուզող գիտական գաղտնիքը, բերկրանք, որին ցանկանում ես հաղորդակից դարձնել և շրջապատին։

Նման բերկրանքով ես կարդացի Կյանքի ստրատեգիան գիրքը։[1] Ոգեշնչված ժամանակակից կենսաբանության հայտնագործություններով, ամերիկացի սաղմնաբան Կլիֆֆորդ Գրոբստայնը ցանկացել է ընթերցողներին պատմել կյանքի երևույթի հիմնական գծերի կամ հեղինակի օրիգինալ անվամբ՝ կյանքի ստրատեգիայի մասին, նրա հիմնական հատկության՝ ժառանգականության ուսումնասիրության բնագավառի նվաճումների, հայտնագործությունների լույսի տակ։

Մոտ երկու տասնամյակ է, ինչ հեղինակն զբաղվում է չափազանց բարդ, սակայն միևնույն ժամանակ հետաքրքրական հարցերից մեկի՝ կենսաբանական մասնագիտացման (տարբերակների) երևույթի ուսումնասիրությամբ։ Նախ՝ ինչո՞ւ, և այնուհետև ինչպե՞ս է տեղի ունեցել կյանքով օժտված մարմինների էվոլյուցիոն բարդացումը մասնագիտացման ճանապարհով և ինչպիսի՞ օրինաչափություններ են ընկած ժամանակակից օրգանիզմների անհատական (ինդիվիդուալ) զարգացման հիմքում։ Այլ կերպ ասած, հեղինակի նպատակն է բացահայտել այն օրինաչափությունները, որոնք պայմանավորում են մեկ ելաբջջից (զիգոտայից) բարձրակարգ օրգանիզմի, օրինակ՝ մարդու զարգացման օրինաչափությունները։ Կյանքի այդ մեծագույն գաղտնիքի բացահայտմանը հնարավոր չէր լինի հասնել, քանի դեռ անհայտ էր զարգացման ծրագիրը պայմանավորող ժառանգականության հատկության նյութական կրողը և դրա քիմիական բնույթը։ Այդ տեսակետից նուկլեինաթթուների ժառանգակիր դերի հայտնաբերումը, որը տեղի է ունեցել վերջին մի քանի տասնամյակներում, այն խոշոր հայտնագործությունը հանդիսացավ, որից բխող հետևությունների լույսի տակ Կ. Գրոբստայնը այս գրքում հետադարձ հայացքով ամփոփում է անցյալում ձևավորված գաղափարներն ու քննարկում կենսաբանության արդի ու ապագա պրոբլեմները։

Բոլոր դեպքերում գրքի հեղինակը, ելնելով բնության ճանաչման դիալեկտիկա-մատերիալիստական դիրքերից, ցուցաբերում է երևույթների գիտական փաստարկման ու մեկնաբանման լայն մտահորիզոն։

Մեծածավալ չէ Կյանքի ստրատեգիան գիրքը, չնայած այնտեղ շարադրված բաժիններն ընդգրկում են կենսաբանության ամենահիմնական հարցերը։ Ի՞նչ է կյանքը, կարո՞ղ է արդյոք կյանք լինել մեր մոլորակից դուրս, տիեզերական տարածության այլ մարմինների (մոլորակների) վրա։ Կյանքի գոյության ու զարգացման մոլեկուլային սկզբունքները և, վերջապես, մարդն իբրև կենսաբանական երևույթ, իր բանականությամբ հանդերձ և այլն։

Առաջին իսկ քայլից հեղինակն շտապում է ընթերցողին ասել, որ նույնիսկ այսօր, երբ գիտությունը թափանցել է կյանքի էության խորքն ու բացահայտել նրա մոլեկուլային պայմանավորվածությունը, հնարավոր չէ սպառիչ պատասխան տալ այն հարցին, թե ինչ է կյանքը։ Այնուամենայնիվ, Կ. Գրոբստայնը փորձում է ժամանակակից գիտության տվյալների ընձեռած հնարավորությունների սահմանում բնորոշել կյանքն իբրև «մակրոմոլեկուլային հիերարխիկանաբար կազմակերպված համակարգություն», որին բնորոշ են նյութափոխանակությունը, ինքնավերարտադրումը, էներգիայի հոսքի նուրբ կառավարումը և որը հանդիսանում է ավելի քիչ կազմակերպված տիեզերքում ծավալվող կարգավորվածության կենտրոնը։ Կարծես թե դիտավորյալ, հեղինակը ցանկացել է կյանքի իր բարդ բնորոշմամբ զգուշացնել ընթերցողին կյանքի գաղտնիքի բացահայտման բարդության մասին։ Մինչդեռ, ինչպես այդ մասին վկայում են գիտության ժամանակակից տվյալները, կյանքն իր դրսևորման պարզագույն ձևերում հանդես է գալիս իբրև մակրոմոլեկուլային միացությունների՝ սպիտակուցների և նուկլեինաթթուների գոյության եղանակ, դրանց փոխադարձ կապի ու ներգործության արդյունք՝ որոշակիորեն կարգավորված պայմաններում։

Կյանքի նման բնորոշումը հանդիսանում է էնգելսյան բնորոշման ժամանակակից տարբերակը, որը բխում է հետէնգելսյան ժամանակաշրջանում գիտության կուտակած տեղեկությունների ամփոփումներից։

Ելնելով կյանքի էության մատերիալիստական մեկնաբանումից ու տիեզերքի էվոլյուցիայի վերաբերյալ գոյություն ունեցող գիտական տվյալներից, Կ. Գրոբստայնը հնարավոր է համարում կյանքի առկայությունը երկրից դուրս, այլ մոլորակների վրա, որտեղ կյանքի գոյության համար կան նպաստավոր պայմաններ։ Ընդ որում, այս հարցի լուսաբանումից երևում է, որ Կ. Գրոբստայնը նկատի ունի միայն կյանքի մեզ հայտնի ձևը, մինչդեռ գիտությունը չի ժխտում նաև կյանքի այլ քիմիապես տարբեր բնույթի ձևի առկայությունը, որի դրսևորման համար հավանաբար կպահանջվեն կյանքի մեզ հայտնի հանգամանքներից տարբեր պայմաններ։

Ամենից առատ կյանք կա երեք միջավայրերի՝ հողի, օդի և ջրի սահմանագծում։ Այդ բնակավայրը շրջապատում է երկրագունդը համեմատաբար բարակ թաղանթով, որն ընդունված է անվանել բիոսֆերա։ Բիոսֆերայի հաստությունն անհավասար է իր ամբողջ տարածությամբ և պայմանավորված է այդ, նրա մեջ բնակվող օրգանիզմներին անհրաժեշտ էներգիայի աղբյուրների առկայությամբ ու նրա ծախսի բալանսով։ Ընդ որում, էներգիայի աղբյուրը պետք է համարել ինչպես արևը, այնպես էլ արևի լույսի մասնակցությամբ սինթեզված օրգանական միացությունները։

Ելնելով այդ դրույթից, հեղինակը գտնում է, որ կյանքի տարածումը դեպի վար՝ երկրի կեղևի խորքը (հողաշերտի, ծովերի, օվկիանոսների խորքը) սահմանափակվում է լույսի և օրգանական նյութերի անթափանցելիությամբ, իսկ դեպի վեր՝ գրավիտացիոն (երկրի ձգողականության) ուժի մեծացմամբ ու մթնոլորտում կյանքի բարենպաստ պայմանների՝ ջերմության և գազային կազմի բացակայությամբ։ Վերջին դեպքում, մթնոլորտի բարձր շերտերում, կենդանի մարմինները կախված վիճակում մնալու համար բատիպված կլինեն մեծ էներգիա ծախսել։

Բիոսֆերայում կյանքի տարածման համար այս կամ այն չափով բարենպաստ պայմանների առկայությունը պայմանավորել է կյանքով օժտըված նյութի կամ «կենսազանգվածի» քանակական տարբերություն։ Վերջինս կախված է տըվյալ վայրում բնակվող օրգանիզմների աճի ինտենսիվությունից։ Հետաքրքրական է, որ կենսազանգվածի գոյացումը մեկ օրվա ընթացքում ամենից ցածր է տափաստաններում ու ջրերի մեծ խորություններում (0,5 գր. չոր օրգանական նյութ 1 քառ. մետր տարածության վրա), իսկ ամենից բարձր՝ խոնավ անտառներում, խոնավ մարգագետիններում բարենպաստ պայմաններ ունեցող լճակներում ու գետաբերաններում (10—25 գր. 1 քառ. մետրի վրա)։

Սակայն կենսազանգվածի տարատեսակությունը ո՛չ միայն կշռային (քանակական), այլև որակական բնույթ է կրում, շնորհիվ նրա կազմության մեջ մտնող օրգանիզմների տեսակային և գենետիկական առանձնահատկությունների։

Կենսազանգվածի այդ աստիճան հետերոգենությունը (տարատեսակությունը, տարորակությունը) դիտվում է իբրև բիոսֆերայի սահմանների ընդարձակման, նրա սահմաններում ունեցած բիոտիկ ու աբիոտիկ էներգիայի լիարժեք յուրացման և այն իր նմանի (կենսազանգվածի) վերափոխելու պայման։ Այդ նկատառումով կենսազանգվածի հետերոգենությունը հեղինակը համարում է կյանքի ստրատեգիայի հիմնական կողմը։

Դժվար է չընդունել հեղինակի այդ դրույթը։ Իրոք, իրականում կենսազանգվածի հետերոգենությունն ապահովում է ո՛չ միայն բիոսֆերայի կենսապայմանների լիարժեք վերափոխումը կենդանի նյութի, այլև ապահովում բիոսֆերայի ընդլայնումը, դրա նոր շերտերին հարմարված ձևեր մատակարարելու միջոցով։

Գրքում այնուհետև լուսաբանվում են կենսազանգվածի հետերոգենության առաջացման հիմունքները։

Հիշեցնելով, որ գրքի նախորդ երեք գլուխներում խոսվեց կենդանի նյութի կազմակերպվածության երկու՝ էկոսիստեմային (անհատների միագումարության) ու օրգանիզմային մակարդակների մասին, հեղինակը թվում է ևս երկու՝ բջջային ու մոլեկուլային մակարդակների գոյությունը, ստեղծելով այդպիսով կենդանի նյութի կառուցվածքային հիերարխիկ սիստեմը։ Կյանքը դրսևորվում է մոլեկուլային, բջջային օրգանիզմային և էկոսիստեմային (բիոցենոզային) մակարդակների վրա։ Կարևոր է համարվում կյանքի մոլեկուլային մակարդակի հայտնաբերումը, որը հեղաշրջեց կենսաբանությունը՝ դարձնելով այն տրամաբանված գիտություն։ Ճիշտ է, նյութի կառուցվածքի ճանաչման ասպարեզում գիտության տվյալները մեզ տանում են ավելի հեռուն (ատոմ, ատոմային միջուկ, էլեմենտար մասնիկներ), սակայն հեղինակը նշում է, որ այդ մակարդակների վրա տեղի ունեցող փոխներգործությունները և այդ պրոցեսում դրսևորվող կապերը (իոնիզացիա, գրգռվածություն, քիմիական թույլ կապեր և այլն) հատուկ չեն կյանքին բնորոշ երևույթներին, չնայած վերջին հաշվով դրանք են ընկած բնության բոլոր պրոցեսների, ինչպես և կենսագործողությունների հիմքում։

[1] К. Гробстайн. Стратегия жизни. М., изд. «Мир», 1968, 144 стр.

Կենսազանգվածի և ոչ կենսազանգվածի միջև նկատվող էական տարբերությունը, նշում է հեղինակը, առաջին անգամ սկսում է երևան գալ պարզ մոլեկուլներից պոլիմերիզացված մակրոմոլեկուլային միացությունների կոմպլեքսային գոյության մակարդակի վրա։

Կենդանի նյութի կազմության մեջ մտնող պոլիմերային միացությունները և հատկապես սպիտակուցներն ու նուկլեինաթթուները յուրահատուկ են իրենց եռաչափ կառուցվածքից բխող առանձնահատկություններով, ըստ որի և դրանք տարբերվում են անկենդան աշխարհի պոլիմերային միացություններից։ Շնորհիվ իրենց տարածական (երրորդային) կառուցվածքի, կենսապոլիմերները և, առաջին հերթին՝ սպիտակուցները մեծաթիվ ֆունկցիոնալ տարատեսակություններ գոյացնելու ունակություն են ձեռք բերում։

Հետաքրքրական է, որ նշելով սպիտակուցային միացությունների՝ տարածական կառուցվածքով պայմանավորված մակերեսային օղակների կենսաբանական ակտիվ դերը, հեղինակը զարգացնում է այդ միտքը և հիմնավորում դրա ընդունելիությունը կենդանի նյութի գոյության մնացած՝ բարձր (բջջային, օրգանիզմային ու էկոսիստեմային) մակարդակների նկատմամբ ներկառուցվածքային տարրերի, ինչպես և մարդկանց փոխադարձ կապի ու ներգործության երևույթները բացատրելու համար։

Գրքի հեղինակն ընթերցողի ուշադրությունն է հրավիրում մոլեկուլների ինքնավերարտադրման ունակության վրա, որի մինչև օրս հայտնաբերված միակ օրինակը, դա կենդանի մարմինների բաղադրիչ նյութի՝ ԴՆԹ-ի (դեզօքսիռիբոնուկլեինաթթվի) իր նմանը վերարտադրելու ունակությունն է։ Նուկլեինաթթուներին պատկանող այդ միացությունը, ինչպես ցույց են տվել վերջին տարիների ուսումնասիրությունները, ունի երկշղթա մոլեկուլ, որի երկու շղթաները լրացված են մեկը մյուսով։ Դրանց տարամիտումը հանգեցնում է շղթաներից յուրաքանչյուրի վրա մի նոր, նախկինին հար և նման, շղթայի սինթեզման, որով և ապահովվում է դուստր շղթայի ու դրա հետ մեկտեղ ԴՆԹ-ի դուստր մոլեկուլի վերարտադրումը։ Այդ «հրաշք» մոլեկուլին հատուկ իր նմանի ստեղծման ունակությունը, ինչպես այդ բխում է վերոհիշյալ դրույթներից, ապահովում է կենսազանգվածի հիմնական հատկությունը՝ ժառանգականությունը և դրանով իսկ կյանքի անընդհատությունը բոլոր մակարդակներում։

Կարելի է ասել, որ մարդը մարդ է ծնում, որովհետև ունի ԴՆԹ։ Այս է այն կարևոր ճշմարիտ հետևությունը, որը բխում է վերջին տարիներում կյանքի ճանաչման ասպարեզում նվաճած հայտնագործություններից։ Սակայն, ինչպիսի՞ն է իրականում ԴՆԹ-ի այդ աստիճան սերտ կապը կենսազանգվածի վերանորման հետ։ Ամբողջ գաղտնիքն այն է, որ ամեն մի օրգանիզմի ԴՆԹ-ի քիմիական կառուցվածքում կարգագրված է (ծածկագրված է) տվյալ օրգանիզմի զարգացման ու դրա շնորհիվ դրսևորվող բոլոր հատկանիշների ու հատկությունների «ծրագիրը»։ Զարգացումը պետք է դիտել իբրև ԴՆԹ-ի մոլեկուլում կարգագրված ծրագրի իրականացում, որը կարող է տեղի ունենալ միջավայրի որոշակի պայմաններում։ Հետևապես ԴՆԹ-ն այն նյութական տարրն է, որն ապահովում է ժառանգման երևույթը, շնորհիվ իր մեջ ունեցած, մայր սերնդից դուստր սերնդին փոխանցվող, ժառանգական հաղորդագրության։

Երկկենցաղների վրա (գորտի, քամելյոնի) կատարված կլասիկ փորձերով ապացուցված է, որ բարձրակարգ օրգանիզմների ամեն մի բջիջ (գոնե զարգացման վաղ մակարդակներում) իր կորիզում պահպանում է տվյալ օրգանիզմի զարգացման լրիվ ծրագիրը։ Հեղինակը համոզիչ փաստեր է բերում ապացուցելու, որ զարգացումը և այդ պրոցեսում զարգացող օրգանիզմի բարդացումը տեղի են ունենում բջջային կորիզի ու նրան շրջապատող ցիտոպլազմայի ակտիվ փոխներգործության հետևանքով, միջավայրի որոշակի պայմանների առկայությամբ։ Ընդ որում, նա ցայտուն օրինակներով համոզում է ընթերցողին, որ օրգանիզմի բարդացումը, որը տեղի է ունենում նորածին բջիջների մասնագիտացման (տարբերակավորման) շնորհիվ, հետևանք է բջիջների ագրեգացիայի (խմբավորման), որի պայմաններում միայն հնարավորություն է ըստեղծվում դրանց փոխադարձ ձևագոյացուցիչ ազդեցության (ինդուկցիայի) համար։ Եվ վերջապես, ինչպե՞ս է ծնունդ առնում տարատեսակությունը կենսազանգվածում, կամ՝ ի՞նչն է ապահովում կյանքի ստրատեգիայի հիմնական կողմը՝ հետերոգենությունը։ Այստեղ մեկ անգամ ևս հեղինակը պատշաճ հակիրճությամբ խոսում է այն մոլեկուլի՝ ԴՆԹ-ի մասին, որի կառուցվածքում կարգագրված է ժառանգականության հաղորդագրությունը։ Օրգանիզմների սերնդափոխանակությունն անխուսափելիորեն հետևանք է ԴՆԹ-ի ռեպլիկացիայի (կրկնապատկմանը)։ Հետևապես, միլիոնավոր օրգանիզմների ծնունդը վկայում է ԴՆԹ-ի միլիոնավոր կրկնապատկման մասին։ Սակայն ամեն անգամ չէ, որ կրկնապատկման գործողությունն անսխալ է ընթանում և որ դուստր մոլեկուլը ճիշտ նման է ստացվում «մայր» մոլեկուլին։ Միջավայրի զանազան գործոնների ազդեցությամբ որոշ դեպքերում տեղի է ունենում ԴՆԹ-ի «սխալ» ռեպլիկացիա, որի հետևանքով փոխվում է նրա մոլեկուլի կառուցվածքում կարգագրված ժառանգականության ծրագիրը։ Նման «Սխալը» պատճառ է դառնում զարգացման ծրագրի որոշակի շեղման ու, հատկապես, փոփոխված հատկանիշի կամ հատկության դրսևորման։ Երբ փոփոխված հատկանիշը նվազեցնում է զարգացող անհատի ապրողունակության հավանականությունը, այն դուրս է մղվում կենսազանգվածից առանց սերունդ թողնելու։ Բայց պատահում է, որ փոփոխված հատկանիշը անհատին՝ օժտում է, առավելություն է ստեղծում միջավայրի գոյություն ունեցող պայմաններին ավելի լավ հարմարվելու առավելությամբ կամ նույնիսկ նոր ապրելավայր նվաճելու ունակությամբ ու դրանով իսկ ընդարձակելու բիոսֆերայի սահմանները։

Գրքի վերջին երկու գլուխները նվիրված են օրգանիզմների բարդացման էվոլյուցիային. ո՞րն է կենսազանգվածի ավելի բարձր կազմակերպվածություն ունեցող օրգանիզմների առաջացման պատճառը,— հարցնում է հեղինակը։

Նախքան հարցադրումների հնարավոր պատասխանին անցնելը, փաստարկվում է օրգանական աշխարհի էվոլյուցիոն զարգացման եղելության իսկությունը։ Հեղինակը մի շարք օրինակներով համոզում է ընթերցողին, որ նույնիսկ ներկայումս ապրող որոշ տեսակների զարգացման ցիկլում կարելի է նկատել կառուցվածքի բարդացման տենդենցը՝ միաբջիջ օրգանիզմների ագրեգացման ու նրանց մասնագիտացման պրիմիտիվ երևույթի հետ մեկտեղ։

Սակայն, պետք է խոստովանել, օրգանիզմների էվոլյուցիոն զարգացմանը վերաբերող այդ աստիճան հետաքրքրական ու կարևոր հարցադրումներին տրված ոչ բոլոր պատասխաններն են բավարարում ընթերցողին։ Այսպես՝ կենսազանգվածի կազմակերպվածության մակարդակի բարդացումը համարել օրգանիզմների չափերի մեծացման կամ զարգացման տևողության երկարացման միջոց, առանց ապացուցելու նրանց կենսաբանական անհրաժեշտությունը, չի կարող բավարարել ընթերցողին։

Դրա հետ մեկտեղ հետաքրքրական ու համոզիչ են հնչում հեղինակի մյուս բացատրությունները։ Օրգանիզմը կազմող բջիջների ու դրանցից գոյացող օրգանների ֆունկցիոնալ ուրույնացումը լրացուցիչ հնարավորություն է ստեղծել հարմարվելով արձագանքելու արտաքին միջավայրի փոփոխվող պայմաններին, թափանցելու միջավայրի այն հատվածները, որոնք անմատչելի են պարզ, օրգանավորումից զուրկ օրգանիզմների համար։ Հետաքրքրական է նաև այն բացատրությունը, որ օրգանիզմների բարդացումը՝ անցումը նախակորիզային ձևերից կորիզավոր բջիջների ու այնուհետև բջիջներից կազմված բազմաբջիջ օրգանիզմների, պայմաններ է ստեղծել մոլեկուլային մակարդակում կարգագրված զարգացման ծրագիրը հաջորդ մակարդակներին վերահաղորդելով (ռետրանսլյացնելու), որով հնարավորություն է ստեղծվում ճշգրտելու (կորեկտավորելու) հաղորդագրության իմաստը՝ միջավայրի փոփոխվող պայմաններին համապատասխան։ Այդ հանգամանքը, ինչպես արտահայտում է հեղինակը, մեղմացնում է ժառանգական ինֆորմացիայի ու միջավայրի պայմանների փոխազդեցության «ստեղծագործական» հնարավորությունները, դրանով իսկ մեծացնում օրգանիզմի հարմարվողական (ադապտացիոն) ունակությունները։

Կենսազանգվածի բարդացմամբ ստեղծված առավելությունների փայլուն օրինակ պետք է համարել մարդու ծագումը՝ պատմական այդ պրոցեսի բարձրագույն մակարդակը։ Մարդն իրեն հատուկ բանականությամբ հնարավորություն է ստացել տիրելու էներգիայի այնպիսի աղբյուրների, որոնց միջոցով նա ի վիճակի է ակտիվ ազդելու բիոսֆերայի վրա, փոփոխելու այն, օրգանիզմին բնորոշ հոմեոստազի պահպանման նպատակով։ Ընդ որում, ինչպես այժմ պարզվում է, մարդուն ընծայված այդ առավելությունները բավարար են, որպեսզի նա կարողանա պահպանել իր գոյությունը նույնիսկ տիեզերական տարածության կենսազուրկ պայմաններում։

Մարդկությունն ականատես եղավ մարդու վայրէջքին լուսնի մակերեսի վրա։ Կատարվեց այն առաջին քայլը, որը գուցե սկիզբ դրեց տիեզերքը բիոսֆերայի մեջ ընդգրկելու պատմական գործողությանը։

Սակայն այդ մասին չէ միայն, որ գրում է Գրոբստայնը իր գրքի ավարտական գլխում։ Նրան հուզում է ոչ անհիմն այն տագնապը, որ մարդու կենսաբանական հզորությունը կարող է օգտագործվել ո՛չ թե հանուն կյանքի հավերժացման, կենսազանգվածի մեծացման ու բիոսֆերայի ընդլայնման, այլ նրա ոչնչացման։

Ընդգծելով մարդու գերիշխող դիրքը կենդանական աշխարհի նկատմամբ, հեղինակը հարցնում է. իսկ չի՞ կարող այդ հարմարանքը (այսինքն՝ մարդը—Ս. Ս.) գործելով իր կոչմանը հակառակ, հասնել ո՛չ միայն իր, այլև ամբողջ կենսազանգվածի ոչնչացման. մարդու կողմից գիտակցորեն ծրագրվող ստրատեգիան կկանգնեցնի՞, թե՞ կարագացնի կյանքի տիեզերական զարգացման բազմադարյան պատմությունը։

Կենսաբանի աշխատության նման վերջաբանը բխում է աշխարհում ստեղծված սոցիալ-քաղաքական հակասություններից, որոնց վերացման անհրաժեշտությունն է ընդգծում նա իր Կյանքի ստրատեգիան բովանդակալից ու հետաքրքրական գրքում։

Ս. Մ. ՍԱՐԳՍՅԱՆ
Կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ՊԵՏԱԿԱՆ ՈՒՆԵՑՎԱԾՔԻ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՀԱՄԱՐ

Սովետական մամուլի օրգաններն անդուլ և արդյունավետ պայքար են մղում բոլոր բնագավառներում աշխատանքի կատարելագործման, առաջավոր փորձի պրոպագանդման համար։ Նրանք միաժամանակ պատշաճ սրությամբ քննադատում ու մերկացնում են սովետական մարդու էության խորթ ու այլանդակ այն երևույթները, որոնք, դժբախտաբար, դեռևս տեղ ունեն մեր կյանքում։

Այս առումով խրախուսելի է ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի, աշխատավորների դեպուտատների քաղաքային սովետի օրգան «Երեկոյան Երևան» թերթի գործունեությունը։ Տպագրվող հոդվածներն ու ֆելիետոնները, նամակների տեսությունն ու ռեպլիկներն ուշագրավ են իրենց սրությամբ, հարցերի բազմազանությամբ, բարձրացրած խնդիրների քաղաքական-հասարակական նշանակությամբ։ Այստեղ քննադատվում են քաղաքի կյանքի տարբեր ասպարեզներում տեղ գտած մեր հասարակության խորթ երևույթները, հասարակական լայն կարծիք ստեղծելով սոցիալիստական օրինականության դեմ ոտնձգություններ թույլ տվողների նկատմամբ։

Հատկապես հաջողված են շինարարության հարցերին նվիրված հոդվածները։ Այստեղ կան և՛ առաջարկություններ, և՛ հարուստ փաստեր։ Արտացոլելով հսկայական շինհրապարակի վերածված մեր քաղաքի կառույցներում կատարվող հայրենանվեր աշխատանքը, թերթը դրա կողքին մշտապես զետեղում է քննադատական հոդվածներ, ցույց տալիս այս կամ այն կառույցի, շինտրեստի, վարչության աշխատանքները և գործնականում օգնում շտկելու թերությունները, կանխելու չարաշահումներն ու հափշտակությունները, դրանով իսկ անուղղակիորեն նպաստում շինարարական օբյեկտները ժամանակին ու որակով շահագործման հանձնելու գործին։

1968 թվականի ապրիլի 3-ին «Երեկոյան Երևան» թերթը տպագրել է Հարթ տանիքների և հանցագործ վերաբերմունքի մասին հոդվածը։ Այստեղ կոնկրետ փաստերով ցույց է տրվում, որ Երևանում կառուցված մի շարք շենքերի հարթ տանիքները կառուցված են անորակ։ Թերթը դատախազական օրգաններին հուշում է, որ տվյալ դեպքում գործ ունենք հանցագործության հետ։ Այդ հոդվածը քննել է Երևանի 26 կոմիսարների անվան շրջսովետի գործկոմը։ Հարկ է նշել, որ դրանից հետո սկսել են վերանորոգել հարթ տանիքները։

Եթե վերոհիշյալ հոդվածում խոսվում է շինարարների թույլ տված սխալների մասին, ապա 1969 թ. հունվարի 4-ի համարում զետեղված Մյասնիկյանի շրջանի № 18 թաղային կոմիտեի նախագահ Ե. Ադամյանի Պահպանել բնակելի ֆոնդը վերնագիրը կրող հոդվածում առաջ է քաշվում այդ նույն հարցի երկրորդ կողմը։ Ինչպե՞ս են պահպանում բնակելի ֆոնդը իրենք՝ բնակիչները։ Այստեղ խոսվում է այն մասին, թե ինչպես Նորքի զանգվածի շատ շենքերում նոր բնակարան ստացող կամ արդեն բնակվող բազմաթիվ քաղաքացիներ անիմաստ, անտեղի և անթույլատրելի վերակառուցումներ են կատարում։ Հետաքրքրական, բնակելի ֆոնդի պահպանման տեսակետից միանգամայն տեղին հոդված է։ Սակայն հոդվածը կոնկրետ չէ։ Եվ դա վատ է։ Ինչո՞ւ հասարակական կարծիք չստեղծել այն քաղաքացիների շուրջ, ովքեր իրենց անօրինական կառույցներով խախտում են շենքերի պահպանման կարգը, փոխում ճարտարապետական տեսքը, տհաճություն պատճառում հարևաններին, վտանգի տակ դնում հարյուրավոր բնակիչների ապահովությունը։ Ինչո՞ւ հենց ինքը՝ թաղային կոմիտեի նախագահ Ե. Ադամյանը չի բերում թեկուզ մեկ օրինակ օրինախախտումներ թույլ տվող բնակիչներին թաղային կոմիտեի կողմից պատասխանատվության ենթարկելու մասին։

Սրանք հարցեր են, որոնք պետք է այսուհետև լինեն քաղաքային թերթի ուշադրության կենտրոնում։ Փաստի, օրինակի ուժը մեծ է. այն հազար անգամ պերճախոս է քան անտեղի ենթադրություններն ու խրատները։ Հիշենք թեկուզ Միասնական ջանքերով ռեյդային հոդվածը, որը կազմել են Մյասնիկյանի շրջանի ԲԽՍՍ ավագ օպերլիազոր Ս. Շահվերդյանը, պետհամալսարանի ժուռնալիստական բաժնի ուսանող Վ. Խաչատրյանը, արտահաստիքային թղթակից Դ. Քամալյանը և թերթի աշխատակից Վ. Վարդանյանը։ Այստեղ կոնկրետ փաստերով ցույց է տրված, որ նորավարտ շատ շենքերում բնակիչների գալու օրը բնակարաններից պակասում են ծորակներ, լույսի սարքեր, ապակիներ, լվացարաններ, ցնցուղներ և այլն։ Սակայն դրան ոչ ոք չի հետևում, թույլ է պահակային ծառայությունը, երբեմն պահակություն են անում պատահական մարդիկ, հաճախ հենց նրանք էլ զբաղվում են հափշտակությամբ։ Եվ նորից գտնելով կոնկրետ հասցեն, թերթը եզրակացնում է. «Ահա թե ինչու չենք կասկածում, որ ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրությունում հարցը լուրջ մտահոգության առարկա կդառնա»։

Սակայն այդպես կոնկրետ և դիպուկ չէ Սառը գազօջախներ և քար անտարբերություն հոդվածը։ Ըստ երևույթին թերթի համար էլ պարզ չէ, թե վիճող ո՞ր կողմն է արդարացի։ Կարելի՞ էր հոդվածին ավելի կոնկրետ և հստակ բնույթ տալ։ Անշուշտ, այո։ Այսպիսով, ավելի կբարձրանար թերթի հեղինակությունը, այն իրոք կլուծեր երկարամյա վեճը և կօգներ, որպեսզի իսկապես բոցկլտային սառը գազօջախները։

Թերթը միանգամայն տեղին ու բավականին հանգամանորեն է անդրադարձել չափազանց կարևոր մի հարցի, 1968 թվականի փետրվարի 21-ի № 44-ում տպագրելով Բեռնագրում կա, իրականում չկա հոդվածը։

Հետևողական լինելու համար թերթը 1968 թ. մարտի 22-ին (№ 69) նորից է անդրադարձել այդ հուզող խնդրին՝ տպագրելով Ինչո՞ւ է վարկաբեկվում քարը հոդվածը։ Վերլուծելով պակաս քար ստանալու պատճառով շինարարական կոնստրուկցիաների խախտման կոնկրետ փաստերը, թերթը քննադատական խիստ խոսք է ասում արդյունաբերական շինարարության և շինանյութերի արդյունաբերության մինիստրությունների հասցեին և հարցը դնում վերջ տալու ստեղծված վիճակին։

Պետք է նշել, որ առևտրի հարցերը գտնվում են թերթի ուշադրության կենտրոնում։ Այդ բնագավառին նվիրված հոդվածներ հաճախ են տպագրվում թերթում։ Այստեղ կարելի է կարդալ շատ էական հոդվածներ, որոնք մերկացնում են և զանազան կարգի ապօրինությունները։

Թերթի աշխատանքում կան և թերություններ։ Այսպես, անցած երկու տարում այն հազվադեպ է անդրադարձել մայրաքաղաքի մեծ թվով գործարանների և ֆաբրիկաների, մանավանդ թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկությունների աշխատանքին, որոնցում, ինչպես նշվել է ՀԿԿ Երևանի քաղկոմի 5-րդ պլենումում (25 մարտի 1969 թ.) արմատախիլ չեն արված անտնտեսվարության և տարբեր ապօրինությունների դեպքերը։ Միայն 1968 թ. Երևանի արդյունաբերական ձեռնարկություններում անարտադրողական ծախսերը և խոտանից առաջացած կորուստները կազմել են 3 միլիոն 767 հազար ռուբլի, որից Հայէլեկտրագործարանում՝ 660 հազար ռուբլի, կերամիկական իրերի կոմբինատում՝ 518, ժամացույցի գործարանում՝ 77, դաշնամուրի ֆաբրիկայում՝ 94 հազար ռուբլի և այլն։ Մի՞թե հնարավոր չէր, որպեսզի թերթը հանդես գար այս և նման ձեռնարկությունների մասին լուրջ հոդվածներով, վեր հաներ անարտադրողական ծախսերի պատճառները և ցույց տար այն ռեզերվները, որոնք օգտագործելու դեպքում զգալիորեն կկրճատվեին անարտադրողական ծախսերը։

Ժամանակն է ուսումնասիրել այն հարցը, թե ինչպե՞ս են շրջկոմները բարձրացնում սկզբնական կուսակցական կազմակերպությունների, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների, ամեն մի կոմունիստի դերն ու պատասխանատվությունը սոցիալիստական սեփականության պաշտպանության բնագավառում։ Չի կարելի ասել, թե «Երեկոյան Երևանը» այս ուղղությամբ քիչ աշխատանք է կատարել։ Այն հաճախ իր էջերը տրամադրում է վարչական օրգանների աշխատակիցներին, նրանց հետ միասին կազմակերպում ստուգայցեր, նյութեր զետեղում արդեն բացահայտված և կամ դատարան ուղարկված գործերի մասին։ Սակայն այս դեպքում թերթը հաճախ ուշանում է կամ չի գործում պատշաճ հետևողականությամբ։

Թերթի հեղինակության բարձրացման, նրա ազդեցության ոլորտի ընդլայնման համար չափազանց կարևոր նշանակություն ունի այն հարցը, թե ինչպես են հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներն ու, հատկապես, կուսկազմակերպությունները անդրադառնում մամուլի ահազանգումներին։ Անշուշտ, դա ունի գործնական նշանակություն. ունկնդրել մամուլի ահազանգումներին, կատարել ստուգումներ, վեր հանել ամբողջական պատկերը և ժամանակին կանխել թերությունները։

Անհրաժեշտ է նշել, որ հատկապես վերջին տարիներին «Երեկոյան Երևան» թերթի հեղինակությունը, նրա ազդեցության ոլորտն ու մա—

կարգակը զգալիորեն բարձրացել է և քաղաքի հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, կոլեկտիվներն ու սկզբնական կուսկազմակերպությունները, կուսակցության շրջկոմներն ու շրջսովետների գործկոմները, անշուշտ, ուշադրությամբ հետևում են թերթի ելույթներին, կազմակերպում քննադատական հոդվածների քննարկումներ և նրան պատասխանում միջոցառումների մասին: Սա կարևոր քաղաքական աշխատանք է, որը մշտապես հետաքրքրում է մամուլի յուրաքանչյուր աշխատողի: Անցած մի քանի տարում թերթի էջերում երևացել են Մեր նյութերի հետքերով խորագրերը: Ճիշտ է, թերթը դրանք հաճախ հրամցնում է լրագրային այլևայլ ձևերով, սակայն, ի վերջո կարևորն այն է, որ խմբագրության աշխատանքում երևում է գործնականություն, լրագրողները ջանում են բարձրացված հարցերը մինչև վերջ լուծելու, թերությունները շտկելու համար: Այդօրինակ դրական փաստերը շատ են:

Սակայն այսուհանդերձ միշտ չէ, որ թերթի ահազանգումներին, քննադատական առանձին հոդվածներին տրվում է համապատասխան ընթացք: Որոշ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, կուսակցական, կոմերիտական, հասարակական կազմակերպությունները երբեմն չեն կազմակերպում հոդվածների քննարկումներ և ժամանակին չեն պատասխանում խմբագրությանը:

Մամուլը հաստատապես մտել է ժողովրդի կյանքի ու կենցաղի մեջ: Եվ ներկայումս չկա հասարակական կարծիքը կազմավորելու, դրական փորձն արմատավորելու ավելի հզոր միջոց, թերությունների դեմ պայքարելու ավելի սուր զենք, քան մամուլը, հեռուստացույցը և ռադիոն: Թերթը միշտ գնում է առջևից, նա ճանապարհ է հարթում նորի համար, խարազանում է դարն ապրածն ու հետամնացը, նա ժողովրդի հետ կապ հաստատելու ուժեղագույն զենք է, մասսաների կուսակցական ղեկավարման կարևոր գործիք:

Քաղաքային մամուլի հետագա բարելավման կարևորագույն պայմանն է նրա կուսակցական ղեկավարման ուժեղացումը, որն անշուշտ, չպետք է սահմանափակվի միայն խմբագրության պլանների հաստատմամբ, բյուրոներում ու պլենումներում զեկուցումների ունկնդրմամբ: Այժմ, երբ կուսակցությունը վճռական քայլերի է դիմել է՛լ ավելի զարգացնելու աշխատողների նախաձեռնությունը, բարձրացնելու աշխատավորների ինքնուրույնությունը, նրանց ակտիվությունը, քաղաքական զգոնությունը, է՛լ ավելի է աճում մամուլի դերը հասարակական կարծիքը կազմակերպելու, մասսաներին կոմունիզմի համար մղվող պայքարում մոբիլիզացնելու գործում:

Ս. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции. — Ереван-33
Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03299 Պատվեր 73 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ 10.800: Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 4/XI 1969 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մարքսիզմ և ռևիզիոնիզմ. Եր., Հայաստան» հրատ., 1969, 31 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը. Եր., «Հայաստան» հրատ., 1969, 39 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Դասակարգային պայքարի լիբերալ և մարքսիստական ըմբռնման մասին: Դատողություն. Եր., «Հայաստան» հրատ., 1969, 13 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին. Եր., «Հայաստան» հրատ., 1969, 11 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մեծ նախաձեռնություն. («Բանվորների հերոսության մասին թիկունքում», «Կոմունիստական շաբաթօրյակների» առթիվ). Եր., «Հայաստան» հրատ., 1969, 50 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պետության մասին: Դասախոսություն Սվերդլովի համալսարանում 1919 թ. հուլիսի 11-ին. Եր., «Հայաստան» հրատ., 1969, 43 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Յունիուսի բրոշյուրի մասին. Եր., «Հայաստան» հրատ., 1969, 39 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կարգապահության մասին. Եր., «Հայաստան» հրատ., 1969, 288 էջ:

ՏԻԽՈՆ Ա. Տ.— Վ. Ի. Լենինը աշխատանքի և պաշտպանության խորհրդի ղեկավար 1920 թվականին: Կիևի համալսարանի հրատ., 1969, 243 էջ:

ԲՐԵԺՆԵՎ Լ. Ի.— Հանուն կոմունիստների համախմբվածության ամրապնդման, հանուն հակաիմպերիալիստական պայքարի նոր վերելքի (Ելույթ կոմունիստական և բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում 1969 թվականի հունիսի 7-ին): «Հայաստան» հրատ., 1969, 73 էջ:

ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Հ. Մ.— Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների պայքարը ՍՄԿԿ միասնության համար: 1920—1936, Եր., «Հայաստան» հրատ., 1969, 555 էջ:

ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ Ս. Խ.— Նիկողայոս Մառը և հայկական ճարտարապետությունը: Եր., «Հայաստան» հրատ., 1969, 181 էջ:

ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎՍԿԻ Բ. Ն.— Օտար երկրներում ապրածից: Նախկին վտարանդու հուշերն ու մտորումները: Մ., «Мысль» հրատ., 1969, 446 էջ:

Ուկրաինական-հայկական կապերը XVII դարում: Փաստաթղթերի ժողովածու: Կիև, «Наукова думка» հրատ., 1969, 165 էջ:

ՄԵՆՔ և երկրագունդը: Թվեր և փաստեր: Մ., Քաղհրատ, 1969, 214 էջ:

ԱՎԴԱԼԲԵԳՅԱՆ Թ. Հ.— Հայագիտական հետազոտություններ: Եր., ԳԱ հրատ., 1969, 490 էջ:

ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Թ.— Երկերի ժողովածու չորս հատորով. հատ. երրորդ: Եր., «Հայաստան» հրատ., 1969, 439 էջ:

ՉԱՐՅԱՆ ԱՍ. Ե.— Իմ Թումանյանը: Եր., «Հայաստան» հրատ., 1969, 121 էջ:

ԴԵՄԻՐՃՅԱՆ Դ. Կ.— Թումանյանի հետ: Եր., «Հայաստան» հրատ., 1969, 78 էջ:

ՍՏԵՓԱՆՅԱՆ Գ. Խ.— Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության: Հատ. երկրորդ: Եր., ԳԱ հրատ., 446 էջ:

ՍԱՀԱԿՅԱՆ Ա. Ս.— Լիրիկա: Եր., «Հայաստան» հրատ., 1969, 384 էջ:

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ԱՆՁՐԵՎԱՉԱՓ

Գյուղատնտեսության համար խիստ կարևոր է գարնանային տնկումների և ամառային անձրևների հողին պարգևած խոնավության ճշգրիտ չափումը։ Մինչև այժմ եղած անձրևաչափերն այդ մասին տալիս էին միայն մոտավոր տեղեկություններ։

Մինսկի ջրային պրոբլեմների գիտահետազոտական ինստիտուտն ստեղծել է բոլորովին նոր, պառկող անձրևաչափ, որն զգուշությամբ տեղավորում են բույսերի միջշարային տարածություններում կամ ծառի սաղարթների տակ։ Անձրևաչափը տվել է հիանալի արդյունք. պարզվել է, որ աշնանացան աշորան է միայն ողջ խոնավությունը տալիս իր արմատներին, գարին պահպանում է տեղումների միայն 20, բազմամյա խոտաբույսերը՝ 50 տոկոսը։

## ԻՆՔՆԱԳՆԱՑ ՇԱՍՍԻ

Գյուղատնտեսական բազում ու բազմատեսակ մեքենաներից իր ուրույն տեղն ունի «Տագանռոժեց» շասսին, որի հիմնական արժանիքը ունիվերսալությունն է։ Եթե հացահատիկի կոմբայնն աշխատում է տարվա 2 ամսում, շասսին ծառայում է կլոր տարին, կարող է վերածվել ինքնագնաց կոմբայնի, կարտոֆիլահավաք և սիլոսահավաք կոմբայնի, ավտոմեքենայի և այլն։

Ինքնագնաց շասսին 75 ձիաուժանոց է, մեկ ժամում զարգացնում է 2—36 կմ արագություն։ Վարորդի խցիկում տեղակայված են օդափոխիչ և ջեռուցման սիստեմ։

## ԴԴՏ-Ի ԹՈՒՆԱՎՈՐ ՆԵՐԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Դոկտոր Ֆումիո Մացումուրան հինգ տարի շարունակ ուսումնասիրել է միջատասպան ԴԴՏ-ի ներգործությունը կենդանի օրգանիզմի վրա։ Նա զննել է ԴԴՏ-ի տեղաշարժը առնետների ներվային սիստեմում և եզրակացրել, որ պրեպարատի կուտակման վերջնակետը սինապսներն են։ Նրա կարծիքով ԴԴՏ-ն քայքայում է նյարդային իմպուլսների այս հաղորդակայանները։ Նյարդային օջիջներում խախտվում է քիմիական և իոնային հավասարակշռությունը, որի հետևանքով նյարդային բջիջները մնում են զրկված և կորցնում իմպուլսներ հաղորդելու ունակությունը։ Դոկտոր Մացումուրան գտնում է, որ ԴԴՏ-ի թունավոր ներգործության մեխանիզմի բացահայտումը լույս կսփռի նաև այլ երևույթների (օրինակ՝ բազմացման ունակությունից զրկվելու) վրա, որոնք հետևանք են ԴԴՏ-ի թունավոր ազդեցության։

Կոլորադոյի (ԱՄՆ) համալսարանի պրոֆեսոր Մետկալֆը ուսումնասիրել է ԴԴՏ թողարկող գործարանի 150 աշխատողների էլեկտրո-էնցեֆալոգրաման։ Պարզվել է, որ 10—15 տարի ԴԴՏ-ի հետ գործ ունեցողների հիշողությունը, ուշադրությունը բավականին խախտվել են, օրգանիզմը թուլացել է։ Այդ նշանները վերացել են այլ աշխատանքի անցնելուց հետո։ Ինչպես ցույց են տվել կենդանիների հետազոտությունները, ԴԴՏ-ն կուտակվում է ճարպային հյուսվածքներում, **այդտեղից անցնում արյան, ապա ուղեղի մեջ, ուր** հարուցում է զանազան խանգարումներ, որոնց հետևանքը կարող է լինել և մահը։

## ՔԱՄԵԼԻՈՆ ԱՊԱԿԻՆ

ԳՖՀ-ի «Շոտտ» օպտիկական ֆիրման մշակել է ապակու ստացման նոր եղանակ. ապակին փոփոխում է լույսի թափանցման իր ունակությունը՝ կապված ուլտրամանուշակագույն ճառագայթների ինտենսիվության հետ։ Արևի պայծառ լույսի տակ ապակին վայրկենապես մթագնում է, իսկ մթության մեջ, նույն արագությամբ պայծառանում։ Քամելիոն ապակին մարդուն ազատում է սև ակնոցներ կրելուց։

## ԲԻՖՇՏԵՔՍ ԲՐԴԻՑ

Մաքուր բուրդը պարունակում է գրեթե 100 տոկոս սպիտակուց։ Բացառված չէ բրդից սնունդ ստանալը։ Վերջերս գտնված է բուրդը թեյավոր սպիտակուցի վերափոխելու քիմիական եղանակը։

Առայժմ նոր «բրդյա ճաշատեսակով» կերակրում են միայն լաբորատոր մրկնիրին (Նոր Զելանդիա)։